# ԹՈՒԿԻԴԻԴԵԱՅ

ՈՐԴՒՈՅ ՈԼՈՐԵԱՅ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԵԼՈՊՈՆԵՍԱԿԱՆ ՄԱՐՏԻՆ

ՅԵՂԵԱԼ Ի ՀԱՅ

## Հ. ԱԲՐԱՀԱՄՈՒ ՃԱՐԵԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1887

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Է ԳՐՈՑ

Ա-Զ. Գալստեամբ Գիլիպպեայ սրտապնդին Սիրակուսացիք ժուժկալել պաշարմանն: Պատգամաւորութիւն նորա առ Աթենացիս թողուլ զՍիկիլիա և մեկնել. սկիզբն պատերազմին, յառաջնումն պարտեալ նորա և յերկրորդումն յաղթէ: Է-ԺԷ. Ընդունել Նիկիայ յԱթենացւոց նոր գունդս զօրաց և զօրավարս ընդդէմ պատրաստութեանց Գիլիպպեայ և օգնական նաւաց և զօրուն 'ի Պելոպոնեսեայ: ԺԸ-ԺԹ. Ըստ խորհրդոյ Ալկիբիադեայ արշաւանք Լակեդեմոնացւոց յԱտտիկէ և գրաւել նոցա զամրոցն Դեկելիայ: Ի-ԻԵ. Պատերազմ Սիրակուսացւոց ընդ ծով և ընդ ցամաք, յորս 'ի ծովամարտի Աթենացիք՝ 'ի հետեւակախումբ մարտին Սիրակուսացիք յաղթեն: ԻԶ-ԼԵ. Յառաջխաղացութիւն նորոյ օգնական զօրուն Աթենացւոց և զճանապարհայն այլ և այլ դէպք. և Թրակացւոց վարձկան զօրուն 'ի պատճառս անառճիկ արձակման ցասումն, որով աղէտք և կոտորած Միկալեսոս քաղաքի: ԼԶ-ԽԱ. Մարտ պատերազմի Սիրակուսացւոց, և սպառսպուռ պարտութիւն Աթենացւոց: ԽԲ-Ծ. Զախողել Դեմոսթենեայ յառումն Եպիպօլեայ, խորհուրդ նոցա մեկնելոյ 'ի Սիկիլիոյ և 'ի պատճառս խաւարման լուսնոյ յապաղումն: ԾԱ-Կ. Բախել Աթենացւոց սաստկապէս ընդ ծով և ընդ ցամաք և յետին անյուսութիւն նոցա: ԿԱ-ՀԱ. Եռանդն ոգւոյ Նիկիայ յայրեցուցանել զզօրն, և Գիլիպպեայ ջանք 'ի վերջին կործանումն թշնամւոյն. ահագին նկարագիր մեծի նաւամարտի և պարտութեան Աթենացւոց: ՀԲ-ՁԷ. Նահանջ Աթենացւոց զօրուն, զկնաթափ խոնարհել նոցա 'ի գերութիւն և դատապարտութիւն 'ի քարահատս, և խժական մահ զօրավարացն Նիկիայ և Դեմոսթենի և վախճան Սիկիլեան արշաւանին:

# ԳԻՐՔ Է



Ա. Իսկ իբրեւ կազմեալ հանդերձեցին Գիլիպպոս եւ Պիւթէն զնաւս, ամբարձեալ 'ի Տարէնտեայ՝ զծովեզերբ գնալով եկին 'ի Լոկրիս Եպիզեփիւռիացւոց. եւ ստուգագոյնս տեղեկացեալ անդ, եթէ չեւ էր Սիրակուսա իսպառ պաշարեալ, եւ թէ մարթ էր նոցա 'ի կողմանէ Եպիպօլեայ գալ անկանել 'ի քաղաքն, խորհուրդ կալան եթէ արդեօք 'ի յաջակողմն ունելով զՍիկիլիա՝ փորձեսցեն մուտ 'ի նաւահանգիստն առնել, եւ կամ 'ի ձախակողմն 'ի Հիմերա նաւարկելով նախ, եւ զՀիմերացիս եւ զայլս յիւրեանս յաւելեալ, եւ նոքօք հանդերձ ցամաքաւ գալ 'ի Սիրակուսա: Եւ հաճոյ թուեցաւ նոցա 'ի Հիմերա նաւարկել. մանաւանդ զի եւ Ատտիկեցւոց չորս նաւք չեւ էին ժամանեալ 'ի Ռեգիոն, զորս Նիկիաս՝ ընդ լուր գալստեան նոցա 'ի Լոկրիս՝ անագան ուրեմն առաքեալ էր: Յառաջեալ սոցա քան զհետամուտ նաւս թշնամեաց՝ անցին ընդ նեղուցն, եւ ելեալ 'ի ցամաք 'ի Ռեգիոն եւ 'ի Մեսսինէ՝ հասին 'ի Հիմերա: Եւ յաջողեաց նոցա հաւանեցուցանել զՀիմերացիս անձէն նաւաստուոյն զէն պատրաստել եւ ինքեանց նիզակակից պատերազմին լինել, քանզի անդ 'ի Հիմերա հանեալ էր սոցա զնաւս 'ի ցամաք: Յղեցին եւ առ Սելինունդս գալ համագունդ զինուորութեամբ ընդ առաջ նոցա: Խոստացան եւ բնակիչք Գելայ եւ ոմանք 'ի Սիկելացւոց ձեռն տալ նոցա

տակաւուք. և որք առաւել ևս յառաջամիտք գտան 'ի նոսա յայս միաբանութիւն, որոց թագաւոր նոցա Արքոնիդաս իշխան միոյ մասին երկրին Սիկելացւոց, որ և չէր անզօր ոք և բարեկամ Աթենացւոց՝ այն ինչ մեռեալ էր. և զի լուր մեծեաւանդն նախանձու գալստեան Գիլիպպեայ 'ի Լակեդեմոնիոյ շարժէր զնոսա: Իսկ Գիլիպպեայ առեալ յիւրոց անտի նաւաստեաց և 'ի ծովային մարտկաց՝ որս իբրև եօթնհարիւր վառեալս 'ի զէն, և 'ի Հիմերացւոց զօր սպայակոյտ և թեթևազէն ընդ ամենայն հազար մի, և հեծեալս հարիւր. և 'ի Սելինոնդաց ջոկատ մի մեկնակազէն և այրուձի սակաւ, նոյնպէս և 'ի Գելայ և 'ի Սիկելացւոց ոչինչ աւելի քան զհազար, և չուէր խաղայր գայ 'ի Սիրակուսա:

Բ. Եւ որք 'ի Լևկադա Կորնթացիք աճապարեցին և նոքա մնացորդովք նաւուք վաղվաղել յօգնականութիւն պաշարելոցն. և Գոնկիլոս ոմն 'ի զօրավարաց Կորնթացւոց եկեալ յետ ամենեցուն միով նաւու 'ի ծով, և եհաս նախ 'ի Սիրակուսա՝ սակաւիկ մի յառաջագոյն քան զԳիլիպպոս: Եւ գտեալ զնոսա 'ի խորհուրդս ձեռնթափ 'ի պատերազմէն լինելոյ՝ արգել զնոսա, և սրտապնդեալ քաջալերեաց 'ի յոյս ընդ հուպ ժամանելոյ և այլոց նաւուց և գալստեան Գիլիպպեայ Կլէանդրեան 'ի Լակեդեմոնէ յառաջնորդութիւն զօրուն: Եւ խրախուսեալ արիացան Սիրակուսացիք և շարժեցան ելին զինեալ համախումբ ընդառաջել Գիլիպպեայ, զոր մերձ լինել լուան: Իսկ նորա կալեալ զճանապարհայն զամրոցն Իետաս զՍիկելացւոց, և որք զինուորեալն էին կարգեալ 'ի ռազմ եկն եհաս յԵպիպոլէ, և ելեալ ընդ կողմն Եւրիելեայ՝ ընդ որ յառաջագոյն և Աթենացիք, յառաջէր 'ի նմա Սիրակուսացւովք հանդերձ 'ի վերայ պատուարացն Աթենացւոց: Եւ դէպ եղև գալուստ նորա 'ի ժամանակին՝ յորում աւարտեալ Աթենացիք զգործ ամրութեանցն ընդ եօթն կամ ընդ ութ ասպարէս ընդ երկայնութիւն մինչև 'ի նաւահանգիստն, պարիսպ կրկնակի՝ բայց 'ի փոքուէ անջրպետ խորոցէն՝ որ

առ ծովուն, զորոյ և զհետ էին տակաւին շինութեան: Իսկ 'ի միւս բազուկ ծովուն՝ 'ի կողմն շրջապարսպին որ 'ի Տրոգիլոս կոյս, արկեալ նոցա լիր քարինս ընդ ձիգ երկայնութիւն՝ կէս մի աւարտ, և կէս մի թերակատար էր գործն: Յայսպիսի տագնապ վտանգի էին Սիրակուսացիք:

Գ. Ընդ յեղակարծ երևումն Գիլիպպեայ և Սիրակուսացւոց խռովեալ սասանեցան 'ի սկզբան Աթենացիք, ճակատեցան տալ 'ի կռիւ: Զտեղի էառ մերձ առ նոսա Գիլիպպոս, և քարոզ պատգամաւ առաքեաց առ նոսա ասել. եթէ 'ի հինգ աւուրս ելցեն Աթենացիք 'ի Սիկիլիոյ, որ ինչ իւրեանց է բարձեալ տանելով զամենայն՝ յօժար է ինքն 'ի խաղաղութիւն: Արհամարհեալ նոցա զպատգամաւորութիւնն՝ արձակեցին զքարոզն անպատասխանի, և պատրաստէին երկուստեք յայնժամ աստի և անտի 'ի պատերազմ: Գիլիպպեայ տեսեալ զՍիրակուսացիս խառն 'ի խուռն և անվարժս ամենեին 'ի ռազմ ճակատու, էած զնոսա 'ի վայր ընդարձակագոյն: Նիկիաս չեհան զիւրսն առ թշնամին, այլ հանդարտեալ զտեղի էառ առ պատնիշօքն: Իբրև ետես Գիլիպպոս թէ չելանին նոքա, խաղացոյց զզօրն յակառն 'ի կատարն Տեմենիտեայ և բանակեալ ագաւ անդ զայն գիշեր: Ի վաղիւն շարժեալ զմեծ մասն զօրուն ած կարգեաց ընդդէմ պատնշացն Աթենացւոց չթողուլ զնոսա ելանել ուրեք յօգնականութիւն. և զօրահատոյց լեալ 'ի բանակէն արձակէր յամուրն 'ի Լաբդալոն, էառ զայն և զօրս 'ի նմա եգիտ՝ սրակոտոր արար անխնայ. զի չէր տեղին երևելի Աթենացւոց: Ի նմին աւուր անկաւ 'ի ձեռս Սիրակուսացւոց և նաւ մի պատերազմիկ աթենացի որ խարըսխեալ նստէր 'ի նաւահանգստին:

Դ. Յետ այսորիկ ամբարձին Սիրակուսացիք նիզակակից դաշնաւորօք իւրեանց պատուար որմնարգել 'ի վերնակողմանէ քաղաքին սկսեալ ընդ երկայնութիւն Եպիպօլեայ 'ի կողմնակի պատնէշն կոյս. զոր 'ի չյաջողել Աթենացւոց խափանել, ոչ ևս այնուհետև պաշարել կարէին

զքաղաքն: Վաղ իսկ աւարտեալ էր Աթենացւոց զշինու-
թիւն պատնիշացն մինչև 'ի ծով և հասեալ 'ի բարձուանս 'ի
վեր, յորժամ եկն մերձեցաւ Գիլիպպոս գիշերի 'ի կողմն
մի պատնիշին՝ զոր տկար տեսանէր. իբրև զայն զգացին Ա-
թենացիք որ արտաքոյ որմոյն 'ի բացի գիշերօթեւին՝ դիմե-
ցին անդր 'ի տեղին. և գիտացեալ զայս Գիլիպպոս ամփո-
փեաց զձեռս վաղվաղակի: Յաւելեալ Աթենացւոց այլ ևս 'ի
բարձրութիւն որմոյն, պահէին զայն ինքեանք, 'ի դաշնա-
ւորսն յանձն արարեալ զայլ ամենայն ամրութիւնս պատ-
նիշացն: Խորհեցաւ յայնժամ Նիկիաս պարսպել և զՊլեմ-
միւրիոն՝ որ է սարաւանդ 'ի հանդիպակողմն քաղաքին,
երկայնեալ 'ի վերայ մեծի նաւահանգստին՝ անձուկ զմուտ
նորին գործելով: Եւ թուէր նմա պարսպելով զվայրն՝ դիւ-
րին գործել զմուտ պարենից 'ի ներքս 'ի բանակն, զի կա-
յան նաւախմբին մօտ առ նաւարանի Սիրակուսացւոց գո-
լով՝ չստիպէին որպէս ցայնժամ 'ի խլրտել նաւաց թշնա-
մեաց 'ի վերայ նոցա, շարժել գալ յերկայնութենէ անտի
մեծի նաւահանգստին: Մտս դնէր այնուհետև Նիկիաս 'ի
ծովամարտ առաւել, զի յետ գալստեան Գիլիպպեայ ան-
յոյս ամենևին համարէր զյաջողութիւն իւրաց ընդ ցամաք:
Եւ անցեալ զօրօք և նաւուք 'ի Պլեմմիւրիոն, կառոյց անդ
զերիս ամրոցս և զմեծ մասն կահուց և կարասեաց անդր
ժողովեաց, և զմեծամեծս 'ի նաւաց և զորընթացսն ած
անդր 'ի կայս և 'ի դադար: Քանզի սկսաւ յայնժամ նե-
ղել նաւաստին 'ի չգոյէ մօտաւոր ջրոյ 'ի լիութիւն բաւա-
կանի, և յեղանել նոցա քաղել կրկուսս՝ կոտորէին բա-
զումք յայրուձիոյն Սիրակուսացւոց 'ի տեարց երկրին:
Քանզի երիր մասն հեծելազօրուն առ Ոլիմպիէոն աւանաւն
բանակէր ընդդէմ Աթենացւոց որ 'ի Պլեմմիւրիոն՝ զի մի
ելցեն անտի յաւար և յապականութիւն երկրին: Լուեալ
Նիկիասայ եթէ և այլք 'ի նաւաց Կորնթացւոց եկեալ մեր-
ձենան, յղեաց նաւս քսան դարանել նոցին 'ի Լոկրիս և 'ի
Հռեգիոն և զծովեզերբ Սիկիլիոյ և 'ի լրտեսել զխլրտմունս
նոցա:

Ե. Իսկ Գիլիպպոս յառաջ վարէր անդուլ զշինութիւն որմոյն ընդ երկայնութիւն Եպիպօլեայ. առնոյր իւր 'ի պէտս զքարինս՝ զոր Աթենացւոց հաւաքեալ էր, միանգամայն ածէր կարգէր ստէպ զՍիրակուսացիս և զդաշնաւորս 'ի ռազմ առաջի պատուարի որմոյն, ճակատէին անտի և Աթենացիք: Եւ յորժամ 'ի դէպ թուեցաւ Գիլիպպեայ՝ սկիզբն արար մարտի. և յանջրպետ խորոցս անդ պատուարաց եղև պատերազմ, յորում ամենևին անպիտան լեալ հեծելազունդ զօրն Սիրակուսացւոց և նիզակակցաց նոցա՝ խորտակեալ պարտեցան, բարձին պայմանաւ զմեռեալս իւրեանց, և Աթենացիք նշան յաղթութեան կանգնեցին: Ժողովեալ Գիլիպպեայ զզօրն՝ խոստովան եղև թէ ոչ 'ի նոցա ինչ յանցանաց պարտութիւնս այս եղև, այլ իւրով վրիպակ խորհրդով՝ որ կից առ պատուար որմոյն կարգեալ զռազմն՝ անպիտան արար զայրուձին և զաղեղնաւորսն, և թէ պարտ է դառնալ վերստին 'ի կռիւ: Եւ յուշ ածէր նոցա թէ չեն ինչ խոնարհագոյնք նոքա 'ի պատրաստութեան զինուց. իսկ յարութեան մասին և երկբայելն անգամ դժպհի է ամենևին, որպէս եթէ Պելոպոնեսացիք և Դորիացիք չկարասցեն յաղթել Յոնիացւոց, կղզայնոց և խառն 'ի խուռն գումարելոյ ամբոխի, և վանել մերժել զնոսա յերկրէս:

Զ. Յետ այնորիկ ապա յաջողեաց նմա ածել զնոսա վերստին 'ի պատերազմ. քանզի խորհելով Նիկիասայ և Աթենացւոց՝ զի եթէ և թշնամիք իսկ չխլրտեսցին 'ի կռիւ, պարտ էր նոցա մի՛ անտես առնել զշինութեամբ որմոյն՝ որ առ պատուարաւ պատնիշաց նոցա ամբառնայր. և արդէն իսկ հասանէր 'ի ծայր պատուարին Աթենացւոց, զոր եթէ յառաջ ևս վարէին, այնուհետև և անպատերազմ անգամ յաղթութիւնն 'ի նոցա կոյս էր միշտ, վասն որոյ և շարժեցան ընդդէմ Սիրակուսացւոց: Խաղացոյց Գիլիպպոս զզօրն սպայագունդ բացագոյն քան որ յառաջնում նուագին արտաքոյ պատուարի որմոյն, և խառնեաց զնոսա 'ի կռիւ.

զպրուԺին և զաղեղնաւորացն գունդ կարգեաց զառ 'ի կողից Աթենացւոց 'ի տափարակի՝ 'ի ծայր կատարածի ամրութեանց երկուց կողմանց: Յարձակեալ հեծելազօրուն 'ի ձախակողմն թև յառաջապահ զօրուն Աթենացւոց, և խորտակեալ եհար զնոսա. որով սասանեալ ողջոյն բանակ նոցա յերեսաց Սիրակուսացւոց՝ անկան տագնապաւ մինչև 'ի պատնէշ իւրեանց. 'ի գալ գիշերոյն ժամ առեալ Սիրակուսացւոց յառաջ վարեցին զշինուած որմոյն՝ անցեալ անդրագոյն քան զԱթենացւովքն, մինչ զի անարգել այնուհետև 'ի նոցանէ, և 'ի յաղթութեան իսկ նոցուն՝ չունէին ինչ երկիւղ պաշարելոյ 'ի նոցանէ:

Է. Ի ժամանակին յայնմիկ որ 'ի ճանապարհին յամեալ էին նաւք 'ի Կորնթոսէ, յԱմբրակեայ և 'ի Լևկադեայ երկոտասանք, պատրեալ զպահ զգուշութեան հետամտիցն խնդրակաց Աթենացւոց, զանխուլ 'ի նոցանէ եկին մտին 'ի նաւահանգիստն, և իշխան էր նոցա Երասինիդէս կորնթացի: Որոց սատարութեամբ 'ի գլուխ հանին Սիրակուսացիք զմնացորդ որմածին մինչև 'ի կողմնակի ամրութիւնս պատուարին: Եւ եղեալ շրջէր Գիլիպպոս և յայլ կողմանս Սիկիլիոյ 'ի զօրաժողով ընդ ծով և ընդ ցամաք, 'ի քաղաքաց մանաւանդ որ չէին յօժարք 'ի նոյն, և կամ դեռ ևս անձեռնամուխք 'ի պատերազմ: Առաքեցան և այլ նոր հրեշտակք Սիրակուսացւոց և Կորնթացւոց 'ի Լակեդեմոն և 'ի Կորնթոս 'ի խնդիր նորոյ օգնականութեան, զորս իւ և է մարթանօք ամբարձեալ 'ի վաճառական նաւս և 'ի նաւկնեար թեթև անցուցանել 'ի Սիկիլիա, զի և Աթենացւոց յղեալ և խնդրեալ էր օժանդակ գունդս զօրաց: Թող զի և Սիրակուսացիք կազմեալ նաւախումբ, և կրթէին մարզէին 'ի ծովամարտ և յամենայնի ճիգն մեծ էր 'ի նոսա:

Ը. Զգացեալ զայս Նիկիաս և տեսեալ զի երթայ և ստուարանայ զօրութիւն թշնամւոյն օր ըստ օրէ և իւրեանն նուազեալ տկարանայ, առաքեաց և ինքն հրեշտակս

բանբերս յԱթէնս, զոր և ստէպ առնէր յառաջագոյն 'ի կարևոր դէպս, արդ ևս յաճախէր 'ի սոյն, զի յանհնարին վտանգի լինել համարէր. զի եթէ ոչ փութացեալ կոչեսցեն զզօրն յետս, և կամ ոչ վաղվաղակի առաքեսցեն գունդս զօրաւիգն հզօր՝ վճարեալ էր վասն նոցա: Եւ խիթալով նա զի մի պատգամաւորքն՝ կամ առ նուաղութեան կարևոր հանճարոյ 'ի յայտնութիւն իրացն, և կամ առ զմիտս ամբոխին հաճելոյ՝ թերասցին 'ի դոյն, գրով ևս ետ նոցա զայն 'ի ձև նամականւոյ. որով տեղեկագոյնս խելամտեալ Աթենացւոց խորհրդոց նորա և ոչ վէր 'ի վերոյ բանից անտի հրեշտակաց՝ ըստ պայմանի իրացն և ըստ հանգամանաց հաստատութեամբ խորհեսցին: Եւ մեկնեցան պատգամաւորքն նամականւովն, և զոր 'ի բանից բերանոյ ունէին ասել. և ինքն Նիկիաս հսկէր 'ի պահ զգուշութեան զօրուն, խոյս տալով 'ի կամաւոր վտանգաց:

Թ. Ի վերջ կոյս ամարայնոյս Եւետիոն զօրավար Աթենացւոց զինուորեալ ընդ Պերդիկկայ արքայի՝ գնաց բազմաձեռն Թրակացւովք 'ի վերայ Ամփիպօլեայ, և չկարացեալ առնուլ զայն, խաղացոյց զպատերազմիկ նաւսն ընդ Ստրիմոն գետ, և անտի 'ի կողմանէ գետոյն պաշարեաց զքաղաքն, զբուն զօրութեան իւրոյ դնելով 'ի Հիմերէոն: Եւ այսպէս վախճան եղև ամարայնոյս:

Ժ. Ի գալ ձմերայնոյ հասեալ բանբերացն Նիկիայ յԱթէնս, զոր ինչ 'ի բանից բերանոյ ունէին ասել պատմեալ. և զորոց հարցանն՝ պատասխանի արարեալ, մատուցին ապա և զնամականին, զոր ատենադպիր քաղաքին յառաջ անցեալ ընթերցաւ 'ի լսելիս Աթենացւոց, և էր պատճէն թղթոյս այս.

ԺԱ. « Զոր ինչ կանուխ յառաջագոյն գործեցաք՝ 'ի բազմապատիկ այլոց թղթոց տեղեկացեալ գիտէք, Աթենացիք. և այժմ արդ կարևորագոյն պէտք են գիտել յորում եմք պայմանի՝ և ըստ այնմ խորհելով սահմանել: Ի բազում պատերազմունս յաղթողք 'ի վերայ Սիրակուսա-

ցուոց՝ յոր և առաքեցաքս, և պատուարս և պատնէշս ընդ-դէմ նոցուն կառուցեալ յորում և կամք այժմ, եկն եհաս Գիլիպպոս լակեդեմոնացի 'ի Պելոպոննեսեայ և 'ի քաղա-քաց քաղաքաց Սիկիլիոյ գումարեալ զօրս. յառաջնում մարտի յաղթեցաւ նա 'ի մէնջ, այլ յերկրորդումն՝ բազ-մութեամբ այրուձիոյն և աղեղնաձիգ գնդաւն զօրացեալ նորա, և մեք տեղի տուեալ ամփոփեցաք 'ի պատուարս մեր։ Եւ այսօր արդ դադարեալ 'ի գործոյ շինուածոյս յերեսաց բազմութեան հակառակորդաց մերոյ՝ հանդարտեալ նստիմք 'ի պատնէշս մեր. ոչ կարեմք համախումբ 'ի կռիւ գալ, զի մասն մի զօրուն 'ի պահ պարսպաց կարգեալ կայ։ Առ պատուարօքս ամբարձ թշնամին որմ՝ թէպէտ լոկ և վարկ-պարազն, բայց եթէ ոչ ծանու ձեռամբ 'ի վերայ հասեալ և ունիցիմք զայն, ոչ ևս կարեմք փակեալ պաշարել զնոսա։ Եւ 'ի կարծելս մերում պաշարել զայլս, դէպ եղև մեզ 'ի նոցանէ ըմբռնիլ, գոնեա 'ի կողմանէ ցամաքի, զի չկարեմք յերեսաց հեծելազին յառաջել ուստեք յերկրին։

ԺԲ. «Առաքեալ և նոցա հրեշտակս՝ զօր 'ի թիկունս խնդրեն 'ի Պելոպոննեսեայ. և Գիլիպպոս շրջելով ընդ քա-ղաքս Սիկիլիոյ, և զօրս ցարդ հանդարտեալ նստէին 'ի մարտակցութիւն հրաւիրէ, և ջանայ եթէ մարթ իցէ հա-նել զօրս և յայլոց ծովային և երկրախումբ. և որպէս լսեմքս, խորհին փորձ փորձել 'ի ծովէ կուսէ և 'ի ցամաքէ յարձակումն տալ 'ի վերայ պատուարաց մերոց։ Մի ան-հնարին ձեզ և անհաւատ բանս թուիցի և 'ի ծովէ կուսէ յարձակումն թշնամւոյն. զի ծովայինս մեր զօրութիւն՝ զոր գիտէ և թշնամին, ցամաքութեամբ նաւաց և քաջող-ջութեամբ նաւաստւոյն 'ի բարւոք պայմանի էր. այլ յորմէ-հետէ յամելով նաւաց 'ի ծովու՝ ընդ հերձս կողից ջուր 'ի ներքս առնուն, և հանդերձանքն և կազմած խաթարեալ ա-պականին։ Եւ չէ հնար 'ի ցամաք զնաւսն իջուցեալ և յարևա-ցուցանել զնոսա, զի հաւասար մերոյս և առաւել ևս բազմա-խումբ գումարտակ նաւաց թշնամւոյն սպասեալ մնայ

խաղալ 'ի վերայ մեր, զորս տեսանեմք առաջի աչաց մերոց 'ի մարզս կրթութեան: Որոց համարձակ է երբեք և ախորժեն 'ի կռիւ գալ ընդ մեզ, և ազատ են քան զմեզ յարեւուհանել զնաւս իւրեանց 'ի ցամաք, զի չունին պէտս պահակ նաւաց 'ի լրտեսել կամ 'ի զգուշանալ:

ԺԳ. « Որ առաւելութեամբ բազմութեան նաւաց հազիւ արդեօք յաղթողէր մեզ այս, և ոչ եթէ որպէս այսօր բռնադատեալք բովանդակ նաւական զօրութեամբս, 'ի պահ զգուշութեան կալ: Զի եթէ և սակաւիկ մի թուլանայցեմք 'ի պահպանութեան մասին, կարևոր պէտք անդամ պակասեն մեզ, ուր և այժմ դժուարաւ մօտ 'ի քաղաքն հասանեն պարէնք: Եւ նաւաստին' որ աղագաւ կորուսաք մեք զբազումս 'ի նոցանէ ցարդ և կորուսանեմք ցայսօր, կէսք զփայտ գնալով և զջուր, այլք յաւար ելանելով յայրուձիոյ թշնամւոյն կոտորին. և ռամիկսպաս զօրականն յորմէ հետէ 'ի հաւասար զօրութեան եմք, դասալիք գնան 'ի մէնջ: Եւ եկք օտարք' որ 'ի սկզբանէ անտի բռնի ամբարձան 'ի նաւս, երթեալ ցրուին ընդ քաղաքս. և ոյք 'ի յոյս մեծագունի վարձուց յընչաւէտութիւն եկին և ոչ 'ի պատերազմ, 'ի տեսանելն քան զկարծիս հզօր զհակառակամարտ թշնամին նաւուք և ամենայն պատրաստութեամբ, կէսք փախստեայք, և այլք ըստ մասաց իւրաքանչիւր պատճառելով' սորսորեալ գնան, զի ընդարձակ է Սիկիլիա. են որ չահավաճառ լինելով' հրամանաւ կարգապետաց փոխանակեն ընդ իւրեանց զհիկկարիկեան ստրուկս. այսպէս երթայ և պակասէ ընտիր նաւազն:

ԺԴ. « Գիտակացդ ձեզ գրեմ, զի սակաւ է կիրթ նաւաստի, և նուազունք յոյժ որ յաջողեն 'ի ղեկավարութիւն 'ի յեռս և 'ի մուտս և 'ի միաբան թիավարութիւն: Եւ որ յետին չար է, չեմ բաւական ես ինքնին զօրավարս 'ի հոգս խնամոյ այսոցիկ ամենայնի. զի 'ի բնէ լծընկէց էք իշխանութեան և ծանրալուր հրամանաց, և զի չունիմք այլ ուստեք լնուլ զպակասորդ նաւաստւոյն. մինչդեռ գի-

րին է Թշնամւոյն ազատ 'ի տեղեաց տեղեաց զայնոսիկ ժողովել. իսկ մեք զնոսա միայն ունիմք՝ զորս ընդ մեզ բերաք. և յայնցանէ զապրեալսն ևեթ. զի և դաշնաւոր մեր քաղաքք Նաքսոս և Կատանիա չունին օգնել մեզ: Յայնպիսում եմք պայմանի՝ որ եթէ տեսցեն զայս ամենայն կերակրիչ մեր քաղաքանին Իտալիոյ, և գիտելով զյամել ձեր յօգնականութիւն՝ յաւելցին յարել 'ի Թշնամին. անկախիւ այնուհետև յաջողեսցի նոցա, և մեզ մնասցէ զէնընկեց անձնատուր լինել 'ի նոսա: Հեշտալիս արդեօք գրել էր ինձ ձեզ լուրս՝ այլ ոչ օգտակարս, զի տեղեկագոյնս իմացեալ զառի եղեալս, և հաստատութեամբ զնորացս խորհեսջիք: Գիտելով իսկ զբարս ձեր՝ որ ախորժելիս մանաւանդ սիրէք լսել, և 'ի չյաջողելն 'ի նոյն՝ յանձնէք զամբաստանութիւն, զգուշագոյն համարեցայ ճանապարհ՝ զճշմարիտն ձեզ ծանուցանել:

ԺԵ. « Գիտասջիք արդ և զայս այսպէս, զի յոր 'ի սկզբանէ անտի եկաքս, ոչ զօրականն և ոչ 'ի զօրագլխաց ոք պարսաւանաց լինչ արժանի գործ է գործեալ. այլ զի դըղորդեալ շարժի ողջոյն Սիկիլիա, և ակն կալեալ մնայ այլոյ նորոյ բանակի 'ի Պելոպոնեսեայ, խորհել պարտ է ձեզ. զի զոր ունիմքս արդ, և ոչ այժմեան պայմանիս է բաւական, վասն որոյ պարտ է կամ զայսոսիկ յետս կոչել և կամ այլ նոր բանակ ոչինչ նուազ հզօր երկրախումբ և նաւական առեալ արձակել և արծաթ ոչ սակաւ. և փոխանակ իմ զօրավար այլ, որ վասն ցաւոցս երիկամանց անկարող եմ այսուհետև: Եւ աղաչեմ ներողութեան 'ի ձէնջ հանդիպել, զի ցորչափ յուժի էի՝ բազմօք ձեզ յառաջնորդութեան իմում երախտաւոր գտայ: Եւ զոր ունիքդ առնել՝ փութացարուք անյապաղ 'ի սկիզբն գարնայնոյ, զի որ 'ի Սիկիլիոյ զօրաժողով է՝ ոչ յամեսցէ Թշնամին. 'ի Պելոպոնեսեայ թէպէտ յամել յամեսցեն, սակայն եթէ ոչ միտ դնէք զգուշութեամբ, կեօք զանխուլ 'ի ձէնջ՝ որպէս զառաջինն, և այլք յառաջեալ վաղագոյն քան զձեզ ժամանեսցեն »:

ԺԶ. Այսպիսի էր նամականւոյն Նիկիայ բովանդակութիւն: Իսկ Աթենացիք յետ լսելոյ գրոյն՝ ոչ լուծին զՆիկիաս յիշխանութենէն. այլ մինչև 'ի ժամանել առ նա նորընտիր իշխանակցաց նորա, ետուն նմա յորոց անդր առ նմա էին օգնականս՝ զՄենանդր և զԵւթիդեմոս, զի մի 'ի տկարութեան իւրում տառապեսցի նա միայնակ: Վճռեալ սահմանեցին դարձեալ յղել և այլ նոր բանակ զօրու նաւական և հետևակախումբ, զօրաժողովլեալ յիւրեանց անտի և 'ի նիզակակցաց իւրեանց, կարգելով իշխանակիցս Նիկիայ՝ զԴեմոսթենէս զորդի Ալկիսթենեայ և զԵւրիմեդոն Թուկլեան: Եւ վաղվաղեալ 'ի ձմերական անդ փոփոխունս արձակեցին զԵւրիմեդոն տասն նաւուք 'ի Սիկիլիա, և արծաթ տաղանդս քսան. միանգամայն և աւետաբեր զօրուն անդանօր 'ի մօտոյ օգնականութեան և խնամոց զոր ունէին վասն նոցա:

ԺԷ. Եւ զի Դեմոսթենեայ էր զհետ լինել պատրաստութեան արշաւանին՝ որ ունէր լինել 'ի բանալ գրոց գարնան, ծանուցեալ նորա առ նիզակակից դաշնաւորս, եգիտ 'ի նոցանէ արծաթ, նաւս և զօրական մնդաւոր ապարազէն: Առաքեցին Աթենացիք շուրջ զՊելոպոնեսեաւ նաւս քսան, զգուշանալ չթողուլ զոք 'ի Կորնթոսէ և 'ի Պելոպոնեսեայ անցանել 'ի Սիկիլիա: Զի 'ի դառնալ հրեշտակաց նոցա և յաւետել զյաջողութիւն իրաց Սիկիլիոյ, տեսեալ Կորնթացւոց թէ ոչ անօգուտ ինչ եղև նախկին առաքումն նաւաց, շարժեցան և զայլ ևս զօրս 'ի վաճառական նաւս անցուցանել 'ի Սիկիլիա. նոյնօրինակ և Լակեդեմոնացիք առաքէին 'ի կողմանց կողմանց Պելոպոնեսեայ: Կազմեալ հանդերձեցին Կորնթացիք նաւս քսան և հինգ, փորձ փորձել նոքօք 'ի նաւամարտ ընդ պահակ նաւս Աթենացւոց 'ի Նաւպակտոն. զի և 'ի միտ դնել Աթենայցւոց զգուշանալ գումարտակիս՝ դիւրին լիցի վաճառական նաւուց անցանել անխափան 'ի Սիկիլիա:

ԺԸ. Պատրաստէին և Լակեդեմոնացիք ըստ կանուխ

սահմանելոյն ասպատակ գնել յԱտտիկէ, 'ի սոյն յորդորեալ և 'ի Սիրակուսացւոց և 'ի Կորնթացւոց՝ յղելով պատերազմին արգելուլ զնոր զինուորութիւն Աթենացւոց 'ի զօրաւիգն բանակին նոցա 'ի Սիկիլիա. Թախանձէր ստէպ և Աղկիբիադէս պարապել զԴեկելիա, և մի՛ դուլ առնել մարտին: Եւ որ մանաւանդ քաջալերեալ ազդէր զԼակեդեմոնացիս, զի ըմբռնեալ Աթենացիք 'ի կրկնակի պատերազմէն՝ որ ընդ Իւրեանս և ընդ Սիկիլիացիս, դիւրեաւ խորտակեսցին, և զի համարէին Աթենացւոց լուծեալ նախ զդաշինս խաղաղութեան: Քանզի յառաջնում պատերազմին զինքեանս առաւել յանցաւորս դատեցան Լակեդեմոնացիք, մատնելով Թեբացւոց 'ի ժամանակի խաղաղութեան ընդդէմ ուխտի դաշանց 'ի Պղատէա. և զի յօրինադրութեան անդ նախկին դաշանցն մի՛ 'ի զէն վաղվաղել, ասէր, 'ի խնդրել միոյ ուրուք 'ի կողմանցն իրաւախոհութեամբ զիրն վճարել, և նոցին Լակեդեմոնացւոց ապախտ էր արարեալ զբողոք կոչոյ Աթենացւոց յատեան արդարութեան, վասն որոյ և իրաւամբ ձախողեալ կարծէին յարկածս Պիւղեայ և այլուր: Այլ այժմ որդ յորմէ հետէ Աթենացիք երեսուն նաւուք խաղալով յապականութիւն եդին զարտորայս Եպիդաւրեայ և զՊրասեայ և զերկիրն շուրջանակի, և 'ի Պիւղեայ հինաբար ելեալ ասպատակէին, և զբողոք Լակեդեմոնացւոց զերկբայելեաց ինչ խնդրոյ դաշանց չլուելոյն առնէին. 'ի նոյն յանցանս ապա՝ զոր երբեմն ինքեանք յանցեան, զԱթենացիս արդ տեսանելով անկեալս, համարձակ 'ի կռիւ ելին: Պատուէր եատուն դաշնաւորաց պատրաստել 'ի ձմերանին երկաթ և այլ նիւթ կարևոր 'ի շինութիւն ամրութեանց բերդորէից. ջանային և ինքեանք հանել զօրս 'ի նաւս վաճառականս յօգնութիւն Սիկիլոյ, 'ի նոյն և զայլ Պելոպոնեսացիս ստիպէին: Յորում և վախճան լինէր ձմերայնոյն և ութուտասներորդի ամի պատերազմին զոր գրեաց Թուկիդիդէս:

ԺԹ. Յերևել գարնայնոյ շարժեցան Լակեդեմոնացիք և

դաշնաւորք նոցա վաղագոյն յարշաւանս դնել յԱտտիկէ, որոց զօրավարէր Ագիս որդի Արքիդամեայ արքայ Լակեդեմոնացւոց: Զդաշտավայրս երկրին խաթարեալ աւերէին, և զԴեկելիա պարսպեալ ամրացուցանէին, բաժանեալ զգործ աշխատութեան 'ի գունդս գունդս դաշնաւոր ժողովրդոց: Եւ հեռի էր Դեկելիա 'ի քաղաքէն Աթենացւոց հարիւր քսան ասպարիսաւ, և իբրու նոյնչափ և ոչ աւելի և 'ի Բիովտիոյ. 'ի դաշտավայրի 'ի գիպան տեղւոջ կառուցեալ 'ի վնաս մեծ Թշնամւոյն, երևելի մինչև 'ի քաղաքէն անգամ Աթենացւոց: Որ յԱտտիկէ էին Պելոպոնեսացիք և դաշնաւորք պարսպէին զամրոցն, իսկ որ 'ի Պելոպոնէս՝ յղէին զօր սպայակոյտ 'ի վաճառական նաւս 'ի Սիկիլիա: Այրընտիր լինէին Լակեդեմոնացիք յԻլոտաց և 'ի Նորոց ազատագրելոց արս վեցհարիւր, և զԵկկրիտոն սպարտացի 'ի զօրավար նոցա: Իսկ Բիովտացիք արձակէին երեքհարիւր զօրական վահանաւոր՝ առաջնորդ ունելով զՔսենոն և զՆիկոն՝ Թեբացիս, և զԵգեսանդրոս Թեսբիացի: Ելին սոքա նախ 'ի Տենարիա Լակոնիոյ 'ի ծով՝ և խաղացին 'ի խորս. յետ ոչ բազմաց և Կորնթացիք հինգհարիւր սպայք՝ կէսք 'ի Կորնթեայ, այլք վարձկան Արկադացւոց, և իշխան սոցա Ալեքսարքոն կորնթացի: Առաքեցին և Սիկիոնացիք ընդ Կորնթացիս երկերիւր մարտիկս յասպարակիր զօրուէն, և 'ի գլուխ ջոկատիս Սարգեւս սիկիոնացի: Եւ որ 'ի ձմերանիս կազմեցաւ նաւախումբ քսան և հինգ նաւաց Կորնթացւոց՝ էր 'ի ծով իբրու պահակ 'ի զգուշութիւն ընդդէմ նաւաց Ատտիկեցւոց որ 'ի Նաւպակտոն, մինչև ելեալ զօրուն 'ի վաճառական նաւս մեկնեցան 'ի Պելոպոնեսեայ, զի Աթենացւոց ուշ զհետ պատերազմիկ նաւացս լեալ, չլիցի նոցա պարապ տեսանել զվաճառաբարձսն:

ի. Առ սովին 'ի սկզբան անդ գարնան, մինչդեռ Դեկելիա 'ի շինութեան էր, առեալ Աթենացիք նաւս երեսուն զՊելոպոնեսեաւ արձակեցին, և զՔարիկլէս Ապոլդորեան իշխան նաւախմբին, պատուէր տուեալ նմա եր-

թալ յԱրգոս, և ըստ ուխտի դաշանց խնդրել յԱրգոսա-
ցւոց զօրս 'ի նաւս իւր: Առաքեցին և զԴեմոսթէն ըստ
սահմանելոյն վաթսուն նաւուք աթենացւովք 'ի Սիկիլիա.
թող և զհինգ նաւս 'ի Քիոյ, և ըստ Թուոյ համարոյ զօրա-
ժողովոյն զօր ասպարաւոր հազար երկերիւր. և 'ի կղզեաց
կղզեաց բազում յոյժ, և 'ի հպատակաց անտի իւրեանց
դաշնաւորաց ըստ մարթելոյն ժողովեալ որ ինչ կարևոր էր
'ի պէտս պատերազմի: Հրաման եղև Դեմոսթենեայ միա-
բան ընդ Քարիկլեայ հարկանել նախ զծովեզերեայս Լակո-
նիոյ: Դեմոսթէն ժամանեալ յԵգինէ, մինչ անդ գալըս-
տեան զօրուն՝ զորս զկնի իւր թողեալ էր, և զի ժամ լիցի
Քարիկլեայ առնուլ զԱրգիացիս 'ի նաւս իւր:

ԻԱ. Իսկ 'ի Սիկիլիա 'ի սոյն աւուրս գարնայնոյ դարձ
արար Գիլիպպոս 'ի Սիրակուսա, ածելով ընդ իւր զօրս
միանգամ կարացն հաւանեցուցանել 'ի քաղաքաց քաղա-
քաց գունդ բազմաձեռն: Գումարեալ և զՍիրակուսացիս
'ի ժողով, վառէր զնոսա կազմել յօքնախումբ նաւս և 'ի
ծովամարտ խիզախել. ակն ունիմ, ասէր, ըստ մեծութեան
վտանգին՝ արժանաւոր գործ գործել: Միաբանէր ընդ նմա
և Երմոկրատէս 'ի պնդել զերան արիաբար 'ի ծովամարտ
ընդ Աթենացիս: Ոչ եթէ հայրենի ժառանգութիւն է նոցա,
ասէր, հմտութիւն և փորձ 'ի ծովուն, և ոչ հանապազոր-
դեան ընդ նոսա. այլ քան զՍիրակուսացիս ցամաքաբնակ
գոլով նոցա, և 'ի Մարաց բռնադատեալք նաւորդք եղեն.
և թէ ընդդէմ յանդուգն մարդկանս՝ որպիսիք Աթենա-
ցիքն են, խիզախողքն ահագինք երևեսցին: Զի որպէս եր-
բեմն սոքա Աթենացիքս խոնարհէք 'ի զօրութեան, ձեռն-
արձակութեամբ 'ի վերայ մերձաւորաց՝ երկեղուկս արկին
նոցա, զնոյն արդ և մեք արկցուք զահ մեր 'ի վերայ հակա-
ռակորդաց մերոց: Եւ գիտեմ քաջ, զի եթէ արտաքոյ ակըն-
կալութեան ժրասցին Սիրակուսացիք համարձակել 'ի նա-
ւամարտ ընդ Աթենացիս, քան նոքա հմտութեամբ իւր-
եանց ընդդէմ անհմտից՝ ահարկութեամբս մեք գեր 'ի վե-

ռոյք քան զնոցայն մասս շահեցուք. վասն որոյ և անդանդաղ յայս փորձ մատչել զնոսա Թախանձէր: Իսկ Սիրակուսացիք հաւանեալ Գիլիպպեայ և Երմոկրատեայ և այլոց ոմանց 'ի նոյն խորհուրդս վառելոց՝ ամբարձան 'ի նաւս գալ 'ի ծովամարտ:

ԻԲ. Իբրև կազմեալ հանդերձեցաւ նաւախումբն, շարժէր ածէր Գիլիպպոս գիշերի զերկրախումբ զօրն համագունդ անկանել 'ի ցամաք կուսէ 'ի վերայ ամրութեանցն Պլեմմիւրայ. միանգամայն 'ի տալ նշանին յառաջ խաղացեն 'ի մեծէ նաւահանգստէն երեսուն և երեք նաւք Սիրակուսացւոց, և 'ի փոքուէն՝ ուր նաւարան էր նոցա, քառասուն և հինգ նաւք, որ զափամբ գնալով ունէին երթալ խառնել ընդ առաջինսն, և միաբան աստի և անտի խուռն յԱթենացիս հարեալ՝ գալ բախել ընդ Պլեմմիւրիոնի: Աթենացիք առ շտապ տագնապին լցին նաւս վաթսուն, յորոց քսան և հինգն ընդդէմ երեսնից և հնգից Սիրակուսացւոց՝ որ 'ի մեծէ նաւահանգստէն 'ի կռիւ գային, և այլք 'ի վերայ ելելոցն 'ի նաւարանէն. և անդէն 'ի բերան մեծի նաւահանգստին սկիզբն եղև կռուոյն. և յամառեալ երկարէր խազմն, սոցա բռնաբար 'ի ներքս անկանել ջանելով. և նոցա վանել զնոսա անտի 'ի բաց:

ԻԳ. Եւ մինչդեռ կլջեալ Աթենացիք 'ի Պլեմմիւրիոնէ 'ի ծովեզրն՝ ականկառոյցք միտ դնէին նաւամարտին, յեղակարծում ընդ արշալուրշն եհաս Գիլիպպոս 'ի վերայ նոցա և անկաւ 'ի պատուարս ամրոցացն. կալաւ զմեծն նախ, ապա և զերկուս փոքունս անընդդիմամարտ 'ի պահանորդաց, տեսանելով նոցա զանջան ըմբռնել մեծին: Յառնուլ անդ առաջնոյ ամրոցին՝ որ 'ի նաւկնեալ և որ 'ի նաւ մի բեռնաբարձ փախուցեալ մարդիկն, հազիւ ուրեմն անկեալ 'ի բանակեալն ապրեցան. զի որ 'ի մեծի նաւահանգստի կռուէին նաւք Սիրակուսացւոց՝ զօրացեալ յայնժամ արձակեալ էր նաւ մի պատերազմիկ զհետ փախըստէին: Բայց յետ առման երկուց ևս ամրոցացն՝ դէպ եղև

Սիրակուսացւոց խորտակել առաջի Թշնամւոյն, որով և փախստեայքն յամրոցաց՝ զափամբ նաւելով զիւրեաւ զերծան: Քանզի որ 'ի բերան մեծի նաւահանգստի կռուէին Սիրակուսացիք վանելով զԱթենացւոց նաւս, խառն 'ի խուռն 'ի ներքս 'ի նաւահանգիստն մխեցան, և զաղմուկ շփոթի զմիմեամբք հարեալ՝ յԱթենացիս թողին վայրապար զյաղթութիւն: Սոքա հալածական տարան զնոսա, և զորս 'ի սկզբան յաղթողք էին 'ի նաւահանգստին, և նաւս մետասան 'ի Սիրակուսացւոց խորտակեցին. կոտորեցին և զբազում մարդիկ, թող զորս գերեցին յերիս պատերազմիկ նաւս, իսկ յիւրեանցն զերիս միայն կորուսին նաւս: Եւ ժողովեալ զբեկորս նաւաց Սիրակուսացւոց 'ի ցամաք՝ նշան յաղթութեան կանգնեցին 'ի փոքու կղզեկին՝ որ հանդէպ Պլեմմիւրիոնի, և թողեալ գնացին 'ի բանակետղ իւրեանց:

ԻԴ. Այս եղեն ելք ծովամարտին Սիրակուսացւոց. բայց կալան նոքա զամուրսն Պլեմմիւրիոն, և զերիս ախոյեանս կանգնեցին, մին մի յիւրաքանչիւր ամուրսն. յերկուց 'ի վերջնոց զմին քանդեալ, զայլ երկուս մնացեալս ամրացուցին՝ պահակերս 'ի նոսա կարգելով: Յառնուլ անդ ամրոցացն կոտորեցան բազում մարդիկ և բազմագոյնք 'ի գերութիւն վարեցան, և արծաթ ոչ սակաւ յաւարի առաւ. զի շտեմարան համբարուց էր այն Աթենացւոց, որպէս և թանգարաց մեծութիւն և ցորեան և կարգապետաց աւանդք, յորում և առագաստք և կազմուածք քառասուն նաւաց, և երեք պատերազմիկ նաւք հանեալ 'ի ցամաք: Մեծաց վնասուց պատճառ եղև Աթենացւոց կորուստ Պլեմմիւրիոնի և տոյժ անհնարին զօրու նոցա. զի ոչ ևս այնուհետև աներկեան մուտ էր պարենից 'ի ներքս 'ի նաւահանգիստն, զի պահնակ նաւք Սիրակուսացւոց զգուշացեալ խափանէին զայն, և կռուով միայն հնար էր համբարաց մուտ 'ի ներքս, որ 'ի բազում գինաց առ արկանէր և վհատութիւն զօրուն:

ԻԵ. Յետ այսորիկ յղեցին Սիրակուսացիք նաւս երկոտասան, և առաջնորդ իշխան նոցին զԱգաթարքոս Սիրակուսացի. 'ի նաւացս այսոցիկ մին 'ի Պեղոպոնէս նաւէր՝ աւետաբեր յաջողութեան իրաց 'ի Սիկիլիա, և 'ի յորդոր սաստկացուցանելոյ զմարտ պատերազմին յԱտտիկէ: Իսկ մնացեալքն յԻտալիա կոյս նաւարկէին ընդ լուր գալստեան գանձաբեր և նպարակառոր նաւաց Աթենացւոց, որոց և հանդիպեալ զյոլովս 'ի նոցանէ հարեալ խորտակեցին. և զատաղձն կուտեալ 'ի շինութիւն նաւաց Աթենացւոց 'ի Կաւլոնիա՝ հրոյ ետուն ճարակ, և անցին անտի 'ի Լոկրիս: Եւ մինչդեռ խարիսխ արկեալ նոքա նստէին անդանօր, ահա նաւ մի վաճառաբարձ եհաս 'ի Պեղոպոնեսեայ՝ բերելով զօրականս 'ի Թեսբեայ, զորս և ընկալեալ Սիրակուսացւոց ընդ իւրեանս՝ դարձան 'ի տուն: Դարանեալ սոցա Աթենացիք զճանապարհայն մերձ 'ի Մեգարա քան նաւուք, հասեալ կալան զմի 'ի նաւացս հանդերձ նաւաստեօք, բայց ճողոպրեալ այլոց զերծան 'ի Սիրակուսա: Եղեն յարձակմունք և կռիւք զշերտափակ ցցապատնիշօք 'ի նաւահանգստին, զոր յօրինեալ էր Սիրակուսացւոց առ հին նաւարանաւն 'ի ծովուն՝ յանքոյթ դադար նաւաց իւրեանց յերեսաց Աթենացւոց: Որոց մերձեցուցեալ նաւ մի մեծ յոյժ 'ի տեղին, բրգունս 'ի նմա ունելով փայտակերտս և մարակոցս. և ինքեանք յակատս՝ կապելով զցիցս շերտափակին, և 'ի վեր ձգելով զայնոսիկ անուորդովք խորտակէին, և կամ լուղակս իջուցեալ 'ի ծով սղոցէին: Իսկ Սիրակուսացիք 'ի բարձանց անտի նաւարանին նետաձիգ 'ի նոսա լինէին. նոյնպէս և Աթենացիք 'ի մեծէ նաւէն հակառակս նետս ընդդէմ թշնամեաց ցնդէին, մինչև յաջողել նոցա խլել զբազումս: Դժնդակագոյն խոչք էին թագունքն և ծածկեալ ցիցք ընդ ջուրբք, զի բազմավտանգ լինէր նաւարկել առ նոքօք, ընդ որս յանզգոյշս բախելով նաւաց՝ իբրև ընդ խութս հարեալ փշրանէին: Այլ և յիջանել լուղակաց վարձուք 'ի սղոցել զնոսա, դառնային Սիրակուսա-

ցէք վարսել զայլս նորս: Եւ այլ ինչ բազում հակառակ իրերաց հնարէին, որ 'ի դէպ էր Թշնամեաց մօտ առ միմեանս բանակելոց, փոխանակաւ մրցութիւնս, և այլափոխ փորձս մենքենայից: Հրեշտակս աւետաւորս առաքեցին Սիրակուսացիք ընդ ծովս Սիկիլիոյ 'ի Կորնթացւոց, յԱմբրակիացւոց և 'ի Լակեդեմոնացւոց՝ աւետել զառումն Պլեմմիւրիոնի և զլուր ծովամարտին. յորում ոչ եթէ զօրութեամբ Թշնամւոյն, այլ ինքեանց չփոթելով և աղմկելով պարտեցան. և զայլ ամենայն մանրապատում ցուցեալ՝ յայտ առնէին զմեծ իւրեանց ակնկալութիւն. և աղաչէին զնոսա գալ 'ի Թիկունս օգնականութեան հետևակախումբ զօրօք և նաւուք, զի և Աթենացիք մնան նորոյ բանակի. որոց եթէ յաջողէր յառաջ քան զգալուստոցն կանխել 'ի սպառսպուռ ջախջախումն այժմեան զօրութեանն նոցա, վախճան լինէր յայնժամ մարտին: Այս էր պայման իրաց յայնժամ 'ի Սիկիլիա:

ԻԶ. Իսկ Դեմոսթենէս յետ զօրաժողովին և պատրաստութեան բանակին՝ որ 'ի Թիկունս իւրոցն 'ի Սիկիլիա, ամբարձեալ յԵգինայ և նաւարկեալ ընդ Պելոպոնէս եկն խառնեցաւ ընդ գումարտակի երեսուն նաւուցն Աթենացւոց և ընդ Քարիկլեայ, որոց և առեալ յԱրգիացւոց սպարազէնս ոմանս խաղացին 'ի Լակոնիա: Նախ զկողմն մի Եպիդաւրեայ Լիմերայ աւերեալ ապականեցին, ելեալ ապա 'ի ցամաք զափամբ Լակոնիոյ հանդէպ Կիւթերայ, ուր և էր մեհեան Ապողոնի, յաւարի հարին զերկիրն և ամրացուցին զկողմն մի երկրին՝ որ է 'ի ձև պարանոցի, յապաւէն Իլոտաց փախստէից Լակեդեմոնացւոց. որք և անտի որպէս 'ի Պիւղեայ՝ յաւար և 'ի յափշտակութիւն ելանէին: Յետ ամրապետելոյ երկրին՝ վաղվաղէր Դեմոսթէն անցանել 'ի Կորկիւրա, առնուլ և անտի 'ի դաշնաւորաց զօրս և գալ հասանել անյապաղ 'ի Սիկիլիա: Իսկ Քարիկլէս միայն անդր 'ի տեղւոջն, առ գլխաւորելոյ զգործ ամրութեանցն. և Թողեալ անդանօր պահանորդս, դարձաւ

ինքն երեսուն նաւուք յԱթէնս, և Արգիացիք ընդ նմա։

ԻԷ. Հասին յամարանիս յԱթէնս 'ի սուսերաւորաց Թրակացւոց 'ի Դիեան ցեղէն 'ի վահանաւորաց երեքհազար երեքհարիւր այր՝ երթալ ընդ Դեմոսթենեայ 'ի Սիկիլիա. այլ զի անագան էր գալուստ նոցա, խորհեցան Աթենացիք դարձուցանել զնոսա՝ ուստի եկեալ էին 'ի Թրակիա յետս. զի բազմածախս յոյժ երևէր նոցա պահել զնոսա, մինչդեռ կարի ծանրանայր նոցա ծախք պատերազմին Դեկելիայ, որոց վարձ էր աւուրն դրամ մի ըստ գլուխ: Զի յորմէ հետէ 'ի սկիզբն ամարայնոյս պարսպեալ ամրացաւ Դեկելիա, նախ համագումար զօրօք, ապա 'ի միաբանութենէ դաշնաւորաց պահանորդօք անդեալ, որոց և փոխանակաւ յարձակելով ընդ երկիրն՝ բազում վնաս հասուցանէին Աթենացւոց, աւարհարութեամբ արարոց և կոտորմամբ մարդկան 'ի կործանումն մեծ իրաց նոցա: Քանզի յառաջագոյն սակաւօրեայք էին ասպատակութիւնք արշաւանին, և չէր ինչ արգել յայլ ժամանակս յարդիւնս երկրին վայելելոյ. բայց արդ հանապազօրեայ բնակութեամբ առ նոսա, է զի հզօր ձեռամբ, և է զի 'ի հարկէ ժամուն պահանորդօք միայն ամրոցին խիզեալ աւերէին զանդաստանս. և ցորչափ մօտ էր անդ թագաւորն Լակեդեմոնացւոց Ագիս, որ ոչ հարևանցի ինչ պատերազմէր, մեծապէս վնասեցան Աթենացիք: Քանզի բաց 'ի տուժից արդեանց երկրին, աւելի քան երկու բիւր 'ի ստրկաց փախստեայ 'ի նոցանէ գնացին, յորոց բազումք ձեռագէտք էին, և անդեայ և գրաստ համայն կորեաւ. և 'ի հանապազօր արշաւանս հեծելազին ընդդէմ Դեկելիայ և 'ի պահ զգուշութեան արտօրէից, կէսք յերիվարաց յանդուլ վաստակս ընդ քարաժեռ կոպճուտ վայրս տկարացեալ կաղային, և այլք խոց վիրաւորք անպիտան լինէին:

ԻԸ. Իսկ աղխամաղխ վաճառաց յԵւբիոյ՝ որ երբեմն ընդ կարճոյ ճանապարհ գայր ընդ ցամաք Որոպայ ընդ Դեկելիա, ընդ ծով այնուհետև զՍիւնիոնիւ շրջանաւեալ

բազմածախ լինէր. նոյն և վասն որոյ կարօտէր քաղաքն, որ փոխանակ քաղաքի՝ ամրական բերդի առնոյր զկերպարան: Զի զտեւն ողջոյն 'ի պատուարս պարսպաց նորա փոխանակաւ 'ի պահ կային Աթենացիք, և գիշերի բազմութեամբ ամբոխիւ՝ բաց յասպետացն, կէսք 'ի զէնս, այլք լոկ 'ի պահ զգուշութեան, զամառն ողջոյն և զձմեռն միօրինակ գիշերապահ տառապէին: Եւ որ ճգնէր զնոսա առաւել, այն էր՝ յերեսաց կրկնակի պատերազմին. սակայն յայնմ յամառ պնդութեան, որում յառաջ քան զարգելուն՝ 'ի լուր ականջաց անհաւատանայր ոք, առէին տոկային: Թէպէտ պաշարեալք 'ի Պելոպոնեսացւոց, ոչ միայն յետս կալ 'ի Սիկիլիոյ ոչ կամէին, այլ միօրինակ ոչինչ նուազ քան զԱթենացւոցն զքաղաք մեծ զՍիրակուսա պաշարեալ պահէին, և յանդուգն զօրութեամբ իւրեանց 'ի մեծ զարմանս Հելլենաց. զի որք 'ի սկզբան պատերազմին յարշաւել Պելոպոնեսացւոց յերկիր նոցա, մի ամ կամ զերկուս կամ զերիս և ոչ աւելի տոկալ նոցա կարէին, սակայն եօթնևտասան ամք եղեն յառաջնոյ անտի արշաւանէն, և Աթենացիք սպառեալք ամենևին յերեսաց պատերազմացս՝ զէնս և 'ի Սիկիլիա ածին, և յոչինչ թեթև քան որ 'ի Պելոպոնէս՝ ձեռն արկին 'ի մարտ պատերազմի: Եւ յայնժամ միայն 'ի բազմապատիկ վնասուց Դեկեղիայ և յայլոց ծանր ծանր ծախուց ընչաթափ լեալ չքաւորեցան յոյժ. և փոխանակ հարկաց՝ զորս 'ի հպատակաց իւրեանց հանէին, օրինադրեցին նոցա քսանորդել զամենայն վաճառ որ ընդ ծով գայր, որով համարէին լնուլ զպակասութիւն մուտից գանձուն: Ելք ծախուցն ոչ միապէս էր՝ զոր օրինակ երբեմն, այլ կարի յոյժ բազմօք առաւելեալ, զի 'ի յընդարձակել և յերկարել պատերազմին՝ նուազէին մուտք:

ԻԹ. Վասն որոյ առ չքաւորութեան արծաթոյ և առ խնայելոյ ծախուց, զԹրակացիս զանազանեալ 'ի զինուորութիւն արշաւանին Դեմոսթենեայ՝ յետս արձակեցին

Աթենացիք փութով, տուեալ նոցա առաջնորդ զԴիոտրե-
փէս պատուիրանաւ, զի ընդ Եւրիպոս գնային՝ զամենայն
հնարաւոր չարիս անցուցանել Թշնամեաց զճանապարհայն։
Դիոտրեփէս իջոյց զնոսա 'ի Տանագրա, և առ չատալ գնա-
լոյն ոչ ինչ աւար մեծ արար անդ. և 'ի Քաղկիսեայ Եւբիոյ
գիշերաւ անցեալ ընդ Եւրիպոս, և ելեալ 'ի Բիովտիա ած
զխուժան 'ի Միւկալեսոս։ Եւ գաղտաբար գիշերօթեալ մօտ
'ի մեհեան Հերմեայ՝ որ վեշտասան ասպարիսաւ հեռի էր
'ի Միւկալեսոսէ, ընդ այգն այգուն անկաւ 'ի վերայ մեծի
քաղաքին, անպահանորդ և անկասկած յերեւաց ծովուն
և ըմբռնեալ յանկարծօրէն զմարդիկն. զի և պարիսպք քա-
ղաքին տկարք էին և ուրեք ուրեք խարխուլ և խոնարհք,
և դրունք առ մեծի աներկեւանութեան անփակք։ Խուժեալ
Թրակացւոց 'ի ներքս 'ի Միւկալեսոս յաւար բնակու-
թեանց և մեհենից, կոտորեցին և զմարդիկն անխնայ՝ ոչ
ծերոյն և ոչ մանկանց ողորմելով. զամենայն զոր միանգա-
մայն և գտին զկանայս և զողայս, զգրաստս անգամ և զա-
մենայն շնչաւոր սրակոխ արարին։ Քանզի ազգն Թրակա-
ցւոց և համայն իսկ խժից ցեղ, յորժամ յաներկիւղս խի-
զախեն՝ սպանողագոյնք լինին։ Մեծ էր խռով աղմկին և
բազմադիմի կերպարան կոտորածոյն, անկեալ բարբարո-
սացն 'ի վերայ վարժոցի ուրեք մանկանց՝ որ մեծ էր յոյժ,
և մանկունքն այն ինչ ընդ դրունսն 'ի ներքս մտանէին՝ սուր
'ի վերայ եդեալ զամենեսեան կոտորեցին։ Աղէտք աննման
ամենեւին մեծ և անհնարին յեղակարծուց 'ի վերայ համօ-
րէն հասանէր քաղաքին։

Լ. Զայս զգացեալ Թեբայեցւոց փութացան յօգնակա-
նութիւն քաղաքին, և հասեալ 'ի վերայ Թրակացւոց՝ ոչինչ
հեռի 'ի տեղւոջէն, Թափեցին 'ի նոցանէ զաւարն, և հա-
լածական տարան զնոսա մինչև յԵւրիպոս և 'ի ծովն, ուր
մնային նոցա նաւք՝ յորս եկեալ էին. և 'ի մուտս անդ նո-
ցին 'ի նաւս՝ զբազումս 'ի նոցանէ պակաս արարին զան-
վարժսն 'ի լող. իսկ որ վաղագոյն իսկ 'ի նաւսն էին՝ իբրև

տեսին զեղեալսն 'ի ցամաքի, վարեալ իբրև նետընկէց մի 'ի ցամաքէն 'ի խորս դադարեցան: Այլ 'ի նահանջել անդ իւրեանց ըստ բնիկ սովորութեան աշխարհին իւրեանց, 'ի խումբս խումբս ջոկեալ Թրակացիք ընդդէմ յարձական այրուձիոյն Թեբացւոց զգուշանային անձանց, որով սակաւք յոյժ սպանան. այլ որ միանգամ՝ յաւար քաղաքին ըմբռնեցան, առ հասարակ ամենեքեան սատակեցան. որոց և 'ի հազար երից հարիւրոց՝ երկերիւր յիսունքն կորեան: Անկան և 'ի Թեբացւոց և 'ի մարտակից օգնական զօրուէն քսան այր, ընդ որս և Սկիրփոնդաս Բիովտապետ. իսկ Միւկալեսոսի մեծ մասն ժողովրդեան կորեաւ: Այս եղեն ահա աղէտք թշուառութեան Միւկալեսոսի, մեծութեամբն ոչինչ նուազ քան զոր 'ի պատերազմունս յայսոսիկ եղեն արժանի ողբոց դէպք:

ԼԱ. Իսկ Դեմոսթենէս յետ շինութեան ամրոցին 'ի Լակոնիա մինչդեռ խաղայր 'ի Կորկիւրա, կալաւ նաւ մի վաճառական 'ի Փիա Եղէացւոց 'ի խարսխի, յորում նաւէին սպայք Կորնթացիք 'ի Սիկիլիա. խորտակեաց նա զնաւն, սակայն փախուցեալ արանցն յայլ նաւ անցին 'ի Սիկիլիա: Եհաս Դեմոսթենէս 'ի Զակիւնթոս և 'ի Կեփաղենիա, էառ և 'ի նոցանէ զօրս. ետ ածել և 'ի Նաւպակտեայ գունդ մի Մեսսինիացւոց. անց 'ի հանդիպակողմն կղզւոյն՝ յԱլեսիա և յԱնակտորիոն յերկիրն Ակառնանիոյ, որ ընդ իշխանութեամբ Աթենացւոց էին: Դէպ եղև նմա տեսանել անդ զԵւրիմեդոն, որ դառնայր 'ի Սիկիլիոյ, այն որ առաքեցաւ 'ի ձմերանիս տանել զօրուն արծաթ, որ և ընդ այլ զրուցս՝ գոյժ տայր նմա և առման Պղեմմիւրիոնի 'ի Սիրակուսացւոց, զոր զճանապարհայն, աւէր, լուեալ: Եկն առ նոսա և Կոնոն՝ որ զօրավարէր 'ի Նաւպակտոն, բերելով և նա լուր՝ եթէ քառասուն և հինգ նաւք Կորնթացւոց, որ լրտեսութեամբ երթևեկեն ընդդէմ նաւախմբի նոցա, ոչ դադարելով 'ի թշնամութենէ՝ և 'ի նաւամարտ իսկ պատրաստին. և խնդրէր առաքել նմա նաւս, զի ուժ-

ուտասանքն Աթենացւոց չէին բաւական ընդդէմ. քան և հնգից 'ի կախւ: Յայնժամ Դեմոսթէն և Եւրիմեդոն առաքեցին ընդ Կոնոնի՝ յորոց ունէին յընտիր ընտիր նաւաց անտի՝ նաւս տասն 'ի Նաւպակտոն, և ինքեանք զհետ եղեն զօրաժողովոյ 'ի թիկունս և 'ի հաստատութիւն բանակին Սիկիլիոյ: Եւրիմեդոն նաւելով 'ի Կորկիւրա հրաման ետ բնակչաց կազմել նաւս հնգետասան, արար և զօրս, զի իշխանակից և հրամատար էր ընդ Դեմոսթենեայ՝ ընդ որում և ընտրեցաւն: Ժողովեաց և Դեմոսթենէս շուրջ զԱկառնանեաւ զօրս պարսաւորս և նետաձիգս:

ԼԲ. Իսկ ուր յետ առման Պլեմմիւրիոնի դեսպանք Սիրակուսացւոց ընդ քաղաքս Սիկիլիոյ 'ի յորդորել գնացին 'ի մարտակցութիւն, իբրև գումարեալ 'ի նոցանէ զօրս դարձ առնել կամէին, լուեալ զայն Նիկիաս յղեաց առ դաշնաւոր Սիկելացիս՝ առ Կենտորիպս, առ Ալիկիեցիս և առ այլս՝ ընդ որս անցանել էր զօրուն, մի թողուլ թշնամեաց կոխել զերկիր և արգելուլ նոցա զճանապարհն զինուք. քանզի և 'ի չտալ Ակրագանդացւոց զանցս ընդ երկիր իւրեանց՝ չմնայր նոցա այլ ուղի: Մինչդեռ 'ի չու էին սոքա Սիկիլիացիքս, ըստ թախանձանաց Աթենացւոց՝ դարանակալ եղեն նոցա Սիկելացիք յերիս յայլեայլ տեղիս, և յայլակարծուց 'ի վերայ անկեալ անզգոյշ զօրուն, կոտորեցին 'ի նոցանէ զարս ութհարիւր. սպանին և զդեսպանս, բայց 'ի միոյն՝ որ Կորնթացի էր, որ և ժողովեալ զկաց մնաց զօրականին, որպէս եթէ արս հազար հինգհարիւր, և ած զնոսա 'ի Սիրակուսա:

ԼԳ. Ընդ այն աւուրս հասին և Կամարինեցիք յօգնութիւն Սիրակուսացւոց՝ հինգհարիւր ասպարակիր զօրական, երեքհարիւր տիգաւոր, նոյնչափ և աղեղնաւոր: Յղեցին և բնակիչք Գելայ գումարտակ մի փոքր հնգից նաւուց, տիգաւորս չորեքհարիւր և երկերիւր այրուձի: Եւ գրեա թէ բովանդակ Սիկիլիա յայնժամ, բաց յԱկրագանդացւոց՝ որ հանդարտեալ և ոչ 'ի մի կողմն միտել կամէին, այլք

ամենեքեան. և ոչ գայթ 'ի գայթի կային 'ի սկզբան, ընդ Սիրակուսացիս զինուորեցան ընդդէմ Աթենացւոց: Բայց Սիրակուսացիք վասն հարուածոյն, զոր 'ի Սիկելացւոց ընկալան, ժամանակէին զօր պատերազմին ընդ Աթենացիս:

Իսկ Դեմոսթենէս և Եւրիմեդոն՝ յետ զօրաժողովոյն 'ի Կորկիւրա և 'ի ցամաք երկրին, խաղացին համագունդ ընդ ծով Յոնիական 'ի սարաւանդն Յապիւգեայ. և առեալ 'ի Յապիւգեանց անտի՝ որ յազգէ էին Մեսսապեանց, իբրու հարիւր յիսուն տիգաւորս, և ընդ իշխանի երկրին ընդ Արտայ՝ որոյ տուեալ էր զջոկատ զօրուն, նորոգեալ զվաղեմի դաշն բարեկամութեան՝ հասին 'ի Մետապոնտ Իտալիոյ: Եւ հաւանեցուցեալ զՄետապոնտեցիս՝ ըստ դաշանց ուխտի նիզակակցութեան՝ տալ նոցա տիգաւորս երեքհարիւր և նաւս երկու պատերազմիկս, առեալ զայնոսիկ անցին յայնկոյս 'ի Թուրիա. յորում լուան վասն առտնին խռովութեան յայս վերջին աւուրս աքսորեալ զհակառակորդս Աթենացւոց: Եւ զի կամէին ժողովեալ անդ հանդէս առնել զօրուն, գիտել որչափ ինչ տակաւին յետամնաց իցէ, և յորդորել զԹուրիացիս յօժարագոյնս զինուորել ընդ նոսա 'ի նոյն հաւասար բաղդ պատերազմի, վասն որոյ զտեղի առին անդանօր առ 'ի գլուխ տանելոյ զայս ամենայն:

ԼԴ. Առ սովիմք Պելոպոնեսացիք որ 'ի քսան և 'ի հինգ նաւս իբրու պահակ զգուշութեան յերեսաց նաւացն Աթենացւոց 'ի Նաւպակտոն երթևեկէին 'ի ծովու, առ դիւր առնելոյ վաճառական նաւաց իւրեանց անարգել անցանել 'ի Սիկիլիա, զինելով այլ ևս նաւս, մինչև հաւասարել դրեթէ Ատտիկեցւոցն՝ պատրաստէին 'ի նաւամարտ. և խարսխեալ նաւէին յերկրին Հռիպիկէ առ Երինէոս քաղաքաւ Աքայիոյ: Մահկաձև գոլով նիստ նեղցին՝ յորում դադարէին նաւք, հետևակախումբ զօրն Կորնթացւոց և այլոց դաշնաւորաց կարգեալ կային 'ի ռազմ 'ի վերայ սարաւանդից աստի և անտի ամբարձելոց 'ի վերայ նեղցին. և զօրա-

վարէր գաւմարտակի նաւաց որ դրաւեալ ունէր զմիջոց նեղցին՝ Պոլիանթէս Կորնթացի: Իսկ Աթենացիք երեսուն և երիւք նաւուք ելեալ 'ի Նաւպակտեայ ընդ առաջնորդութեամբ Դիփիլեայ խաղացին 'ի վերայ սոցա: Ի սկզբան անխաղացք Կորնթացիք, 'ի տալ նշանին ապա 'ի դէպ ժամուն դիմեցին 'ի վերայ Աթենացւոց, և սկիզբն եղև ծովամարտին: Երկարէր անդանօր պատերազմն յամառ. երէք 'ի նաւացն Կորնթացւոց խորտակեալ կորեան, և ոչ մի յԱթենացւոցն խորտասուզաւ. եօթանք միայն անպիտան եղեն 'ի նաւարկութիւն, որ բախեալք յառաջոյ 'ի նաւաց Կորընթացւոց՝ 'ի սոյն վախճան սուսեր դերանօք զինելոց, ձեղքեալ խորտակեցան: Յերկբայս ընդ եւս մարտին, կողմն իւրաքանչիւր յաղթող կարծէր լինել. բայց խորտակելոց նաւաց բեկորք 'ի ձեռս Աթենացւոց անկան, առ հողմոյն 'ի խորս զայնոսիկ մղելոյ. և զի ոչ դարձան Կորնթացիք 'ի կռիւ, և այսպէս բաժանեցան յիրերաց ախոյեանք, ոչ հետամուտ և ոչ ձերբակալ գերութիւն աստի և անտի երևելով. զի Կորնթացիք և Պելոպոնեսացիք առ ցամաքաւն կռուելով՝ դիւրեաւ զերծան, և Աթենացւոց և ոչ նաւ մի ընկլուզաւ: Այլ իբրև մեկնեցան սոքա 'ի Նաւպակտոն, նշան յաղթութեան ամբարձին Կորնթացիք վաղվաղակի որպէս յաղթողք, զի պյոլովս 'ի նաւաց թշնամեաց հարեալ անպիտան արարին, և զի ոչինչ նուաղեալ քան զհակառակորդսն՝ անպարտելի կացին: Կորնթացիք 'ի յաղթութիւն համարեցան, յորում ոչ 'ի սպառ խորտակեցան. իսկ Աթենացիք 'ի տկարութեան սակս, զի ոչ գլխովին յաղթողք եղին: Յետ մեկնելոյ նաւացն Պելոպոնեսացւոց և ցրուելոյ երկրախուռմբ զօրուն, կանգնեցին և Աթենացիք նշան յաղթութեան յԱքայիա, քան ասպարիսաւ հեռի յԵրինեայ՝ յորում խարիսխ արկեալ նստէին Կորնթացիք: Այսպէս ահա եղև վախճան ծովամարտին:

ԼԵ. Իբրև պատրաստէին Թուրիացիք եօթնհարիւր ասպարակիր զօրականս և տիգաւորս երեքհարիւր 'ի զինուո-

րութիւն Աթենացւոց, հրաման ետուն Դեմոսթենի և Եւրիմեդոն նաւախմբին խաղալ՝ զափամբ գնալով ընդ երկայնութիւն երկրին Կրոտոնիացւոց. և ինքեանք մինչդեռ հանդէս արարեալ հետևակազօրուն առ Սիբարիս գետով անցին զնոսա ընդ երկիրն Թուրիացւոց: Իբրև հասին առ քա յԻլիաս գետ, առաքեալ Կրոտոնիացւոց ընդ առաջ նոցա՝ արգելուին զնոսա չանցանել ընդ երկիր իւրեանց, վասն որոյ իջեալ նոցա 'ի ծովեզրն կոյս 'ի բերան Իլեայ գետոյն՝ ագան անդ, հանդիպեալ անդանօր և գումարտակի նաւաց: Եւ 'ի վաղիւն ամբարձեալ 'ի նաւս, զափամբ գնալով եկանէին 'ի քաղաքս՝ բայց 'ի Լոկրացւոցն, և եկին մինչև 'ի Պետրա Հռեգիոնի:

ԿԶ. Ընդ լուր գալստեան սոցա՝ Սիրակուսացիք վերստին դարձեալ 'ի նաւամարտ խորհէին, և համօրէն հետևակախումբ բանակաւ՝ զոր յառաջ քան զժամանել Թշնամւոյն ժողովեալ էր նոցա, զառաջս առնուլ նորոյ արշաւանիս: Եւ զի տեսին յառաջնում ծովամարտին չատ իսկ յաջողեալ, պատրաստեցան 'ի նորս այս. կարճեալ զառաջս նաւացն ամրագոյնս գործեցին զայնոսիկ, կցելով 'ի նոսա 'ի ներքուստ գերանս ստուարս, և 'ի նոցունց անտի գերանացն սկսեալ ագուցին 'ի ներքոյ և արտաքոյ փայտեայ մոյթըս 'ի վեց կանգնոյ ընդ երկայնութիւն կողիցն, զոր օրինակ և Կորնթացւոց արարեալ էր 'ի ծովամարտին Նաւպակտեայ: Եւ սովաւ մեծապէս յաջողել կարծէին Սիրակուսացիք ընդդէմ նաւացն Աթենացւոց՝ ոչ ըստ օրինակիս կառուցելոց, այլ նօսրունս 'ի ցռուկսն, որք և ոչ յառաջոյ՝ այլ շրջանաւ 'ի կողից բախէին. դարձեալ յանձուկ վայրի 'ի մեծի նաւահանգստին ընդ բազմութեան նաւաց զնաւամարտն խմբելով՝ շահել ոչ սակաւ: Քանզի ընդ առաջս նաւաց Թշնամւոյն բախելով, և յարամուր ստուար առաջով նաւաց իւրեանց՝ ընդ դատարկ և ընդ տկար կողս նոցայոցն պատառուածս անհնարինս գործէին: Ուր չէր հնար Աթենացւոց յանձկի անդ շրջան տալ նաւաց իւրեանց, կամ

չեշտակի ընդ կարգս թշնամեաց ճեղքեալ անցանել, յորում արուեստի ճարտարք էին նոքա յոյժ և վարժք: Քանզի և ինքեանք Սիրակուսացիք զամենայն գուն գործէին չթողուլ թշնամւոյն ընդ ուղիղ նաւաց իւրեանց թափ անցանել, յորում և անձկութիւն տեղւոյն բաւական էր 'ի խափանել զաղատ շրջանս. զի որ ցայնժամ անհմտութեան ղեկավարաց դրէր զառաջս ընդ առաջս նաւաց բախել, արդ 'ի հնարս ճարտարութեան մանաւանդ այնու վարեցան, որով և միայն զօրացան Սիրակուսացիք: Եւ վանեալ միանգամ Աթենացւոց չէր նոցա տեղի նահանջելոյ, բայց եթէ 'ի ցամաք երկիր, 'ի փոքու խորոցի, առաջի անձուկ բանակետեղ. և 'ի զօրանալ Սիրակուսացւոց 'ի նաւահանգստին՝ հարկ էր Աթենացւոց ընկճեալ յանձկի անդ առ միմեանս խռնել և յաղմուկս չփոթին տագնապել: Եւ այս եղև ահա որ յամենայն ծովամարտս մեծապէս վնասեաց նոցա, զի չէր տեղի ընկրկելոյ յետս ընդ բովանդակ ընդարձակութիւն նաւահանգստին՝ որպէս և Սիրակուսացւոցն. զի յեղանել սոցա յընդարձակի և անդրէն դարձ առնել, չէր հնար Աթենացւոց շրջան 'ի ծովուն գործել՝ հակառակ ինքեանց և վերամարտին զՊլեմմիւրիոն ունելով, և անձուկ յոյժ զբերան նաւահանգստին:

ԼԵ. Զայս այսպէս ըստ ճարտարութեան իւրեանց և ըստ զօրութեան հնարեալ Սիրակուսացիք, և միանգամայն վերջնով նաւամարտիւ խրախուսեալ՝ ձեռն արկին ընդ ծով և ընդ ցամաք 'ի պատերազմ: Բայց Գիլիպպոս փոքր մի յառաջագոյն ած զհետևակախումբ զօրն 'ի քաղաքէն, և մօտ մատեաւ 'ի պատնէշս կոյս Աթենացւոց՝ որ հանդէպ քաղաքին. մինչդեռ որ յՈլիմպեայ ասպարազէն գունդ էր, այրուձի և մեկնազէն գայր մերձենայր 'ի կողմանէ ծովուն 'ի պատնէշսն. յետ այնորիկ և խումբ նաւացն Սիրակուսացւոց և դաշնաւորաց ելին վաղվաղակի 'ի ծով: Ի սկզբան կարծէին Աթենացիք եթէ հետևակախումբ զօրօք միայն 'ի կռիւ գայր թշնամին. այլ իբրև տեսին յանկարծակի խա-

ղալ և նաւատորմղին՝ խռովեցան յոյժ. կէսք 'ի վերայ պատուարացն, այլք յառաջոյ նոցուն ճակատեցան ընդդէմ յարձակողացն. էին՝ որք ձեպէին փութային ընդառաջել որոց յՈլիմպեայ և յայլ և այլ կողմանց հեծելազն և օգնաւորաց ամբոխ խուժէին արտաքոյ. էին դարձեալ՝ որք զնաւսըն հանդերձելով և 'ի ծովեզրն դիմէին. մինչև լցան նաւք եօթանասուն և հինգ, խլրտեցան ապա 'ի կռիւ ընդդէմ ութսնից նաւաց Սիրակուսացւոց:

ԼԸ. Զմեծ ժամս աւուրն 'ի յառաջախաղաց և 'ի յետախաղաց փորձս և 'ի նախաշաւիղ մրցութիւնս անցուցին, ոչինչ արժանաւոր աստի և անտի գործելով. բայց Սիրակուսացիքն նաւ մի կամ երկու ընկլուզեալ յԱթենացւոց՝ մեկնեցան. մեկնեցաւ և հետևակազօրն 'ի պատուարաց: Ի վաղիւ անդր հանդարտեալ Սիրակուսացիք չտային թշնամեացն գուշակել զոր առնելն խորհէին: Տեսեալ Նիկիայ զելս նաւական պատերազմին յերկբայս և մնալով առաջիկայ նորոյ ծովամարտի, հրաման ետ կարգապետացն նորոգել զխախտեալս 'ի նաւաց, և զկարասեկիր բեռնաբարձ նաւս կցուցանել 'ի ծով ընդդէմ ցցապատնիշին գործելոյ 'ի նոցանէ, 'ի պահ զգուշութեան նաւաց իբրու յամրափակ նաւարանի: Եւ տուեալ կարգեաց զկարասեկիրսն հեռի յիրերաց՝ որպէս կրկին լծվար անջրպետաւ, զի 'ի հալածական վարել նաւու, գտցէ անդր առ նոսա իւր ապաւէն անքոյթ, և պարապ կրկին դառնալոյ անդրէն 'ի մարտ: Աթենացիք զօրն ցերեկ յայսմ պատրաստութեան էին:

ԼԹ. Յաւուրն երկրորդի վաղագոյն քան յառաջնումն հարան Սիրակուսացիք ընդ Աթենացիս նոյնօրինակ յարձակմամբ ընդ ծով և ընդ ցամաք: Ճակատեցան նաւաց խումբ աստի և անտի 'ի կռիւ. և որպէս յառաջնումն նուագին զմեծ ժամս աւուրն 'ի փորձ և 'ի նախաշաւիղ մրցութիւնս անցուցին, մինչև Արիստոն Պիւռիխեան կորնթացի ղեկավար հմուտ 'ի Սիրակուսացիս հաւանեցոյց զհրամանատարըս նաւաց՝ պատուիրանաւ խնամակալ իշխանաց քաղաքի

տալ փոխադրել վաղվաղակի զհրապարակս վաճառուց մերձ
'ի ծովեզրն, և որոց էին նպարք կերակրոց բարձեալ տանել
անդր 'ի վաճառ. որպէս զի առ նոսա եկեալ նաւաստեացն,
մօտ առ իւրաքանչիւր նաւսն անյապաղ առնուցուն կերա-
կուր, և անդէն 'ի նմին իսկ աւուր յանակնկալս յեղակար-
ծուց յարձակեալ խառնել 'ի մարտ ընդ Աթենացիս:

Խ. Որոց հաւանեալ յղեցին զօք պատգամաւոր զրու-
ցատար 'ի քաղաքն, և պատրաստեցաւ հրապարակ վաճա-
ռուց: Սիրակուսացիք յանկարծուստ 'ի խելաց կուսէ
զնաւսն ընկրկելով 'ի կողմն քաղաքին, և եկեալ ընդ փոյթ
'ի ցամաք՝ առին կերակուր: Համարելով Աթենացւոց եթէ
առ չխրախուսելոյ թշնամին 'ի կռիւ՝ նահանջի յետս, հան-
դարտօրէն ելին և ինքեանք 'ի նաւաց. և ընդ այլ պարապ-
մունս պատրաստէին և զկերակուր ճաշոյն, իբրու ոչ ևս
այլ ակն ունելով պատերազմի 'ի նմին աւուր: Բայց յան-
կարծ ուրեմն ամբարձեալ Սիրակուսացւոց 'ի նաւս՝ խա-
ղացին 'ի վերայ նոցա վերստին: Աթենացիք 'ի շտապ մեծի
տագնապին՝ բազումք նօթի իսկ խառն 'ի խուռն ելին 'ի
նաւս և հազիւ ուրեմն կարգեալ ճակատեցան: Առ ժամ
մի հանդարտեալ աստի և անտի միմեանց մնային, մինչև Ա-
թենացւոց ոչ 'ի դէպ համարեալ յամել վայրապար և խոնջ
ըմբռնել, 'ի տալ նշանին խրախոյս իրերաց կարդալով՝ սկիզ-
բըն արարին նաւամարտին: Սիրակուսացիք քաջապինդ
ընդառաջեալ նոցուն արիաբար վանէին զնոսա. և ըստ
դիւտին հնարելոյ վարելով զառաջս նաւացն ընդդէմ թըշ-
նամեացն, պատրաստութեամբ կազմածոց ցռկանցն զբա-
զումս 'ի նաւաց անտի Աթենացւոց հարեալ ճեղքէին.
մինչդեռ զօրականն 'ի կամրջաց նաւաց նետս ցնդելով և
դեղարդն արձակելով՝ բազմապատիկ հարուածս 'ի նոսա
գործէին. էին և որք 'ի թեթև նաւկնեար յածեալ սա-
հեալ, և յարամուխ 'ի ներքս 'ի կարգս թիոց նաւաց Աթենա-
ցւոց սպրդեալ, առ կողիւք նոցին սուրալով՝ նետաձիգ 'ի
նաւաստին լինէին:

ԽԱ. Եւ այս օրինակ ահա քաջապէս մարտուցեալ Սիրակուսացիք յաղթողք գտան. պարտեցան վանեցան Աթենացիք՝ և ընդ խարոցս կարասեկիր նաւաց 'ի փախուստ խուճապեալ՝ անկան անտի 'ի նաւակայս իւրեանց: Սիրակուսացիք մինչև ցկարասեկիր նաւսն հալածական տարեալ զնոսա, և անդ 'ի խարսխաց նոցուն 'ի գլխնաձև ձողոց ամբարձելոց խափանեալ արգելան: Ի նաւաց աստի Սիրակուսացւոց խրոխտացեալ յաղթութեամբքս նաւք երկու՝ հուպ առ նոսա մատեան, և ջախեալ խորտակեցան, միոյն և նաւաստիք գերի վարեցան: Խորասուզեալ Սիրակուսացիք նաւս եօթն յԱթենացւոց և զյոլովս ծակոտեալ, և զմարդիկն՝ էր զոր 'ի գերութիւն վարեալ, և էր զոր կոտորեալ՝ մեկնեցան: Եւ վասն կրկին այսոցիկ նաւամարտից նշան յաղթութեան կանգնեալ, յոյս հաստատուն կալան այնուհետև, զի և 'ի ծովամարտի գերազանցեալ այսչափ՝ հարցեն աներկբայ և զհետևակախումբ զօրն. վասն որոյ և պատրաստէին ընդ հուպ 'ի կռիւ նոր ընդ ծով և ընդ ցամաք:

ԽԲ. Մինչ այս մինչ այն՝ հասին Դեմոսթէն և Եւրիմեդոն օգնական զօրօքն Աթենացւոց, եօթանասուն և երեք նաւք օտարաւորքն հանդերձ. հինգ հազար վահանաւորք 'ի նոցանէ և 'ի դաշնաւորաց, և տիգաւորս և գեղարդնաձիգս 'ի բարբարոսաց և 'ի Հելլենաց ոչ սակաւ, և պարսաւորս և աղեղնաւորս, և այլ պատրաստութիւն բազում: Մեծ եղև ահ երկիւղի Սիրակուսացւոց և դաշնաւորաց նոցա 'ի ժամուն, որպէս եթէ չէր նոցա կէտ և վախճան զերծանելոյ 'ի վտանգէն. զի և Դեկելիայ ամրոցաւն պարսպելով ոչ պակաս առաջնոյն հաւասար բանակ զօրու գայր 'ի վերայ նոցա, և թէ ամենայն ուրեք երևելի լինէր զօրութիւն Աթենացւոց: Եւ նոյնն Աթենացւոց զօրուն ձախողութեամբքն վհատելոց՝ ոչ սակաւ ոգի և խրախոյս յաւելոյր: Իսկ Դեմոսթենեայ նկատեալ զպայման իրացն, խորհեցաւ մի զՆիկիայ ախտն ախտանալով վայրապար ժամա-

վաճառ լինել, որ ահաւոր 'ի գալստեան իւրում զառաջինն, փոխանակ զի պարտ էր խաղալ 'ի վերայ Սիրակուսայ՝ ձմերելով 'ի Կատանիա արհամարհ գտաւ. Ժամ ետ և Գիլիպպեայ գալ զօրօք 'ի Պելոպոնեսեայ, զոր ոչ արդեօք կոչէին Սիրակուսացիք՝ եթէ Նիկիաս զգալն և զյարձակելն 'ի վերայ նոցա մի առնէր. որոց 'ի կարծելն զինքեանս բաւականս 'ի դիմամարտ, փակեալ միանգամայն պատնէշ պաշարմամբ՝ ուսանէին անագան զիւրեանց տկարութիւն. և խնդրելով իսկ արտաքուստ զօգնականութիւն՝ ոչ նոյնպէս ինչ օգտէին: Զայսոսիկ ընդ միտ ածեալ Դեմոսթենէս, և դիտելով զահընկէց իւր երևումն յառաջին անդ աւուրս, փութաց յօգուտ վարել զպակուցիչ ահարկութիւն իւրոյ զօրուն: Եւ տեսեալ զի կողմնակի պատուար որմոյն Սիրակուսացւոց՝ որով խափանէր լրումն պաշարման քաղաքին, վարկպարազի ինչ էր, և տիրելով միանգամ զառ 'ի վայրին Եպիպօլեայ և բանակետեղ՝ զոր կալեալ էր երբեմն իւրոյն, դիւրին էր անընդդիմամարտ առումն կողմնակի որմոյն, ձեռն 'ի գործ եղև անդէն 'ի փորձ իրին: Եւ համարէր կարճել այսու զպատերազմն. զի 'ի յաջողելն՝ առնոյր և զՍիրակուսա և կամ եթէ 'ի բաց ածէր զզօրն, և ոչ վատնէր վայրապար զայս զինուորութիւն, և զբովանդակ իսկ զպետութիւն քաղաքին: Ելին նախ և յապականութիւն եղին զանդաստանս Սիրակուսայ շուրջ զԱնապոս գետով. և որպէս յառաջնումն՝ զօրացան Աթենացիք ընդ ծով և ընդ ցամաք, զի չխրոտէին ընդդէմ նոցա Սիրակուսացիք, բայց այրուձիոյն միայն և տիգաւորօք Ոլիմպեայ:

ԽԳ. Եդ 'ի մտի ապա Դեմոսթէն փորձ փորձել մեքենայիւք ընդդէմ կողմնակի որմոյն. այլ 'ի մերձենալ կազմածոցն 'ի վերամարտիկ պահանորդաց հրձիգ լեալ այրեցան, և յարձակումն զօրուն 'ի բազում ուրեք վանեցաւ. ոչ ևս այնուհետև վայրապար յապաղել կամելով Դեմոսթէն՝ հաւանեցոյց զՆիկիաս և զայլ իշխանակիցսն իւր

յառաջին խորհուրդ յառումն Եպիպօլեայ: Եւ զի 'ի տուըն-ջեան անհնարին համարէր գաղտաբար մերձենալ 'ի վերելս, պատուէր ետ զօրուն առնուլ ընդ իւրեանս պաշար հընգ-օրեայ, և որմնադիր և հիւսունս և զայլ ամենայն կարևոր 'ի շինուած պատուարաց, զոր 'ի վանել զթշնամին' ունէին կանգնել. և յառաջնում անդ պահու գիշերոյն յառաջէր նա և Եւրիմեդոն և Մենանդրոս և զօրն համօրէն 'ի կողմն կոյս Եպիպօլեայ, իսկ Նիկիաս 'ի պահպանութիւն պատնի-շացն կայր: Իբրև հասին սոքա, յԵւրիելոս' մօտ յԵպիպօլէ, ընդ որ ելեալ էր և առաջին բանակ զօրուն երբեմն, և զան-խուլ 'ի գիշերապահաց Սիրակուսացւոց հասեալ 'ի գլուխ տեղւոյն կալան զամրոցն, և զոմանս 'ի պահանորդաց կո-տորեցին. յորոց փախուցեալ բազումք անկան յերեսին բանակս 'ի վերայ Եպիպօլեայ ամրացեալս նախապատուա-րօք. յորոց մին' Սիրակուսացւոց էր, երկրորդն' Սիկիլիա-ցւոց և երրորդն' դաշնաւորաց. և ազդ արարին նոցա զյարձակումն թշնամեաց, ծանուցին և որոց յայս կողմն Եպիպօլեայ յառաջապահ գունդ էր վեցհարիւրոց Սիրա-կուսացւոց: Փութացան սոքա դիմել յօգնութիւն. այլ հանդիպեալ սոցա Դեմոսթէն և Աթենացիք, և վանեալ զբուռն յարձակումն նոցին, մեծարշաւ ինքեանք անդրա-դոյնս խաղային, զի մի՛ յեռանդուն թափոյն' յոր վառեալ գնային' թուլացեալ վերջասցին. քանզի արդէն իսկ հա-տուած մի 'ի նոցանէ տիրացեալ մասին առաջնոյ նախա-պատուար որմոյն լքելոյ 'ի պահակերաց, և զմահարձանս քանդէին: Ուր ուրեմն ապա Սիրակուսացիք, դաշնաւորք նոցա և Գիլիպպոս և որք ընդ նմա' դառյթ ետուն 'ի պա-տուարաց արտաքս, 'ի գիշերային յանակնկալ յանդուգն յարձակմանէն զարհուրեալք, անկան 'ի վերայ Աթենա-ցւոց, և հարեալք 'ի նոցանէ' տեղի ետուն զառաջինն: Բայց 'ի խիզախել Աթենացւոց իբրև արդէն իսկ աներկ-բայք 'ի յաղթութիւն, և չառ իսկ խառնիխուռն ձեպել անցանել կամէին ընդ անխոնջ կարգս զօրու թշնամւոյն'

որոց չև էր մտեալ 'ի կռիւ, զի մի 'ի թուլացուցանել իւր-եանց զյարձակումն՝ ժամ լիցի նոցա գումարեալ խմբել. և ահա նախ Բիովտացիք քաջապէս դիմակալեալ հարին զնո-սա, և վանեալ հալածական տարան:

ԽԴ. Անդ այնուհետև 'ի մեծ խռովս շփոթից անկան Աթենացիք և 'ի տագնապ տարակուսի, և չէրև ինձ ուս-անեք լսել և Ճշգրիտ 'ի վերայ կալ անցից ամենայնի. զի թէ-պէտ 'ի տուընջեան ակներև է ամենայն, սակայն և այնպէս չէ մարթ պատերազմողաց մանր գիտել զամենայն, բայց եթէ հազիւ իւրաքանչիւր որ զիւրեաւն տանի. զիարդ ապա 'ի գիշերամարտիս, որ 'ի խուռն ամբոխի բազմու-թեան զօրուն գործեցաւ 'ի միում յայսմ խաղմին՝ կարիցէ ոք Ճշմարտութեամբ 'ի վերայ հասանել: Թէպէտ պայծառ էր լուսին, տեսանելով այր զընկեր՝ որպէս 'ի դէպ էր 'ի լոյս լուսնոյ, զկերպարան մարմնոյ նշմարելով. սակայն խը-տիր առնել ընդ բարեկամ և ընդ թշնամի անկարանային; և առ անձկութեան վայրացն՝ յերկոցունց իսկ կողմանց բազ-մութիւն ասպարազէն զօրուն շրջանաւ 'ի նոյն տեղի դարձ առնէին: Աթենացւոց կէսք պարտեալք և հալածականք, և կէսք նախկին թափով աննկունք յառաջ խաղային. բա-զումք կանուխ իսկ ժամանեալք 'ի գլուխ բարձուն, այլք ընթանային՝ չգիտելով ուր ուղղել զգնացս. քանզի որոց յառաջադէմքն էին և յառաջախաղացք՝ պարտութեամբն 'ի յաղմուկս անդ շփոթի և 'ի գոչիւն աղաղակի անհնա-րին լինէր նոցա Ճանաչել զիրեարս: Անդ Սիրակուսացիք և դաշնաւորք նոցին յաղթականք՝ 'ի ձայն մեծի աղաղակի այր զընկեր իւր խրախուսէր, զի անհնար էր նոցա գիշերի այլով իւիք ծանօթս տալ անձանց, և սնդապէս զյարձա-կողսն վանէին: Իսկ Աթենացիք զզինուորակիցսն իւրեանց խնդրէին. և որում հանդիպէին 'ի փախստէէ անտի՝ թէ-պէտ և բարեկամի, 'ի համարի թշնամեաց կարծէին զնա, և 'ի սաէպ հարցանելոյ յիւրեանս զբան նշանի սահմա-նելոյ՝ առ անհնարութեան այլով օրինակաւ զմիմեանս Ճա-

նաչելոյ, և ևս զաղմուկ շփոթին յաճախէին. և ամենեցուն հասարակաց զնոյն հարցումն առնելով՝ յայտնի առնէին զայն թշնամեաց. մինչդեռ անդիմանային ինքեանք զնոյայս, որք յաղթականք և ոչ վայրավատինք և ցրուեալք՝ ոչ այնպէս անծանօթք իրերաց լինէին: Որպէս զի եթէ առաւելեալ իսկ 'ի բազմութիւն հանդիպէին Աթենացիք ոմանց 'ի թշնամեաց, գիտակ սոքա յառաջագոյն նշանին՝ դիւրեաւ 'ի նոցանէ խոյս տային. ուր 'ի հակառակէն 'ի չկարելն Աթենացւոց առնել պատասխանի, անդէն առտեղ խողխողեալ լինէին: Եւ որ մեծապէս վնասէր նոցա. Պէանականն էր երգ պատերազմի, որ յերկոցունց իսկ կողմանց միապէս հնչեցուցանելով՝ 'ի մեծ տագնապ տարակուսի զնոսա արկանէր. քանզի Արգիացիք, Կորկիւրացիք և որք 'ի ցեղէ էին Դորիացւոց 'ի զօրուն՝ յիւրաքանչիւր նուագ երգոցն, որպէս 'ի թշնամիս, զնոյն հաւասար և յԱթենացիս ահ արկանէին: Համառօտ ասել. 'ի խառն անդ ամբոխի զօրուն ազմկեալք միանգամայն, բարեկամք 'ի բարեկամաց և քաղաքացիք 'ի քաղաքացւոց ոչ միայն ահաբեկեալ խուճապէին, այլ բազում այն էր զի բազուկ առ բազուկ կռուելով, հազիւ ուրեմն 'ի միմեանց բաժանէին: Եւ հալածականք ընդ զառ 'ի վայր անձուկ էջն Եպիպոլեայ, յոլովք այնոքիկ էին՝ որ գահավէժ 'ի վախճան սատակէին, և որ մազապուր անտի 'ի դաշտավայրն իջանէին՝ 'ի նախկին զօրուէն հմուտք վայրացն, 'ի բանակն անկեալ ապրէին. իսկ 'ի վերջէ եկելոց մոլորեալ ոմանք յուղւոյն ընդ արտորայն թափառելով՝ 'ի ծագել աւուրն 'ի ձեռս հեծելազօրուն Սիրակուսացւոց անկեալ առտեղ կոտորէին:

ԽԵ. Եւ յաւուրն երկրորդի կրկին նշանս յաղթութեան ամբարձին Սիրակուսացիք, մին 'ի վերելս Եպիպոլեայ, և երկրորդն 'ի տեղւոջն՝ յորում նախ դիմակալ եղեն Բիովտացիք. իսկ Աթենացիք բարձին դաշամբ զմեռեալս իւրեանց: Բազում էր անկելոցն թիւ յԱթենացւոց և 'ի դաշնաւորաց, այլ քան զմեռեալս բազմագոյն էր կապուտ

զինուց, քանզի որ ընդ վախս անզէն և անվահան դաշա-
վէժ եղեն՝ ընդ կորուսելոցն ապրեցան և ոմանք:

ԽԶ. Յետ անակնկալ մեծի յաղթութեանն, վերստին 'ի նախկին յուրեանց խրախոյս ամբարձեալ՝ Սիրակուսացիք առաքեցին զՍիկանոս հնգետասան նաւուք յԱկրագանդ, որ յառանին խռովս էր, ջանալ հնարել յուրեանս զքաղաքն արկանել: Եւ և Գիլիպպոս շրջել դարձեալ 'ի Սիկիլիա ընդ ցամաք, ածելով անտի այլ ևս զօրս, զի յաջողութեամբն Եպիպօլեայ ակն ունէր նա յարձակել առնուլ և զպատուարս Աթենացւոց:

ԽԷ. Իսկ զօրավարքն Աթենայեցւոց խորհուրդ 'ի մէջ առին վասն չարաչար պարտութեանն և վասն խապառ լքելոյ զօրուն, զի տեսանէին յամենայն իսկ 'ի հնարս 'ի դերև ելեալ, և զօրականն ընդ վայր դեգերանաց տաղտկացեալ: Զի և հիւանդութեամբ նեղէին յեղանակի տարւոյն՝ յորում առաւել խօթացեալ տկարանան մարդիկ. և թէ 'ի ճխասակար մօրուտս անդ բանակէին, և այլուստ դարձեալ ամենայնն անյոյս թուէր նոցա: Վասն որոյ Դեմոսթենեայ կարծիք էին մի ևս այլ յամել, այլ ըստ առաջնոյ խորհրդոյն՝ յետ գիմագրաւ յանդուգն փորձոյն Եպիպօլեայ վրիպելոյն փութալ 'ի չու, մինչդեռ բաց էր նոցա ճանապարհ ծովուն, և մարթ էր զօրանալ նորոգ հասելովն նաւատորմղաւ: Եւ յաւելոյր ասել, եթէ օգտակարագոյն ևս է քաղաքիս ամփոփել զզէնս իւր 'ի վերայ թշնամեաց. ոյք 'ի բնիկ երկրին իւրեանց ամրոցս կանգնէին քան ընդ Սիրակուսացիս, զորս չէ դիւրին այսուհետև նուաճել. դարձեալ զի չէ 'ի դէպ զայնչափ արծաթ առեալ վատնել յերկարաձիգ պաշարումնս: Այս էին առհասարակ խորհուրդք կարծեաց Դեմոսթենեայ:

ԽԸ. Տեսանել տեսանէր և Նիկիաս զչարաչար պայմանս իրաց, այլ ոչ կամէր հրապարակագոյժ առնել զայդ տկարութիւն. և ոչ յայտնապէս 'ի լսել ամբոխին զնահանջ արշաւանին սահմանել, որով և դժուարանալ ապա 'ի կատա-

րումն գործոյն: Դարձեալ և իբր Թշնամեաց՝ որոց քան զայլս զամենեսին տեղեկագոյն զինքն առէր, յորս առաջն առնէին նմա 'ի տեսել միայն նոցա 'ի պաշարման՝ վատթարագոյն քան զիւրեանցն լինել. զի 'ի չքաւորութեան արծաթոյ սպառէին նոքա, մանաւանդ յորմէհետէ բազմութեամբ նաւաց զօրանալ և 'ի ծովու Թեւակոխէին: Էին էին արդարև 'ի Սիրակուսացիս որք զվարչութիւն քաղաքին յԱթենացիս անցուցանել խորհէին, և 'ի ձեռն նուիրակաց պատգամաւորելով առ նա ինքն Նիկիաս, կալ միայն աղաչէին և չլինել ձեռնթափ 'ի պաշարմանէն: Այսոցիկ ամենայնի գիտակ նա՝ վարանեալ տարուբերէր 'ի խորհուրդս իւր. բայց յայտնապէս խօսելով չշարժել, ասէր, ըզզօրն՝ գիտելով քաջ չներել նոցա զայդ Աթենացւոց, առանց յայտնի վճռոյ հրամանի ժողովրդեան թողուլ մեկնել անտի. զի որք զգործոց մերոց և զանձանց ունին վճռել, ասէր, ոչ իբրև զմեզ յականատեսից և 'ի գիտողաց լսեալ, այլ 'ի ճարտարախօսից անտի զրպարտչաց սագրեալ սահմանիցեն: Իցեն և 'ի զօրականէն բազումք՝ որք 'ի վիշտս վտանգին արդ ձծագոչ աղաղակեն, այլ հասեալ միանգամ 'ի քաղաքն՝ հակառակ ամենևին բարբառ արձակեսցեն, որպէս եթէ կաշառուով արծաթոյ մատնու զօրավարք՝ վայրապար մեկնեալ 'ի գործոյն: Գիտելով՝ ասէր, զբարս Աթենացւոց՝ չկամիմ ամօթապարտ ամբաստանութեամբ կորնչել տարապարտուց. զի եթէ այնպիսի ինչ մահ կրել պարտ իցէ, 'ի Թշնամեաց մանաւանդ զայն ընտրեմ կրել: Սիրակուսացւոց իրք չարագոյն քան զմերս են. զի ռոճկօք զօտարոտին զինուորեալ, և շուրջ զքաղաքաւ ծախեալ գանձս, և սորմիդ առուար յամէ հետէ յաւին կալեալ, սպառին արդ և չկարեն զելս իրացն գտանել. երկուս հազարս քանքարաց ծախեալ յարդ, առաւելագունին այսօր պէտս ունին. զի 'ի կարձել զպատարատութիւն զինուց և 'ի նուազել զռոճիկ վարձկանաց զօրուն խանգարեալ եղծանի ամենայն. զի յայնոսիկ է զօրութիւն

փանակի նոցա, և ոչ որպէս զմերս 'ի հարկէ ծառայութեան զինուորեալ. պարտ է ապա երկարել յամել 'ի պաշարմանս, և մի՛ յընչից՝ որով բազմօք առաւելումք քան զթշնամին, յաղթահարեալ կորակոր 'ի բաց գնասցուք:

ԽԹ. Զայս այսպէս ասելով՝ պնդէր Նիկիաս 'ի խորհուրդս մտաց իւրոց, զի գիտէր հաւաստեաւ զներքին պայման Սիրակուսացւոց. զնուազութիւն գանձուն հասարակաց. և թէ էին 'ի նոսա, որք յԱթենացիս զվարչութիւն քաղաքին յանձն առնել կամէին, և բանագնաց վասն այսր առ նա լինելով՝ աղաչէին չթողուլ զնոսա. և վստահ էր Նիկիաս զօրանալոյ այնուհետև նաւատորմաւն 'ի ծովուն: Բայց ամենևին օտար էր Դեմոսթէն 'ի խորհրդոյ աստի՝ յամելոյ այլ ևս 'ի պաշարման. և եթէ պարտ իցէ, ասէր, մնալ հրամանի Աթենացւոց 'ի նահանջ, 'ի Թափսոս ամբարձեալ և կամ 'ի Կատանիա՝ անդ սպասել. և անտի ասպատակելով յերկիր թշնամւոյն՝ աւարաւ նոցա կեալ, և վնաս մեծ ածել նոցա. զի ոչ եթէ 'ի յանձուկս այսուհետև և 'ի նպաստաւոր թշնամւոյն տեղիս, այլ յընդարձակ ծովուն 'ի խորս պարտ է զնաւամարտ մղել, և ընկ իւրեանց հմտութեամբ գերազանցեալ առաւելուլ, յորում ազատ էին 'ի նահանջ և 'ի յարձակմունս. և ոչ որպէս 'ի վայրափակ յանձուկ ասպարիսին բռնադատեալք զյամանքաւ գալ կամ հեռանալ անտի. համայն ասել, չյօժարէր նա բնաւ կալ 'ի տեղւոջն, այլ մեկնել անտի փութով: Ի սոյն միտս էր և Եւրիմեդոն, այլ 'ի յամառել պնդել Նիկիայ՝ դանդաղագոյնք եղեն և նոքա այնուհետև, 'ի կարծիս լինելով՝ եթէ յամառութեամբ խորհրդոցն աւելի ինչ քան զնոսա գիտիցէ Նիկիաս. այսպէս ժամանակեալ զչուն՝ կացին հնայլին 'ի տեղւոջն:

Ծ. Ի ժամանակին դարձան Գիլիպպոս և Սիկանոս 'ի Սիրակուսա, վերջնոյս ոչ յաջողելով 'ի գործն՝ յոր գնացեալ էր. քանզի մինչդեռ 'ի Գելա էր նա՝ մերժեալ տարագիր եղեն յԱկրագանդայ կուսակիցք Սիրակուսացւոց:

Իսկ Գիլիպպոս գայր բազմագունդ զօրօք ժողովեալ 'ի Սիկիլիոյ, և որք 'ի Պելոպոնեսեայ 'ի գարնանի արձակեալ էին 'ի վաճառական նաւս՝ եկին և նոքա ընդ Լիբիա 'ի Սելինունդ զօրական ապարազէն: Քանզի վարեալ սոցա հողմով 'ի Լիբիա, և 'ի Կիւրենացւոց առեալ երկուս նաւս պատերազմիկս և առաջնորդս, և զճանապարհայն ձեռն տուեալ Եւեսպերիտաց պաշարելոց 'ի Լիբիացւոց՝ հարին զԼիբիացիս, և անտի զափամբ գնալով հասին 'ի Նէապօլիս (Նոր-քաղաք), Թանգարան վաճառուց Կարքեդոնացւոց, ընդ որ սղագոյն էր 'ի Սիկիլիա ճանապարհ երկաւուրբք և գիշերաւ միով, ուստի և ամբարձեալ եկին 'ի Սելինունդ: Ի հասանել զօրուն պատրաստէին Սիրակուսացիք բախել վերստին ընդ Աթենացիս ընդ ծով և ընդ ցամաք: Տեսեալ զօրավարացն Աթենացւոց զնոր զօրութիւն թշնամեաց, մինչդեռ իւրեանցն ոչ 'ի բարւոքն այլ օր ըստ օրէ 'ի վատթարն դիմէր պայման. ճարակելով և ախտ հիւանդութեան 'ի զօրուն, զղջացան յոյժ զի ոչ կանխեցին ելանել 'ի ճանապարհ: Եւ զի ոչ ևս այլ հակառակէր նոցա Նիկիաս, բայց խնդրէր միայն չառնել զայն աշխարհադոյժ, որպէս ինչ կարացին՝ ազդ արարին զօրուն գաղտաբար 'ի պատրաստութիւն, 'ի տալ նշանին՝ թողեալ զբանակս ամբառնալ 'ի նաւս: Իբրև ամենայն ինչ կազմ էր և խորհէին ուղևոյ լինել, խաւարեցաւ ահա լուսին, և դէպ եղև խաւարումն 'ի լրութեան նորա: Բազմաց յԱթենացւոց չարագուշակ դէպն համարեալ՝ խնդրեցին 'ի զօրավարաց յամել զնաւարկութիւնս. և Նիկիաս ինքնին բարեպաշտել կարծելով յինքնակամ կրօնս, զերիս իննեակս աւուրց չշարժել, ասէր, ըստ ցուցակութեան հմայից: Եւ այս եղեն պատճառք ժամանակելոյ Աթենացւոց զչուն և մնալոյ 'ի տեղւոջն:

ԾԱ. Լուեալ զայս Սիրակուսացւոց՝ և ևս զարթուցեալ հոկէին չտալ թոյլ և դադար Աթենացւոց, որոց անձամբ անձանց տուեալ էր զվճիռ՝ ոչ ևս այլ այնուհետև

զօրանալոյ ոչ ընդ ծով և ոչ ընդ ցամաք, զի այլազգ չմարթէր նոցա խորհել 'ի նահանջ: Քանզի և չկամէին իսկ թողուլ զնոսա ամրանալ 'ի դժուարամատոյց ուրեք տեղւոջ 'ի Սիկիլիա. վասն որոյ և պատրաստէին ձեպով 'ի գնալն ուրեք վայրի և ինքեանց յաջողակ՝ սախտել զնոսա 'ի ծովամարտ: Հանդերձէին կազմէին զնաւս, և որչափ ինչ բաւական համարէին մարզէին զինքեանս 'ի նաւամարտ: Եւ 'ի հասանել ժամուն յերեկոյէ իսկ աւուրն յարձակեցան 'ի պատնէշս Աթենացւոց, և անկեալ 'ի վերայ ելելոց այտի ընդ դրունսն հատուածի ասպարազէն զօրու և հեծելոց, և խորտակեալ զնոսա հալածական տարան: Եւ զի անձուկ էին հետք ուղւոյն՝ կորուսին Աթենացիք հեծեալս եօթանասուն և յասպարակիր զօրուէն սակաւս թուով:

ԾԲ. Եւ մեկնեցաւ յաւուր յայնմիկ զօրն սիրակուսացի 'ի քաղաքն. բայց 'ի վաղիւ անդր խաղացուցին նաւս եօթանասուն և վեց 'ի ծովուն, մինչդեռ հետևակազօրն դիմէր 'ի վերայ պատնիշացն Աթենացւոց. որոց ութսուն և վեց նաւուք ելեալ ընդդէմ Սիրակուսացւոց, և խառնեցաւ ծովամարտն: Խորհէր Եւրիմեդոն՝ որ յաջում թևին Աթենացւոց զօրավարէր, փակեալ պաշարել զնաւախումբ թշնամեաց, և ձգէր երկայնէր զիւրսն 'ի ցամաք կոյս. բայց Սիրակուսացիք և մարտակիցք նոցին, նախ զբուն ճակատուն Աթենացւոց վանեալ, ապա և զԵւրիմեդոն 'ի ծոց և 'ի խորչս նաւահանգստին արգելեալ՝ խորտակեցին զնա և զամենայն նաւս որ ընդ նմա. հետամուտ ապա ողջոյն գումարտակին Աթենացւոց՝ վարեցին զնոսա 'ի ցամաք:

ԾԳ. Տեսեալ Գիլիպպեայ զպարտութիւն նաւուց թշնամեաց, և վարել մղել նոցա արտաքոյ ցցապատնիշին և բանակատեղւոյն իւրեանց, խորհէր հասեալ կոտորել զելեալսն 'ի ցամաք, և դիւրել Սիրակուսացւոց ըմբռնել անաշխատ զնաւս առ ծովեզերբ, զոր բարեկամք նոցին ունէին յայնժամ, և խաղացոյց զմասն զօրուն 'ի քարաժեռ ամբարտակն կոյս: Տիւրսենիացիք պահանորդք վայրացն 'ի

կողմանէ Աթենացւոց խրախուսեալ, ընդ տեսիլ խառնի-խուռն արշաւանի թշնամւոյն ելին ընդ առաջ նոցա, և անկեալ 'ի վերայ յառաջապահ զօրուն Սիրակուսացւոց, և հարեալ արկին զնոսա 'ի ճահիճս Լիսիմելեայ: Այլ 'ի տուարանալ գնդի Սիրակուսացւոց և նիզակակցաց նոցա, հասին 'ի վերայ և Աթենացիք երկուցեալք վասն նաւաց իւրեանց. և վանեալ պատերազմաւ զհակառակորդսն հալածական արարին, սպանեալ յասպարակիր զօրուէն ոչ սակաւ. ապրեցուցին զյոլովս 'ի նաւաց իւրեանց, և ածեալ ժողովեցին զայնս 'ի բանակետղն, բաց յութուտասանից՝ զորս կալան Սիրակուսացիք և դաշնաւորք նոցա, կոտորելով զամենայն մարդ վերելեալ 'ի նոսա: Սիրակուսացիք առ հրձիգ 'ի մնացեալսն լինելոյ, լցեալ 'ի նաւ մի հին և խարխուլ խաւիւ և ջահ, և զի 'ի կողմն կոյս Աթենացւոց շընչէր հողմն, հուր 'ի նմա արկեալ վարեցին զայն առ նոսա: Երկուցեալ Աթենացւոց վասն նաւաց իւրեանց, զամենայն հնարս հնարեցին զառաջս առնուլ հրդեհին, և խափուցեալ զբոցն՝ չետուն թոյլ հրձիգ նաւուն մերձենալ առ նոսա, և զերծան 'ի վտանգէն:

ԾԴ. Յետ այսորիկ նշան յաղթութեան կանգնեցին Սիրակուսացիք վասն ծովամարտին, և վասն առ պատնիշօք զպայսն արգելլոյ և զերիվարսն յափշտակելոյ: Կանգնեցին և Աթենացիք նշան, զի խորտակեալ էր Տիւրսենիացւոց և վարեալ զհետևակազօր թշնամւոյն 'ի ճահիճն, և ինքեանց իսպառ հարեալ զնոսա:

ԾԵ. Մեծապայծառ եղև յաղթութիւնն Սիրակուսացւոց 'ի ծովամարտին, որ 'ի սկզբան անդ յահի էին և յերկիւղի՝ գալստեամբ նորոյ գումարտակի նաւացն Դեմոսթենեայ. ահագին եղև և արտաքսկութիւն Աթենացւոց, որոց ընդ մեծի պատրանաց յուսոյն՝ մեծագոյն ևս էր և ապաշաւ սարջանաց ընդ արշաւանսն: Քանզի 'ի թիւս քաղաքանւոյն կամ ժողովրդոց՝ ընդ որս մարտեան նոքա ցայնժամ, սոքա միայն համաբարոյք, ռամկավարք, հզօրք 'ի

գումարտակս նաւաց և յայրուձին և 'ի մեծութեան. որով անհնարին էր հերձուածս 'ի նոսա արկանել կամ այլափոխութիւն ինչ 'ի նոսա մուծանել. և ոչ 'ի հանդերձանս պատերազմի քան զնոսա բազմօք առաւելեալ, որով և բազում այն էր զի ձախողեցան, և յառաջ քան զայս իսկ 'ի վարանս տարակուսի էին այսպէս. և անակնկալս այս խորտակումն յետին՝ իսպառ լքուցեալ վհատեցոյց զնոսա:

ԾԶ. Աներկիւղ այնուհետև երթեւեկէին Սիրակուսացիք նաւուք 'ի նաւահանգստին, զորոյ և զբերանն փակել խորհէին, զի մի զանխուլ 'ի նոցանէ ելանել կարասցեն անտի Աթենացիք. զի ոչ ևս այլ վասն փրկութեան իրեանց միայն հոգային, այլ զի և զթշնամւոյն խափանել կարիցեն: Համարէին, որպէս և էր իսկ ստուգութեամբ, յոյժ գեր 'ի վերոյք քան զնոսա, և եթէ լիցի նոցա յաջողել՝ ջախջախել իսպառապուռ զզօրութիւն Աթենացւոց և մարտակցաց նոցա ընդ ծով և ընդ ցամաք. որով և նահատակութեամբս այսու պայծառագոյնս փայլել առ Հելլենս, յորոց զկէսս արագարագ յազատութիւն՝ և զայլս յանքոյթ աներկեանութիւն հանէին. քանզի զինուորութեամբն հնացելով անբաւականք այնուհետև Աթենացիք 'ի ժուժկալել ընդդէմ պատերազմին յարուցելոյ, մինչդեռ ինքեանք Սիրակուսացիք՝ պատճառք այսոցիկ ամենայնի հանդիսացեալք առաջի մարդկան ժամանակին, և որոց առյապա գալոց էին աչք՝ զարմանալիք լինէին: Ըստ այսմ մեծ էր մրցումնս և հոյակապ. զի ոչ յԱթենացւոց վերայ միայն յաղթանակէին, այլ և դաշնաւորաց նոցա ժողովրդոց բազմաց, թէպէտ և ինքեանք բաժանակից էին և հաղորդ պատուոյ և իշխանութեան մարտակցաց իւրեանց. Կորնթացւոց և Լակեդեմոնացւոց. և քաղաքն նոցա յանհնարին վտանգէն ապրեալ 'ի մեծ զօրութիւն նաւական ամբառնայր: Եւ յիրաւի բաց 'ի միաձոյլ յարուցմանց ժողովրդոց 'ի ժամանակս պատերազմիս յԱթէնս և 'ի Լակեդեմոն, չետես երբեք 'ի քաղաքաց ոք այդչափ յոքնաթիւ ամբոխ մարդկան խռնել զնովաւ:

ԾԷ. Եւ այս էին ժողովուրդք՝ որ 'ի վերայ Սիկիլիոյ առ ըարաբաժին առնելոյ զայն յիւրեանս զինուորեցան, և որք յաղատութիւն նորին վերամարտիկ Սիրակուսայ գըտան. և այս ոչ յիրաւունս ուխտի դաշանց ձեռն իրերաց տալով՝ այլ ըստ հանգամանաց ժամանակին, որ 'ի շահու և որ 'ի հարկէն առ այն գալով: Աթենացիք 'ի Յոնիական ցեղէն 'ի վերայ սերնդոց Դորիացւոց Սիրակուսայ մտադիւր 'ի պատերազմ գային, 'ի նոյն բարբառ և 'ի նոյն օրէնս Աթենացւոց սովորեալ Լեմնիացիք և Իմբրիացիք և Եգինացիք՝ որ զԵգինէ ունէին յայնժամ: Դարձեալ և Եստիացիք բնակիչք Եստիոյ յԵւբիա՝ ամենեքեան հատուածք Աթենացւոց մարտակից արշաւանիս լինէին: Իսկ յայլոց ժողովրդոց էր որ իբրև հպատակ հարկատու, էր որ իբրև դաշնաւոր ազատ, և էր որ իբրև վարձկան օժընդակ՝ 'ի այն զինուորէր: Ի հպատակ և 'ի հարկատու ժողովրդոց Երետրիացիք էին, Քաղկիսացիք, Ստրիացիք, Կարիստիացիք՝ բնակիչք Եւբիոյ: Իսկ 'ի կղզեաց կղզեաց՝ Կեացիք, Անդրոսացիք և Տենոսացիք. 'ի Յոնիոյ՝ Միլէտացիք, Սամոսացիք և Քիացիք. 'ի սոցանէ Քիացիք ազատ 'ի հարկաց՝ պատրաստութեամբ նաւաց ինքնակամ զհետ արշաւանիս գնային: Ամենեքեան սոքա Յոնիացիք գաղութք յԱթենացւոց, բայց 'ի Կարիստիացւոցն՝ որ 'ի Դրիոպաց են, և հպատակք և 'ի հարկէ պարտուց բռնադատեալք, որպէս Յոնիացիք 'ի վերայ Դորիացւոց 'ի պատերազմ գնային. Էին դարձեալ և 'ի ցեղէս Եւոլացւոց, յորոց Մեթիմնացիք նաւուք և ոչ. արծաթով հարկատուք, մինչդեռ Տենեդացիք և Ենիացիք ընդ հարկաւ: Ժողովուրդքս այսոքիկ Եւոլիոյ ընդ մայր գաղթականին իւրեանց ընդ Բիովտացւոց, նոյնպէս և ընդ Եւոլացւոց դաշնաւորաց Սիրակուսայ 'ի հարկէն ստիպեալք մարտնչէին: Պղատէացիք միայն բնիկք Բիովտիոյ՝ առ ատելութեան մանաւանդ՝ ընդ Բիովտացիս կռուէին: Հռոդացիք և Կիւթերացիք՝ իւրաքանչիւր սոքա Դորիացիք, յորոց Կիւթերացիք հատուած 'ի Լակեդեմոնիոյ, խառն ընդ Ա-

Թենացիս ընդդէմ Լակեդեմոնացւոց, և ոյք ընդ Գիլիպպեայ գուպարէին: Հռոդացիք 'ի ծննդոց Արգիացւոց ընդ Սիրակուսացիս Դորիացեղս, և ընդ Գելացիս ընդ բնիկ իւրեանց հատուած և դաշնաւոր յայնժամ Սիրակուսայ պատերազմէին: Ի կղզայնոց որք զՊելոպոնեաւ՝ Կեփաղլենեցիք և Զակինթացիք ինքնօրէնք և ազատք իբրև կղզայինք ձգէին զհետ Աթենացւոց իշխողի ծովուն: Կորկիւրացիք՝ ոչ Դորիացիք գոլով միայն, այլ և 'ի Կորնթացւոց, 'ի վերայ նոցին Կորնթացւոց և հատուածին Սիրակուսայ և իւրեանց իսկ համացեղից՝ առ երեսս իբրու 'ի հարկէ, այլ իրօք առ քինու ատելութեան՝ մատչէին յարշաւանս զինուորէին: Եւ որ Մեսսինիացիք կոչին այժմ 'ի Նաւպակտոն և 'ի Պիւղոս, ընդ ձեռամբ յայնժամ Աթենացւոց, 'ի պատերազմս այս ըմբռնէին: Եւ 'ի Մեգարացւոց 'ի վտարանդեաց ոմանք, առ աղէտս իւրեանց ընդ Սելինոնդս ընդ բնիկս Մեգարայ կռուէին: Իսկ որ յազգաց ազգաց ազատաբար կցորդ զինուորութեանցս գտան, Արգիացիք եղեն, որ քան առ նիզակակից բարեկամութեան ընդ Աթենացիս, առ ատելութեան մանաւանդ ընդդէմ Լակեդեմոնացւոց և առժամայն շահու՝ Դորիացիք հակառակ Դորիացւոց զհետ Յոնիացեղից Աթենացւոց գնային: Մանտինէացիք և որք վարձկանք էին յԱրկադացւոց՝ սովորեալ միշտ երթալ 'ի վերայ որոց թշնամիս լինել ասիցեն, երթային և յայնժամ ընդդէմ Արկադացւոց օժընդակայ Կորնթացւոց՝ իբրև ընդդէմ թշնամեաց 'ի կռիւ, որպէս ոչինչ նուազ և առ օգտի շահուն: Կրետացիք և Ետոլացիք ռոճկեալք 'ի զինուորութիւնս, յորոց դէպ լինէր Կրետացւոց հիմնադրաց գաղթականին Գելայ միաբան ընդ Հռոդացիս 'ի վերայ իւրեանց բնիկ առհմայնոց՝ ոչ 'ի թիկունս, այլ 'ի կռիւ մարտ վարձուք զինուորել: Էին և յԱկառնանացւոց՝ որ միանգամայն 'ի պատճառս շահուն և առ բարեկամութեան ընդ Դեմոսթենեայ և առ բարեմիտ դաշնաւորութեան ընդ Աթենացիս, գային օժընդակել արշաւանիս: Սոքա էին ժո-

ղովուրդք Յոնիական ծագմն պարուրեալք: Իսկ յԻտալիայ՝ որ 'ի հարկէ ժխորից ժամանակին թակարդեալք ըմբռնեցան, Թուրիացիք եղեն և Մետապոնտիացիք որ ձեռն ետուն զինուորութեանս, 'ի Սիկիլիացւոց՝ Նաքսացիք և Կատանացիք, և 'ի բարբարոսաց Եգեստացիք, որք և զյոլովս 'ի Սիկելացւոց 'ի նոյն յորդորեալ ձգեցին. և որ արտաքոյ Սիկիլիոյ ժողովուրդք եղեն 'ի Տիւրսենիացւոց սակաւք ոմանք առ թշնամութեան ընդ Սիրակուսացիս, և վարձկանք Յապիւգեանց: Սոքա եղեն որք ընդ Աթենացիս զինուորեցան ժողովուրդք:

ԾԸ. Իսկ Սիրակուսացւոց օգնական և մարտակից եղեն Կամարինեցիք սահմանորդք նոցա և Գելացիք համաբնակք նոցուն. և մինչդեռ Ակրագանդացիք և ոչ 'ի մի կողմն յօժարէին միտել, Սելինունդքանդրագոյն բնակեալք ընդ Սիրակուսացիս եղեն որպէս և ամենայն Լիբիակողման կղզւոյս ժողովուրդք: Եւ հանդէպ Տիւրսենեան ծովուն Հիմերացիք՝ 'ի բնակաց այնմ կողման միայն Հելլէնք՝ որոց ձեռն ընդ Սիրակուսացիս եղև: Այսպէսիկ էին դաշնաւորք Սիրակուսայ. Հելլենացեղք ամենեքեան Դորիացիք ինքնօրէնք յիւրեանս և 'ի բարբարոսաց՝ նոքա միայն 'ի Սիկելացւոց որք ոչ կալան զկողմն Աթենացւոց: Իսկ արտաքոյ Սիկիլիոյ 'ի Հելլենաց՝ Լակեդեմոնացիք տալով նոցա առաջնորդ և զօրավար սպարտացի և զունդս յազատագրելոց և յԻլոտաց: Կորնթացիք և նաւուք և հետևակախմբովք զօրօք գալով նոցա 'ի թիկունս, և Լեւկադացիք և Ամբրակիացիք առ տոհմակից ընտանութեան: Առաքեցան 'ի Կորնթացւոց և վարձկանք Արկադացիք, զինուորեցան և Սիկիոնացիք բռնի յակամայս, և արտաքոյ Պելոպոննեսոյ՝ Բիովտացիք: Առ օժանդակ մարտակից եկացս այսոցիկ առաւելոյր յոյժ ամբոխ բազմութեան Սիկիլիացւոց, ըստ մեծութեան բազմամարդ քաղաքանւոյն, յորոց զօր մնդաւոր, և երիվար և նաւ գումարէին յոքնախմբ: Սակայն քան այլովք ամենեքումբք առաւելեալ Սիրակուսացիք 'ի հանդերձանս ամեն-

ազգի պատրաստութեան՝ առ մեծութեան քաղաքին և առ տագնապ մեծի վտանգին շարժեալք:

ԾԹ. Այսոքիկ եղեն առաջ գումարութիւնք՝ զոր գումարեցան 'ի ժամանակին յայնմիկ 'ի դաշնաւորաց և յօժարընդակաց անտի իւրեանց հակառակամարտ ախոյեանցն՝ չյաւելլով ապա այլ ուստեք նոր եկամուտս: Եւ կարի իսկ յիրաւունս. զի յետ յաղթութեան նաւամարտին Սիրակուսացիք և նիզակակիցք նոցին դաշնաւորք՝ արիական հանդէս համարէին փակել արգելուլ անձողապրելի զողջոյն բանակն Աթենացւոց, և ոչ թողուլ նոցա զելս փախստի ոչ ընդ ծով և ոչ ընդ ցամաք: Եւ խցին անդէն զանցս մեծի նաւահանգստին, որոյ բերանոյ ընդարձակութիւն ութ ասպարիսք էին, տողեալ կարգեալ նաւս պատերազմիկս, և կարասակիրս և ակատս 'ի խարսխի. և ինքեանք կազմ կային և պատրաստ, եթէ յանկարծ ուրեք յանդգնեսցին Աթենացիք 'ի նաւամարտ, զի մեծամեծս այնուհետև խորհէին:

Կ. Իբրև տեսին Աթենացիք զինքեանս ամենևին պաշարեալս, գուշակելով և զթշնամւոյն կամս՝ գումարեցան 'ի խորհուրդ: Ժողովեցան զօրավարք և գնդապետք թէ զինչ արժան էր առնել 'ի վերահաս տագնապին, ընդ այլ ամենայն և վասն չքաւորութեան պարենից՝ զոր կանխեալ առաքեալ էր նոցա 'ի Կատանէ, որպէս եթէ ընդ հուպ փութանակի ձեպէին և ինքեանք զկնի. և զի չմարթէր այնուհետև ոչ ևս այլ զուռձիկ կերակրոյն հայթայթել, բայց եթէ յաղթութեամբ 'ի նաւամարտի: Եւ վճռեալ սահմանեցին թողուլ զվերնակողմեան պատուարսն, և իջանել ամփոփել առ նաւատորմիղն 'ի վայր անձուկ, բաւական 'ի պէտս աղխամաղխին և հիւանդաց, և ձեպ 'ի ձեպոյ ամրացեալ պնդել պահնակօք, և զայլս ամենայն ամբառնալ 'ի նաւս անխտիր 'ի հասարակաց և 'ի տկարս յաննաւարկելիս, և ծովամարտս առնել իւրեանց ճանապարհ. յորում 'ի յաջողել յաղթութեամբ՝ ուղղել զնաւարկու-

թիւնն 'ի Կատանա. իսկ եթէ ոչ՝ հրձիգ 'ի նաւսն լեալ, և
'ի ռազմ զզօրն կարգեալ անկանել 'ի ճանապարհ ընդ ցա-
մաք, հասանել 'ի քաղաք ուրեք բարբարոսաց կամ Հելլե-
նաց, որ իցէ նոցա բարեկամ: Եւ զոր խորհեցանն՝ կատա-
րեցին. ելին 'ի վերնակողմեան պատուարացն, լցին զնաւս
խառն 'ի խուռն, 'ի նոյն բռնադատեալ զամենեսեան որոց
հասակ էր և զօրութիւն լինելոյ պիտանի: Եւ բովանդակեցին
զթիւ նաւաց հարիւր և տասանց. ամբարձեալ 'ի նոսա ա-
ղեղնաւորս և տեգնընկէցս բազումս յԱկառնանացւոց և
յայլոց եկաց, և զամենայն ըստ անձկութեան ժամուն հո-
գացեալ և ըստ նպաստակի խորհրդոց: Եւ իբրև պատրաստ
էր ամենայն, տեսեալ Նիկիայ զզօրն սրտաբեկ ընդ անսո-
վոր նոցա պարտութիւն 'ի ծովուն, և առ 'ի չգոյէ կերա-
կրոյ պարենի ընդ հուպ գիմագրաւս 'ի վտանգս, ժողովեալ
զամենեսեան և խօսեցաւ 'ի խրախոյս քաջալերութեան առ
նոսա զայս առաջին նուագ այսպէս.

ԿԱ. « Արք զինուորակիցք իմ Աթենացիք, և որ յաղ-
գաց ազգաց նիզակակիցք էք. նաւհաստատութիւն հաւասար
առաջի կայ մեզ ամենեցուն այսօր, ոչինչ նուազ և թշնա-
մեաց՝ իւրաքանչիւր 'ի վերայ անձին փրկութեան և հայրե-
նեաց մրցելով: Զի եթէ զօրանամք արդ 'ի ծովամար-
տիս, իցէ մեզ յոյս տեսանելոյ վերստին զքաղաքս մեր և
զտունս: Զէ պարտ, չէ արժան լքեալ վհատել, և ոչ այն-
պիսի ինչ կրել կիրս՝ իբրու ամենևին անփորձս 'ի մարդ-
կանէ, որոց ձախողեալ միանգամ՝ զկասկած երկիւղին այ-
նուհետև և զաղետից հանապազ առաջի աչաց ունիցին:
Այլ դուք, Աթենացիք, 'ի բազում պատերազմունս փորձք.
որպէս և դուք մարտակիցք մեր, հանապազ ընդ մեզ զի-
նուորեալ, յուշ ձեզ անակնկալ դէպք պատերազմաց, և
հաւատացէք 'ի մեր կոյս լինել այսուհետև բաղդին, և պըն-
դեցէք զանձինս ձեր վանել արիաբար ամբոխից զխուժան
զորս առաջի տեսանէք:

ԿԲ. « Որ ինչ անձկութիւն նաւահանգստին ընդդէմ

բազմութեան նաւաց թշնամւոյն 'ի մեր նպաստ էր, որ ինչ կազմածք պատրաստութեան նոցա 'ի վերայ կամրջաց նաւաց, որով փութացաք ցայժմ, զայս ամենայն յարգեանց իւրաց քննեալ մեր արդ և ղեկավարացն՝ յօգուտ մեր զնոսին կարգեցաք: Ամբառնամք արդ աղեղնաւորս և արգելնկեցս 'ի նաւս և ամբոխ բազում, զոր յընդարձակ ծովու չկարէաք վարել. առանց ծանրաբեռնելոյ նոքօք նաւս 'ի վնաս մերոյս ծովամարտ արուեստի գիտութեան. մինչդեռ արդ ըստ հարկի պայմանի իրացս յորում եմք՝ ստիպիմք կռիւ հետևակամարտ մղել 'ի ծովու, օգտակար մեզ գործելով զհարկն: Ճարտարեցաք գտաք և մեք մեզէն հնարս փոխարինելոյ վնասուն՝ զոր կրեցաքս ընդդէմ թանձրութեան գերանացն կցելոց 'ի յառաջակողմն նաւաց նոցա՝ ճանկս երկաթիս, ընթանել նոքօք զնաւս նոցա 'ի մեր վերայ յարձակեալս, և չթողուլ զնոսա ընկրկել յետս. չա՛փ է զի վերամարտ զօրականս արիաբար կառուեցի, յորում բանագաւիճս 'ի նաւաց երկրախումբ մղել պատերազմ. որով և պինդ կացեալ չթողուլ և թշնամւոյն խլրտեալ ընկրկել՝ յօգուտ մեր լիցի. որովհետև և ծովափունքս համօրէն՝ բաց 'ի բանակատեղւոյս, ամենեքեան թշնամի հակառակորդք մեր են:

կԳ. « Յո՛ւշ ձեզ, զի պատերազմ յամառ առաջի կայ. արիաբար ամենայն զօրութեամբ ուժոյ տևել տոկալ չընկրել 'ի ծովափունսն. և յանկանել նաւացդ առ միմեանս, չզատանել 'ի թշնամւոյն մինչև կոտորեալ զամենայն մարտիկ 'ի նոսա: Զայս ոչինչ նուազ առ նաւաստին՝ առ ասպարակիր զօրականն կարգամ խրախոյս, որոց գործ է 'ի բարձանց նաւաց կռուել. զի 'ի բազմութեան հետևակազօրուն է արդ մերս յաղթութիւն: Իսկ զնաւաստին խրատեալ յորդորեմ և աղաչեմ, մի աղետիւքս ահաբեկ լինիջիք յաջնախումբ ունելով նաւս, և լաւագոյն պատրաստութիւն 'ի տախտակամած կամրջաց անտի նաւաց զինեալս: Յիշեցուցանել ձեզ կամ է ինձ և զհեշտականսն, զոր և

արժան է պահել զգուշութեամբ, որք կանուխ մինչև յԱթենացիս գրեալ՝ 'ի նոցա համարի էք, գիտութեամբ բարբառոյս և նմանութեամբ վարուցս և գնացից զարմանալիք Հելլենաց. որք բազմօք հաղորդք մերոյս իշխանութեան. ոչինչ նուաղ և առաւել իսկ մանաւանդ 'ի վայելսն ընդ մեզ, աջաւորք հպատակաց և յանիրաւելոյ 'ի նոցանէ երաշխաւորեալք, և յերկիւղէ նոցա աներկեանք: Որպէս զի ազատօրէն բաժանորդք էք մերոյս պետութեան, և կարե իսկ յիրաւունս՝ չլինել այսօր նմին մատնոտ: Արհամարհեալ զԿորնթացւովք՝ զորս բազում անգամ հարեալ խորտակեցէք, և զՍիկիլիացւովք յորոց ոչ ոք՝ յորժամ 'ի պայծառութեան էր նաւականս մեր զօրութիւն, իշխէր գլուխ ընդդէմ մեր ամբառնալ, նահատակեցարուք արիաբար յընդդիմամարտ նոցուն. ցուցէք յայտնապէս եթէ և 'ի տկարութեան և յարկածս անգամ գեր 'ի վերոյ է ձերդ գիտութիւն քան օտարին բարեբաղդ զօրութիւն:

կդ. « Յիշեցուցանեմ ձեզ դարձեալ, ո՛ Աթենացիք. զի չթողէք յետս 'ի նաւարանիդ նման ամին այլ նաւախումբ, և ոչ մարտիկ ասպարազէն 'ի հասակ կատարեալ. զի եթէ ոչ դարձջիք յերկիր ձեր յաղթականք, ձգեցէք աներկբայ անդր զկնի զթշնամին, յորում թողեալքն 'ի ձէնջ քաղաքացիք չբաւեսցեն ընդ կանուխ անդէն եղելոց թշնամեաց՝ զնորոցն արշաւանս վանելոյ: Եւ անկցիք անյապաղ ընդ հուպ 'ի ներքոյ Սիրակուսացւոց, ընդ նոքօք յորոց գիտէք թէ որպիսի՛ խորհրդով եկայք 'ի վերայ, և ընդ Լակեդեմոնացւովք՝ որ անդր յերկրի ձերում են: Եւ զի 'ի վերայ հասարակաց՝ նոցա և ձեր առաջի կայ մրցել, զօրացարո՛ւք, պնդեցէք զանձինս, դի՛ք իւրաքանչիւր 'ի մասի և համայն իսկ ամենեքեան. զի որ 'ի նաւս էք ամբարձեալ այսօր երկրախումբ բանակ էք Աթենացւոց, նաւական զօրութիւն նոցա, պետութիւնն ոլջոյն և ինքնին մեծանուն քաղաքն Աթենացւոց և ժողովուրդ: Մինչ զի եթէ առաւելու ոք 'ի գիտութեան և կամ յարութեան քաջութեան քան զընկեր

եւր մի այլում պատեհի մնացէ 'ի յայտնութիւն, այլ ժամ է անձամբ անձին բարերար լինելոյ և հանուրց փըրկիչ »:

ԿԵ. Յետ քաջալեր բանիցս այսոցիկ հրաման ետ Նիկիաս հանդերձել լինել զնաւսն: Զոր տեսեալ Գիլիպպեայ և Սիրակուսացւոց զշարժումնս և զպատրաստութիւն, և 'ի վերայ հասեալ խորհրդոյ Աթենացւոց 'ի նաւամարտ, և զի կանուխ տեղեկացեալ էր նոցա՝ վասն նորագիւտ երկաթի ձանկիցն, ընդ այլս և 'ի սոյն վաղագոյն պատրաստեցան: Պատեցին կաշւով զմեծ տարած առաջից նաւաց և զվերնակողմանսն, զի սահելով ձանկին արկելոյ՝ չկարասցէ կառուել 'ի նաւսն: Եւ իբրև կազմ էր ամենայն, խօսեցան զօրավարք Սիրակուսացւոց և Գիլիպպոս 'ի յորդոր զօրուն օրինակ զայս.

ԿԶ. « Գեղեցիկ ցարդ արութեանցդ նահատակութիւնք գուշակ են աներկբայ առ յապայ գեղեցկագունի մրցութեանց, ո՛ Սիրակուսացիք և մարտակիցք մերոյս զինուորութեան. որում՝ որպէս թուի, գիտակ էք դուք առհասարակ, քանզի այլազդ չմարթէր այնպէս մտադիւր 'ի սոյն խրախուսել. սակայն եթէ գոցի որ չիցէ այնպէս խելամուտ նմին, ցուցցուք հաւաստեաւ և այնպիսւոյն: Եկին Աթենացիք յերկիրս մեր յայս՝ նուաճել նախ զՍիկիլիա, և 'ի յաջողելն 'ի սոյն յաւելուլ և զՊեղոպոնէս և զԵլլադա. և ընդդէմ մեծի պետութեանն՝ որ 'ի մէջ նախնեաց և արդեացս Հելլենացւոց երևելի լեալ, դուք միայն նախ 'ի մարդիկ համարձակեցայք նաւական զօրութեամբ ոգորել, որով միահեծան կալեալ էր նոցա զամենայն. յաղթեցէք նոցա ցարդ 'ի նաւամարտս, կարի 'ի դէպ զի և յայսմ յաղթեսջիք: Զի յորժամ որով գերազանցեմն մարդիկ վրիպեալ տկարասցին, քան զկարծիս չիջելափառք այնուհետև և 'ի փքոցուռոյց պարծանաց անկեալք, հակառակ իսկ անդրագոյն քան զզօրութիւն իւրեանց վատթարեալ տեղի տայցեն. զոր նմանագոյնս արդ կրեն կիրս Աթենացիք:

իե. « Իսկ մերս կանուխ արիական ոգին, որով անհմուտքս յայնժամ համարձակեալ յանդգնեցաք, անդագոյն լիցի արդ. և յաւելուած կարծեացս հզօրագոյն լինելոյ՝ զի հզօրաց յաղթեցաք, բազմապատիկ 'ի մեզ զայն գործեսցէ: Բազում այն է, զի 'ի ձեռնարկութիւնս յայս մեծ՝ մեծագունի յառաջամտութեան յորդոր լինի և առիթ: Զի եթէ նմանութեամբ գիտոյս մերոյ ճարտարել ինչ կարծէ թշնամին, ոչինչ անվարժք յայնպիսիս և մեք ոչ յանպատրաստս ինչ ըմբռնիցիմք 'ի նոցանէ: Որք յորժամ զգունդ մկնդաւոր զօրուն՝ անսովոր ամենևին և օտար 'ի կարգաց, և զամբոխ աղեղնաձիգ 'ի գեղջկաց չինականաց, զի այսպէս տեսացուք, զոր օրինակ յԱկառնանացւոց և յայլոց, խառնեալ կուտիցեն նոքա 'ի նաւս, որոց և ոչ հաստատուն ոտնկոխ իցէ 'ի ձգել զաղեղունս, զիա՞րդ ոչ սխալակեալ վտանգիցեն նաւք. ո՞չ և վերելեակքն համայն տատանեալ խառն 'ի խուռն 'ի միմեանս անկանիցին: Եւ եթէ ոք 'ի ձէնջ կասկածեալ խիթայցէ, զի ոչ հաւասար զօրութեամբ 'ի նաւամարտ եղանեմք, գիտասցէ այնպիսին զի բազմութիւն նաւաց ոչինչ օգտեսցէ նոցա. զի յանձուկ վայրի յոլովք դանդաղագոյնք 'ի գործ՝ յոր խորհին՝ լինիցին, և դիւրեաւ առաջին մերոց պատրաստութեանց վտանգեալ վնասեսցին: Եւ գիտասջիք զառայդ Ճշմարիտն, յորոց համարիմք անվրէպ 'ի վերայ հասեալ: Նկուն նոքա անհնարին աղետիւք չարեացս, 'ի տագնապ տարակուսին յանդգունք մխին յայս գործ անմտութեան. և քան 'ի պատրաստութիւնս՝ 'ի բաղդն ապաստան գլխագրաւ են՝ ճանապարհ ինքեանց առնել ընդ ծով բռնի. և կամ ընդ ցամաք մեկնել հեռանալ. զի քան զայժմուս չիք նոցա չարագունին մնալ:

իզ. « Ի խուռն անդ և 'ի չփոթս, 'ի մտանել բախտին 'ի ձեռս մեր զոխերիմդ 'ի մարդկանէ, յարձակեսցուք 'ի նոսա լի ցասմամբ, գազանաբար, օրինաւորագոյն համարեալ կշռել նոցա զայն ինչ 'ի պատիժ պատահար, որ վասն

նախայարձակ թշնամւոյն արդարապէս սահմանեալ է. չեք քաղցրագոյն, ըստ առածին, որպէս այժմ արդ առաջի կայ մեզ, քան թափել զցասումն վրէժխնդիր 'ի գլուխ սոսին: Եւ զի թշնամիք մեր են և ոխերիմք, գիտակ էք դուք ամենեքին. զի 'ի ծառայեցուցանել զերկիրս մեր եկին, յորում եթէ յաջողէին, ծայր մեզ պատուհաս գժնդակ արանց, մանկտւոյն և կանանց, ամօթ խայտառակութեան և ծանր ծանր թշնամանք ողջոյն քաղաքիս: Վասն որոյ չէ արժան մեզ մեղկեալ թուլանալ, և մի զանպատուհաս նահանջ նոցա 'ի շահ մեզ համարել, զի և 'ի յաղթող լինելն միապէս էր նոցա մեկնել. բայց եթէ՝ որպէս հաւանեալս եմք, 'ի լրումն ըղձից մերոց համայն կորստեամբ նոցա հասցուք, և զազատութիւնն յոր վայելէր ցայժմ Սիկիլիա, հաստարմատ ապնդեսցուք, զի՞նչ քան զայդ գեղեցիկ գործ նահատակութեան կայցէ: Դուն ուրեք արդարև երևեալ 'ի դէպս պատերազմաց, 'ի պարտութեան՝ ոչ մեծ ինչ կորուսանել, 'ի յաջողութեան՝ զլիովին բովանդակ շահել»:

ԿԹ. Իբրև զայս ամենայն զօրավարք Սիրակուսացւոց և Գիլիպպոս ինքնին առ զօրս 'ի յորդոր քաջալերութեան խօսեցան, փութացեալ լցին զնաւս, զի 'ի նոյն և զԱթենացիս տեսանէին: Իսկ Նիկիաս պակուցեալ ահաբեկ ընդ առաջիկայն, և զի երկիւղիւ ընդ մեծութիւն մօտալուտ վտանգին՝ յոր ընդ հուպ ունէր մտել զինքն, կրեալ զոր օրինակ ոք 'ի մեծամեծս և 'ի դժուարինս կրիցէ, թերի համարելով զամենայն և ոչ մի ինչ ըստ չափու բաւականին հոգացեալ, և մատուցեալ առ մի մի 'ի կարգապետաց՝ յանուանէ իւրաքանչիւր հարցն և տոհմին և ցեղին ձայնելով. աղաչէր զնոսա, զի զոր միանգամ ոք 'ի նոսա անուն պայծառ ժառանգեալ է, մի վայրապար կորուսանել, և մի զհայրենական առաքինութեամբ՝ որով նախնիք նոցա պայծառացան, առուերածս անարգութեան ածել: Յիշեցուցանէր նոցա զհայրենեաց նոցա զազատութիւն անթերի, և զանցնիւր 'ի սեփական կեանս զանարգել վայելս. չթողոյր և զայն

ինչ յուշ ածել՝ զոր 'ի նոյնպիսի դէպս չխորշին մարդիկ զհասարակ և զհնացեալ ձև խօսից առնուլ ասել. և ընդ այլս ամենեսին՝ զկանանց յիշատակել, զորդւոց և զդից հայրենեաց, զոր յաճախ ժամուն՝ ոչինչ անկարևոր համարէր 'ի լսելիս նոցա: Այսպէս ոչ չափ՝ այլ որ անհրաժեշտն կարծէր խօսելով Նիկիաս, մեկնեալ անտի ած կարգեաց զհետևակազօրն 'ի ծովեզրն 'ի ռազմ, ըստ կարի երկայնեալ զայնութիւն ճակատուն 'ի խրախոյս պնդութեան նաւախումբ զօրուն: Իսկ Դեմոսթէն, Մենանդրոս և Եւթդեմոն՝ որք նաւատորմղին Աթենացւոց զօրավարքէին, ելեալ 'ի բանակէն խաղացին 'ի փակարան ցանկապատ նաւաց 'ի բերան նաւահանգստին, բռնաբարել զանձուկ անցսն և 'ի խորս խաղալ:

Հ. Իսկ Սիրակուսացիք և նիզակակիցք նոցին նոյնթիւ հաւասար նաւուք յառաջ խաղային, զմասն մի նաւախմբին 'ի պահ թողեալ անցից նաւահանգստին և շուրջանակի, զի ամենուստ միանգամայն 'ի վերայ Աթենացւոց անկանել մարթասցեն. և զօրն հետևակախումբ 'ի կողմանէ մնայր դիպող ժամուն հասանելոյ նոցա յօգնականութիւն՝ յորում լիցի զկայ առնուլ նաւաց: Զօրավարքէին գումարտակի նաւաց Սիրակուսացւոց Սիկանոս և Ագաթարքոս 'ի թևս իւրաքանչիւր հրամայելով, իսկ Պիւթէն Կորնթացւովքն հանդերձ 'ի բուն ճակատուն: Իբրև մերձեվարեցին Աթենացիք զնաւս իւրեանց հուպ 'ի նաւարգել պատուար ցանկոյն, և 'ի նախկին թափ ուժգին զօրանային 'ի վերայ կարգելոց նաւաց՝ խորտակել զարգել փակարանին, դիմեալք անդր առ Սիրակուսացիք և մարտակիցք նոցա յամենայն կողմանց, ոչ միայն առ նաւարգել անցիւն, այլ ընդ ողջոյն երկայնութիւն նաւահանգստին խառնեցան 'ի ծովամարտ. սաստիկ էր կռիւն և յամառ, ոչ ումեք յառաջնոյն նմանելով: Երկուստեք աստի և անտի մեծ էր եռանդն արութեան նաւաստւոյն, յարձակել վարազաբար 'ի վերայ ախոյենիցն 'ի տալ նշանին. բազմապատիկ և հնարք

Ճարտարութեան ղեկավարացն զելևելս զմխեամբք առնելով։ Նոյն և 'ի կամրջաց անտի նաւաց՝ 'ի բախել նոցին ընդ միմեանս, մեծ էր ջան վերամարտիկ զօրականին, չթերանալ 'ի հնարից Ճարտարութենէ, իւրաքանչիւր 'ի լրումն առաջարկեալ պարտուց։ Զերևեցաւ ուստեք երբեք այսպէս յոգնախուռն բազմութիւն նաւաց յանձուկ ուրեք վայրի մրցել 'ի ծովամարտ, որոց թիւ ոչինչ նուազ էր քան երկերիւրոց նաւուց սատի և անտի։ Առ տեղւոյն անձկութեան դժուարինք 'ի նաւհանգ և 'ի խոյանս, դուն ուրեք 'ի գլխոյ ցռուկ ընդ ցռուկս բախումն գործէր, այլ բազում այն էր, զի 'ի հանդիպել նաւաց առ միմեանս յարշաւանս կամ 'ի փախստի, կողք ընդ կողս ընդհարկանէին։ Յարշաւասայր խոյանս միոյ ուրուք 'ի նաւաց, յայլոց անտի տէգք, նետք, քարինք 'ի վերայ տեղային. և յորժամ մատուցեալ մօտ ընդ իրեարս խառնէին, վերելեակքն 'ի նոսա բազում առ բազում կռուելով 'ի հակառակամարտ նաւս ելանել ձգնէին։ Եւ յըմբռնել ուրուք 'ի նաւաց՝ 'ի թշնամեաց անտի նաւ մի, և ինքն յայլմէ երկրորդէ ըմբռնեալ լինէր, և առ անձկութեան տեղւոյն բազումք 'ի մի կառչէին անխաղաղացք. և ղեկավարաց գործ էր՝ յոմանց զգուշանալ, այլոց դարանել. և այս ոչ 'ի միում վայրի, այլ 'ի բազում և յամենայն իսկ ուրեք։ Բոմբիւն և շառաչ ահագին յամբոխէ անտի նաւաց ընդ իրարս բախելոց յապշութիւն զմիտս կրթէր, և գողանայր 'ի լսելեաց զձայն հրամանի կարգապետացն թիոց, որով յաճախեալ թանձրանայր գոչիւն աղաղակի հրամանատարացն 'ի յորդոր և 'ի խրախոյս, 'ի ձիգն հնարից Ճարտարութեան և յարութիւն քաջութեան։ Աթենացւոց ձայն աղաղակի, ձայն խրախուսանաց, առնել եւրեանց բռնի ելս, չկորուսանել զժամ պատեհ պնդութեամբ թափելոյ զանձինս 'ի հայրենիս։ Իսկ Սիրակուսացւոց և մարտակցաց նոցա գաշնակցաց թէ քանի՛ գեղեցիկ է արգելուլ զելս փախստի թշնամւոյն. և յաղթութեամբս այսու յաւելուլ իւրաքանչիւր փառս հայրենեաց։ Եւ զօ-

րապետացն տեսեալ իբր ոչ առ հարկի առնել նաւուց 'ի նահանջ, ձայն տային առ կորդապետ նոցին եթէ ամենացի էր, հարցանելով, Հաւատարմագոյն արդեօք և ընդելքան զծով՝ զոր բաղում աշխատութեամբ ստացան, զխերիմն զցամաք երկիր կարծէին գտանել ինքեանց ապաւէն. իսկ եթէ սիրականոացի էր ընկրկողն, առաջի փախստէին հալածական գնայր, տեսանելով զմտադիւր ձիգն Աթենացւոց 'ի փախուստ:

ՀԸ. Իսկ զծովեզերբ երկրախումբ բանակ ախոյենիցն 'ի տեսիլ երկարել մարտի յանմէտ յաղթութեան, 'ի բազմօրինակ տագնապ երկիւղի տարուբերէին: Բնիկք տեղայինք մեծագունի յաղթանակին ըղձալով. օտարքն մարտադիրք զի մի չարագունի բաղդին հանդիպեսցին: Եւ զի բովանդակ ակնկալութիւն Աթենացւոց 'ի նաւախումբն վերեանց էր, վասն որոյ մեծ էր խեթ երկիւղին ընդ երկբայ ապառնին, յորում և վասն անհարթութեան տեղւոյն ոչ միապէս էր 'ի ծովափանց տեսիլ նաւամարտին: Առ կարճութեան տարափի տեսլեան, և առ ոչ ամենեցուն զմի կէտ նպատակի զհայեցուածն կշռելոյ, որ միանգամ զիւրոյին կողման զյաղթողն նկատէր, քաջալերեալ առ դիս կարդայր չթողուլ զնոսա վրիպել 'ի փրկութենէ. իսկ որ զպարտեալ կողմն տեսանէր, զձայն հառաչանաց և զողբոց աղաղակ հարկանէր. և քան զբուն մարտիկսն 'ի կռուին՝ 'ի տեսիլ նոցին վհատեալ լքանէր. այլոց զաչս 'ի վեր ամբարձեալ և աչս 'ի տեղին՝ յորում զոյգ կշիռ կայր բախտն, յերկարատև յանորոշ անդ մրցութեան, ըստ կարծեաց երկիւղին շլշլմամբ մարմնոյ համաձայնակ ձգնէին, և ահագին էր տագնապ վարանացն, որք անդուլ 'ի կէս ժամուն՝ ընդ հուպ զփախուստ կամ զկորուստ նկատէին: Եւ 'ի նմին իսկ 'ի բանակին Աթենացւոց՝ ցորչափ անորոշ էին ելք մարտին, լսելի լինէին խառն հեծութիւնք, աղաղակք, ձայն յաղթութեան, ձայն պարտութեան, և յոր միանգամ բանակ բազմամբոխ 'ի մեծ և յանհնարին վտանգ ըմ-

թըռնեալ դոցա : Զնոյն հաւասար կիրս և մարտիկքն 'ի նաւուն կրէին, մինչև յետ երկար և յամառ ծովամարտին զօրացեալ յաղթութեամբ Սիրակուսացիք և մարտակիցք դաշնաւորք նոցին, և հարեալ զԱթենացիս 'ի պարտութիւն և 'ի փախուստ, և սաստկապէս զհետ պնդեալ 'ի ձայն մեծի աղաղակի հալածական տանէին զնոսա մինչև 'ի ցամաք երկիր : Եւ որոց 'ի նաւական զօրուէն Աթենացւոց չէր խաղացեալ 'ի խորս, ընդ այլ և այլ ճանապարհ հասին և նոքա 'ի ծովափն, անկանել անտի 'ի բանակետղ, յորում ոչ ևս այլաբար հետևակազօրն, բայց միօրինակ միահամուռ ամենեքեան հառաչելով հեծէին, և կէսք զայրագինս 'ի նաւս յօգնականութիւն դիմէին. կէսք 'ի մնացեալ պատուարսն 'ի պահ զգուշութեան. և յոլովագոյն այնոքիկ էին, որք զանձանց փրկութենէ խորհէին : Չեղև ուրեք երբեք նմանօրինակ սրտաբեկ զարհուրանք. նմանագոյնս արդեօք կրեցին որք 'ի Պիւլոս. զի յետ խորտակելոյ նաւաց Լակեդեմոնացւոց՝ նոյն կորուստ առաջի կայր արանցն՝ որք անկան 'ի կղզին. ուր և արդ չէր յոյս Աթենացւոց ընդ ճանապարհ ցամաք երկրի ապրեցուցանելոյ զանձինս. բայց եթէ հրաշալի ինչ դէպ անսովոր յաջողէր նոցա զայն :

ՀԲ. Յետ ահագին նաւամարտին և կորստեան նաւաց բազմաց և կոտորածի մարդկան աստի և անտի. Սիրակուսացիք և նիզակակիցք նոցին յաղթողք ժողովեցին զբեկորս նաւաց, և զանկելոց դիակունս ամփոփեալ դարձան 'ի քաղաքն, կանգնելով նշան յաղթութեան : Իսկ Աթենացիք առ անհնարին աղետիցն ոչ զմեռելոց դիակունսն և ոչ զբեկորս նաւաց մտաբերեցին խնդրել, այլ խորհէին գիշերագնաց վաղվաղակի 'ի չու : Մտեալ Դեմոսթենեայ առ Նիկիաս այսպիսի ինչ առաջի սրար նմա խորհուրդ, հանդերձել լնուլ, աւէր, զմնացորդս նաւաց, և ընդ ծագել առաւօտուն ընդ ելս նաւահանգստին բռնի առնել ինքեանց անցս, քանզի էին տակաւին նաւք պիտանիք 'ի գործ քան զթշնա մեաց, և արդարև էին Աթենացւոց նաւք վաթսուն, ուր-

թշնամեաց յիմնիւ չափ միայն: Հաւանեցաւ Նիկիաս խորհրդոյն, այլ 'ի հրամայելն եղանել 'ի նաւս, երկուցեալ նաւազին, ահաբեկ ընդ պարտութիւնն, և անյոյս 'ի յաղթութիւն՝ անսաստեցին հրամանին, և միաբան գտան ամենեքեան 'ի խորհուրդ դարձի ընդ ցամաք:

ՀԳ. Իսկ Երմոկրատէս սիրակուսացի կասկածեալ ընդ այդ խորհուրդ նոցա, և վտանգաւոր յոյժ համարելով թողուլ մեկնել մեծի բանակի զօրուն ընդ ցամաք, որոց մարթ էր դադար ուրեք գտեալ 'ի Սիկիլիա՝ կրկին բորբոքել զհրդեհ մարտին. և մատուցեալ առ իշխանս յայտ արար նոցա թէ չէ պարտ թողուլ զԱթենացիս մեկնել գիշերի. յաւելեալ 'ի սոյն և զպատճառն, և թէ խորհուրդք իւր էին փութալ Սիրակուսացւոցն և դաշնաւորօք առնուլ զանցս ճանապարհին և հասեալ կանուխ զգուշանալ կրճիցն: Թէպէտ համամիտք էին 'ի նոյն խորհուրդս և իշխանքն, այլ դժուարին յոյժ էր յետ մեծի նաւամարտին յուրախութիւն և 'ի հանգիստ անձնատուր զականելոց մարդկան հրաման տալ. և մանաւանդ 'ի տօնին, զի դէպ լինէր յաւուր յայնմիկ զոհս Հերակլեայ զոհել, յորում առ հըրճուալից խնդութեան 'ի պատճառս յաղթութեան՝ 'ի գիներբուս լինելն, մարթ էր յամենայն ինչ այլ հաւանեցուցանել զնոսա, բայց ոչ զէն առնուլ և ըստ քաղաքն ելանել: Եւ իբրև 'ի սմին յայսմ խորհրդի յանհնարս մտանէին իշխանքն, և չէր Երմոկրատեայ բան բաւական 'ի յորդոր, յայլ ինչ եւս հնարից ձեռն էարկ առ 'ի զառաջս առնլոյ Աթենացւոց, զի մի փութացեալ անցանիցեն գիշերաւ ընդ դժուարուտն անարգել, 'ի նուեմանալ աւուրն յղեաց զոմանս 'ի մտերմաց իւրոց և հեծեալս 'ի բանակն Աթենացւոց, որոց մօտ եկեալ 'ի տեղին, ուստի մարթ էր լսելի առնել նոցա և ձայն տուեալ առ նոսա մտերմաբար իբրու բանբերք ոմանք զիրաց քաղաքին առ Նիկիաս, ասել առ նա ինքն Նիկիաս, մի գիշերագնաց լինել, զի ունին Սիրակուսացիք զճանապարհն, այլ պարապով 'ի տուընջեան

տուղւոյ լինել: Զայս ասացեալ 'ի բաց սրացան, և որք լւանն ազդ արարին զօրավարաց Աթենացւոց:

ՀԴ. Սոքա, զօրավարքն անկասկած ընդ նենգ խաբէութեան, հանդեան զայն գիշեր. և զի ոչ վաղվաղեցին 'ի Ճանապարհ, հաճոյ թուեցաւ նոցա 'ի միւս վաղիւն թողուլ զչուն, զի ըստ կարի քաջապինդ ևս կազմեսցի զօրն. բարձեալ զկարևոր պարէնք միայն, և զայլն ամենայն թողուլ անդէն: Իսկ Գիլիպպոս և Սիրակուսացիք կանխեալ կալան զօրականօք զամենայն ելս ընդ որ առաջի կայր Աթենացւոց անցանել, կալան և զհունս գետոց և զհեղեղատից, զգուշանալ անցիցն. և ինքեանք զծովեզերբ նաւելով՝ քարշէին ձգէին զնաւս Աթենացւոց, զամենս այրէին. ըստ խորհրդոյ նոցին իսկ Աթենացւոց, և զայլս՝ համարձակ այնուհետև ուր և գտանէին խրեալս, պարապով հանեալ 'ի քաղաքն տանէին:

ՀԵ. Յետ այնորիկ երբև չափ իսկ պատրաստ լինել համարեցան Նիկիաս և Դեմոսթենէս՝ յարուցեալ զզօրն յաւուրն յերկրորդի յետ նաւամարտին, ուղևոր եղեն: Ամենևին իսկ ողբալի էր պայման զօրուն, զնաւացն գումարտակ ամբողջն կորուսեալ ելանէին 'ի Ճանապարհ. փոխանակ մեծի յուսոյն, զանձանց և զքաղաքին փրկութիւն 'ի վտանգ անհնարին արկեալ. այլ և 'ի ժամու անդ թողլոյ զբանակն, տեսիլ դառնագին ցաւոց զիւրաքանչիւր զաչս և զմիտս հարկանէր: Դիակունք մեռելոց անթաղք, և որ տեսանէր ոք յիւրոց անտի 'ի կարևոր մերձաւորաց տապաստ յերկրի, 'ի թախիծ տխրութեան և յահ երկիւղի ըմբռնէր. և որոց դեռ ևս շունչ 'ի ռնգունս էր խոց վիրաւոր կամ հիւանդ, ողորմագին ևս տեսիլ յաչս այլոց, և թշուառագոյն քան զմեռեալս երևէր: Որ ողորմուկ կոծկոծանօք ընդ երկիր սողալով՝ 'ի վարանս տարակուսի զզօրն արկանէին, 'ի պաղատանս ուժգին, ածել զնոսա ընդ իրեանս, յանուանէ կարդալով զիւրաքանչիւր զընտանին և զբարեկամ. և որք զվրանակից զինուորակցացն կառուեալ

կախեալ՝ որչափ զօրութիւն էր 'ի նոսա վհէտ չաւոյն գնային. և որոց խրախոյս և կամ կար զօրութեան պակասէր, 'ի հեծեծանս և յանէծս դառնացինս լքեալ թողուլին. մինչ զի արտասուալից ցաւօք և տագնապաւ հեռանայր զօրն յերկրէն, թէպէտ յերկրէ թշնամւոյ, թէպէտ յորում բազում չարակրութեանց տարան, քանզի յանէրևոյթ ապառնին 'ի սպառնացելոց աղետից անտի առաւել ևս խիթալով երկնչէին: Ընդ կորանոն և բազմադիմի կշտամբանք դառնութեան առ միմեանս լսելի լինէին: Թուէր տեսանել քաղաք մի պատերազմաւ առեալ, և բազմամբոխ ժողովուրդ նորին փախստեայ գնացական. զի ոչինչ պակաս քան չորս բիւր մարդկան 'ի չու էին, բառնալով իւրաքանչիւր զիւր կարևոր կարասին. եթէ սպայ էր, և եթէ ասպետ՝ թէպէտ և ընդ զինուք ծանրաբեռնեալ՝ բառնայր և զիւր պարէն անսովոր. կէսք առ 'ի չգոյէ սպասեկաց. այլք առ անվստահութեան 'ի նոսա, որք 'ի բազմաց հետէ սորսորեալ գնային և առաւել իսկ յայնժամ. յորում չէր կերակուր բաւական, և ոչ ցորեան պարենի: Ուր յայլ ամենայն վիշտս նեղութեան, կցորդութիւն չարեաց հնարաւոր ընդ բազմութեան՝ ամօքեալ թեթևացուցանել թուի զաղէտսն, այլ աստ յառաջիկայ հանդամանս իրաց ոչ ևս նոյնպէս. որ 'ի մեծապայծառ և 'ի փառաւորագոյն սկսուածոյն յայս անփառունակ կատարած անարգութեան խոնարհէր: Զի չեհաս երբեք քան զայս արկած մեծ հելլենական զօրուն. որոյ 'ի ծառայեցուցանել զայլս եկեալ, ահի-խուճապէր չանկանելոյ 'ի նոյն. և փոխանակ բարեգուշակ ուխտից մաղթանաց, և պատերազմիկ Պէանական երգոց՝ որով ուղղոյ լինէր անտի, այժմ 'ի հակառակէն՝ աղէտաւոր կականմամբ տեղի տայր. փոխանակ հզօր նուաստորմբ հետի գնացք, 'ի մկունդ և յասպար ապաւինեալ: Նա այս ամենայն աղէտք չարեաց մօտալուտ առ սպառնացեալ վըտանգին՝ տանելիք թուէին յաչս նոցա:

ՀԶ. Տեսեալ Նիկիա յանհնարին յեղափոխութեան

իրաց սրտաբեկ զզօրն, շուրջ եկեալ զնոքօք ըստ ժամունելոյ քաջալերեալ մխիթարէր զնոսա. և առ կարի փութոյ յօժարութեան՝ ձայն բարձեալ և զյոյժ իսկ հեռաւորս խրախուսեալ սփոփէր կամէր:

ՃԷ. «Եւ յայսմ իսկ պայման բախտին, ո՛ Աթենացիք և զինուորակիցք մեր, չէ պարտ կորուսանել մեզ զյոյս. զի 'ի չարագունէն քան զայս ապրեցան երբեմն մարդիկ. և մի կարի անգոսնեալ եպերել զանձինս արկածիւքս և անարժան չարակրութեամբք: Ես ինքնին՝ ոչ կորովութեամբ մարմնոյ քան զոք 'ի ձէնջ առաւելեալ, այլ տեսէք յորում կամ ակարութեան խօթութեամբս. և ոչ 'ի հանգիստապատիւ պայման կենացս յետնեալ քան զոք 'ի բարեբախտութեան, և սակայն ընդ չուառագունին 'ի վտանգ հնարաւոր ըմբռնեալ կամ այսօր. որ ըստ օրինաց բազմօք բարեպաշտեալ առ դիս, և արդարութեամբ գնացեալ առ մարդիկ անարատ: Վասն որոյ յոյս անվկանդ քաջալեր է ինձ յապառնին, թէպէտ և տարապարտ աղէտքս երկեցուցանիցեն զիս, այլ ընդ հուպ աներկեայ դադար առնուցուն. զի շատ իսկ բարեբախտ գտան թշնամիք. եթէ և արշաւանօք զինուորութեանս առեալ ինչ և հակառակ ումեք 'ի դից գործեցաք՝ մեծապէս կրեցաք զպատիժ պատուհասին: Եղեն և յառաջ քան զմեզ, որ զէն 'ի ձեռին արշաւեցին յերկիր օտար. փոխանակ զի մարդկաբար յանցեան՝ կրել կրեցին պատուհաս, այլ ոչ անհանդուրժելիս: Արդ 'ի դէպ է և մեզ ակն ունել հաշտ 'ի մեզ այսուհետև ակնարկելոյ դից. զի գթութեան եմք 'ի նոցանէ արժանաւորք քան բարկութեան և ցասման: Հայեցարուք 'ի ձեզ, քանի՛ բազմութիւն է ասպարազէն դասաւորայց, որպէս յօրինեալք, կարգեալք 'ի ռազմ և 'ի չու. և մի խստառ ահաբեկ զարհուրիցիք: Դիք 'ի մտի, զի ո՛ւր և դադար առնուցումք, անդէն կազմիցեմք մեզ քաղաք հզօր, և ոչ մի 'ի քաղաքաց Սիկիլիոյ ժուժալ կարիցէ ընդդէմ արշաւանից. և կամ 'ի կայից ձերոց խախտել զձեզ: Զգուշացարուք զի անքոյթ և ըստ օրինին բա-

վեկարգ լիցէ չաւդ. ոչ ինչ այլ գնելով իւրաքանչիւր 'ի մօտ, բայց եթէ յորում և վայրի սախոլիցի ոք 'ի կռիւ, նոյն հայրենիք լիցին նորա, նոյն և պատուար և պարիսպ: Փութով պնդութեամբ զտիւ և զգիշեր մեծարշաւ լիցի Ճանապարհըս, զի կարճեալ են պարէնք. և հասեալ միանգամ 'ի քաղաք ուրէք յերկրին Սիկիլիացւոց, որք առ երկիւղի Սիրակուսացւոցն դեռ ևս հաստատութեամբ են ընդ մեզ, անդ ուրեմն աներկեան կալջուք զանձինս: Կանխեցէք ուրեմն յղեալ աղդ առնել նոցա, գալ մեզ ընդ առաջ համբարովք: Համայն ասել. արիանալ ձեզ պէտ զօրականք քաջք. ուր 'ի մեղկանալդ չիք ձեզ տեղի ապաստանի և փրկութեան. որ եթէ ապրեսջիք միանգամ 'ի թշնամեաց, հասնիցէ ձեզ ամենեցուն զցանկալիս տեսանել. և դուք Աթենացիք, յարուցեալ յառին կալջիք զմեծ զօրութիւն քաղաքիդ զխախտեալն. զի մարդկամբ կայկային քաղաքք, և ոչ պարսպօք և նաւօք թափուր 'ի մարդկանէ »:

ՀԸ. Այսպէս խրախուսեալ Նիկիայ զիւրսն՝ ընթանայր ընդ կարգս զօրուն. եթէ ուրէք ցրուեալս զնոսա և ոչ ըստ օրինի կարգին գտանէր, ածէր 'ի ռազմ. ոչ ինչ նուազ և Դեմոսթէն նմանօրինակ ուղղէր բարբառ առ իւրսն: Ցառաջէր գունդն Նիկիայ չորեքկուսի երկայնաձև տողեալ, գայր զհետ և Դեմոսթենեայն՝ զկարասէկիր և զռամիկապառ ամբոխ զօրուն 'ի միջի ասպարաւոր սպառագունդ ընտրելոցն պատսպարեալ: Իբրև հասին նոքա 'ի հուն գետոյն Անապայ, տեսին անդ հատուած մի 'ի Սիրակուսացւոց և 'ի դաշնաւորաց նոցուն, զորս և վանեալ անցին ընդ գետն և յառաջէին 'ի Ճանապարհ. այլ հեծելազն սիրակուսացի մօտ ձիավարելով յաջ և յահեակ շրջան առնոյր զնոքօք, և զօրն մեկնակաղէն արգնընկեց նեղէր զնոսա: Ցառաջեալ Աթենացիք յաւուր յայնմիկ ասպարէսս իբրև քառասուն, զտեղի առին գիշերել առ բլրով միով. և 'ի վաղիւն ընդ լուսանալ աւուրն յարուցեալ հասին այլ ևս ասպարէս քսան, և իջեալ 'ի դաշտավայր ուրեք զակիշ

ածեալ նաւսն. և զի մարդաշնակ էր տեղին՝ խորշեցան առնուլ անտի ինքեանց պարէնս, բառնալ և զջուր, զի անտի և անդր ընդ երկարաձիգ ասպարէսն՝ ընդ որ անցանել էր նոցա, չէր առատութիւն ջուրց: Մինչ այս մինչ այն՝ հասեալ կալան Սիրակուսացիք զանցս Ճանապարհին. բլուր էր սա քաջամուր, սատխ և անտի ձորք դաշավէժք, և անուն տեղւոյն Ժայռք Ակրէոնի: Եւ յաւուրն երկրորդի 'ի յառաջել Աթենացւոց յուղին՝ այրուձին Սիրակուսացւոց և աղեղնաւորք և դաշնաւորաց նոցա ամբոխ՝ նետս 'ի նոսա ցնդելով և չուրջ ձիարձակ լինելով խափանէին զչուն: Գիմամարտեալ ընդ սոսա երկար՝ Աթենացիք դարձ 'ի բանակն իւրեանց արարին. բայց երթայր և պակասէր նոցա կերակուր, զի ոչ ևս այլ համարձակէին յերեսաց հեծելազօրուն խոտորել ընդ արտորայսն:

հԹ. Ի վաղւին յառաջօտուն ամբարձեալ ելին 'ի Ճանապարհ, հասանել անկանել 'ի բլուրն ամրացեալ. և գտին 'ի հանդիպոյ 'ի վերոյ քան զպատնիշափակն տողեալ զհետևակազօրն 'ի խորութիւն ոչ սակաւ, զի անձուկ էր տեղին: Յարձակեցան Աթենացիք 'ի վերոյ, այլ 'ի դիմել ամբոխ Թշնամեաց 'ի բարձուէ զառ 'ի Թափ բլրոյն, և 'ի բախել ընդ նոսա արխաբար, ակարացեալ ընդդէմ նոցուն ժուժկալել՝ ընկրկեալ զկայ առին: Դէպ եղեն յայնժամ որոտմունք և տարափ անձրևաց, որպէս սովոր է լինել մերձ 'ի մուտս աշնայնոյ, ընդ որ առաւել ևս լքան Աթենացիք, համարելով զայս ամենայն նշան չարագուշակ կորստեան իւրեանց: Ի կալ մնալ նոցա անդանօր՝ արձակեցին Գիլիպպոս և Սիրակուսացիք հատուած մի զօրականի, ամբառնալ այլ ևս նոր պատնէշ ընդ 'ի Թիկանց ընդ որ անցեալ էր նոցա: Հատուածեալ և Աթենացւոց յիւրեանց անտի զօրս՝ արգելուին զչինուածն. և յետ այնորիկ համագունդ մեկնեալ 'ի դաշտավայրն կոյս, և անդ ագան զայնգիշեր: Ի վաղւեն յելանել նոցա վերստին 'ի չու, ամենուստ պատեալ զնոսա Սիրակուսացիք չուրջանակի, զբազումս 'ի նոցանէ

խոյս վիրաւորս տանէին: Ի յարձակել Աթենացւոց ընդդէմ նոցա՝ նոքա յետս ընկրկէին, և 'ի նահանջելն վերստին դարձ 'ի նոյն առնելով 'ի վերայ վերջապահ գնդին անկանէին, և զոմանս 'ի նոցանէ կրճատելով, զահ երկիւղին զբոլոր բանակաւն սփռէին: Զգէմ կալան Աթենացիք ընդ երկար նորօրինակ պատերազմիս. և յետ յառաջելոյ ասպարէս հինգ կամ վեց՝ հանգեան 'ի դաշտավայրին, հետացան և Սիրակուսացիք 'ի նոցանէ 'ի բանակս իւրեանց:

Գ. Մինչդեռ յայս աղէտաւոր պայման էր բանակ զօրուն և պակասէր նոցա պարէն կերակրոյ, և 'ի սաէպ յարձակմանց Թշնամւոյն բազում վիրաւորք լինէին, խորհուրդ կալան Նիկիաս և Դեմոսթէն, խարոյկս լուցեալ գիշերի յոլովս, և ածել զզօրն ոչ ընդ ճանապարհ ընդ որ յառաջագոյն խորհեցան, այլ 'ի ծովակողմն կոյս, հակառակ ուղղոյն զոր Սիրակուսացիք պահէին: Այս ճանապարհ՝ զոր ունել խորհէին Աթենացիք, ոչ ընդ Կատանէ, այլ ընդ այլ կողմն Սիկիլիոյ ածէր զնոսա ընդ Կամարինէ և ընդ Գելա և ընդ այլ քաղաքս Հելլենաց և բարբարոսաց կղզւոյս. և վառեալ նոցա զխարոյկսն, յարեան գիշերի 'ի չու: Եւ անկաւ 'ի զօրն ահ երկիւղի, որպէս սովոր է, մանաւանդ մեծի բանակի, յորժամ ոչինչ հեռի 'ի Թշնամւոյն ընդ երկիր նոցուն գիշերագնաց լինիցին: Գունդն Նիկիայ որ զգուշանալով օրինաւոր ռազմին խաղայր յառաջոյ, բազում ինչ ճանապարհ հատանէր. իսկ Դեմոսթենեայն՝ կիսով և աւելի վայրավատին խաղն 'ի խուռն գնայրն: Ի յարևածագս հասին նոքա յափն ծովուն, և մտեալ 'ի ճանապարհն 'ի Հելորինէ, գնալով գնային մինչև ցգետն Կակիւպարիս. և ընդ երկայնութիւն գետոյն մտեցան 'ի միջերկրայս կղզւոյն, յուսով հանդիպելոյ անդանօր Սիկելացւոց՝ զորս առաքեալ կոչեալ էին: Գտին անդ առ գետովն գունդ մի պահնակ Սիրակուսացւոց չերտաւորօք փակելով զհուն գետոյն: Զինու բռնութեամբ անցին ընդ ջուրն, և յառաջեալ հասին յայլ երկրորդ գետ Երինէաս անուն, այս էր ճանապարհ, ընդ որ ուղեցոյցք առաջնորդէին նոցա:

ՁԱ. Ի վաղւեն 'ի ծագել առաւօտուն իմացեալ Սիրակուսացւոց և դաշնաւորաց նոցա եթէ մեկնեալ են Աթենացիք, մատուցեալ առ Գիլիպպոս բողոք կալան զնմանէ, զի կամս եթող նա զԱթենացիս փախչել 'ի ձեռաց. և փութանակի զհետ պնդեցան նոցա ընդ ճանապարհ ընդ որ ոչ դժուարին ինչ համարէին. և 'ի ժամ ճաշուն հասին առ նոսա: Եւ իբրև մերձ եղեն 'ի գունդն Դեմոսթենեայ 'ի վերջապահս զօրուն՝ որ յուշիկ գնայր ցիր և խառն 'ի խուռն յետ գիշերային անաւաղմ՝ անկարգ չուոյն, անկան անդէն 'ի վերայ նոցա: Պաշարեալ սիրակուսացի այրուձիոյն անաշխատ զվայրավատին զօրն փակեցին զնոսա անփախուստ: Յառաջագնաց հատուած զօրուն Նիկիոյ հեռի էր 'ի սոցանէ իբրև հարիւր և յիսուն ասպարիսաւ, զի երագէր նա պչուն, համարեալ քաջ՝ եթէ 'ի հանգամանս ժամանակին փրկութիւն զօրուն ոչ 'ի կամաւոր դանդաղանս էր և ոչ 'ի կռիւ, այլ ըստ կարի ճեպել մեծարշաւ 'ի գնացս, և բռնի միայն 'ի կռիւ դալ ակամայ: Դէպ եղև Դեմոսթենեայ մեծագունի և անդուլ աշխատութեան առնել, և անագանեալ 'ի չուն՝ կանուխ ըմբռնել 'ի թշնամեոյն. տեսեալ զՍիրակուսացիս հետամուտս՝ փոխանակ յառաջ վարելոյ զչուն, ընդ վայր ժամավաճառ եղև 'ի կռիւ և փակեալ պաշարեցաւ 'ի նոցանէ, զանձն իւր և զզօրն 'ի տագնապ տարակուսի արկ. քանզի յորմնափակ ուրեք տեղւոջ ըմբռնեալ, որ աստի և անտի ուղի էր և ձիթաստան և ինքն 'ի միջի, նշաւակ եկաց ամենուստ նետից թըշնամեոյն: Զայս ազգ կռուոյ խորհրդով ընտրեցին Սիրակուսացիք քան 'ի մօտոյ բաղուկ առ բաղուկ ընդ յուսահատ մարդկան, յորում քան նոցա՝ Աթենացւոց էր շահ: Քանզի աներկեանք այնուհետև ընդ յաղթութիւնն Սիրակուսացիք և ընդ յաջող ելս՝ խնայէին կենաց իւրեանց, մի վայրապար դնել զայն. և համարէին դիւրեաւ և անջան նուաճել զԱթենացիս 'ի գերութիւն:

ՁԲ. Իբրև զօրն միջոյն նեղաձիգ յԱթենացիս և 'ի մար-

տակւոյս նոցա լինելով. տեսին զնոսա չարալլուկ խոց վիրա-
լից յոգիս ապաստան, քարոզս առ նոսա արձակեալ Գի-
լիպպոս և Սիրակուսացիք և դաշնաւորք նոցին. ձայն
ետուն նախ՝ թէ որ 'ի կղզայնոց յազատութիւն իւր կա-
մեսցի, դարձցի յիւրսն. և դարձան ոմանք 'ի ժողովրդոց.
բայց ոչ բազումք: Ապա յետ այնորիկ պայմանս խաղաղու-
թեան առաջի արարին և ամենայն զօրուն Դեմոսթենեայ
զէնընկէց անձնատուր լինել, խոստանալով չառնել զոք
բռնամահ ոչ 'ի կապանս և ոչ սովու: Եւ անձնատուր ե-
ղեն արք իբր վեց հազար. հանին 'ի դուրս և զամենայն ար-
ծաթ, և արկին 'ի գոգս վահանաց լցեալ նոքօք վահանս
չորս, և բարձեալ տարան 'ի քաղաքն: Իսկ Նիկիաս և զօրն
որ ընդ նմա, հասին այն օր 'ի գետն Երինէոս. և անցեալ
ընդ այն նստան 'ի տեղւոջ ուրեք բարձու:

ՁԶ. Ի վաղիւն հասեալ Սիրակուսացիք և 'ի վերայ Նի-
կիայ, բանագնաց եղեն առ նա՝ եթէ գունդն Դեմոսթե-
նեայ վաղ իսկ անձնատուր լեալ, զնոյն և նմա մնայ առնել:
Որոց անհաւատ լեալ Նիկիաս՝ հրամանաւ առ 'ի նոցանէ
արձակեաց հեծեալ մի ստուգել զիրսն. որ իբրև դարձ ա-
րարեալ զնոյն հաստատեաց, յղեաց յայնժամ Նիկիաս առ
Գիլիպպոս և առ Սիրակուսացիս 'ի խաղաղութիւն՝ խոս-
տանալով յանուն Աթենացւոց հատուցանել զամենայն
ծախս պատերազմին, միայն զի թողցեն զօրուն 'ի բաց գնալ
ազատ. և մինչև ցհատուցումն արծաթոյն տալ նոցա յԱ-
թենացւոց պատանդս ընդ միոյ միոյ տաղանդաց մի մի այր:
Բայց Սիրակուսացիք և Գիլիպպոս մերժեալ զայս առա-
ջարկ նորա, վերստին յարձակեցան 'ի նոսա, և պաշարեալ
զնոսա՝ զօրն ցերեկ նետս 'ի նոսա հոսէին: Խոնջ և տօթ և
չարալլուկ յերեսաց սովու և չքաւորութեան ամենայնի.
սակայն և այնպէս ժուժկալեալ մնացին հանգստեան գի-
շերոյ՝ անկանել վերստին 'ի ճանապարհ. այլ իբրև 'ի զէն
փայլին և 'ի չու, զգացեալ զայն Սիրակուսացւոց՝ հնչեցու-
ցին զՊէանեան երգս պատերազմի: Տեսեալ Աթենացւոց

թէ ոչ ծածկեցաւ այն, նստան վերստին, բաց յերից հարիւրոց արանց՝ որոց ճանապարհ արարեալ ընդ պահանորդ զօրն զէն 'ի ձեռին, գնացին գիշերաւ ո՛ւր և գնացին։

ՁԴ. Ի ծագել աւուրն խաղացոյց Նիկիաս զզօրն 'ի չու. և Սիրակուսացիք հանդերձ դաշնաւորօք ըստ առաջնոյ օրինակին նետս 'ի նոսա ձգելով, չուային նոցա թոյլ և հանգիստ։ Աճապարեալ Աթենացիք հասին 'ի գետն Ասինարոս, ոչ միայն զի տագնապեալ նեղէին յերեսաց այրուձիոյն և խուժանի թշնամեաց, այլ և ակն ունէին փոքր մի ոգի առնուլ յայնկոյս գետոյն, միանգամայն առ վշտին ծարաւոյ յարբումն փութային։ Ժամանեալ նոցա 'ի գետն յեղեւելս զմիմեամբք խառն 'ի խուռն դիմեցին 'ի հուն անցիցն, այլ հետամուտ թշնամին դժուարին գործէր նոցա զայն։ Ստիպեալ սոցա յայնժամ խմբովին գրոհ տուեալ, և զմիմեամբք խռնեալ զիրեարս կոխոտէին. և 'ի զինուց և 'ի կահուց կարասեաց ոմանք առեալք՝ կէսք առ տեղի կոտորէին, այլք սահեալ գետավէժ լինէին. և Սիրակուսացիք 'ի հանդիպակողմն ջրոյն 'ի զառ 'ի վայր կողս ափանցն ճակատեալ՝ 'ի վերուստ նետս յԱթենացիս տեղային. յորոց բազմութիւն յանյագ արբումն 'ի սակաւաջուր գոգեալ յատակ գետոյն խռնեալ զեռային։ Իսկ Պելոպոնեսացւոց իջեալ 'ի խոնարհ, զամենեսեան 'ի ջուրս գետոյն խողխողէին. թէպէտ և ապաւեղեալ ապականէր ջուրն, սակայն և այնպէս 'ի վերայ ակախառն՝ արիւնաշաղախ ջրոյն մրցմամբ կռուէին։

ՁԵ. Ի վախճանի իբրև դիզեալ բարդէին զիակունք 'ի յատակ գետոյն, և զօրականն՝ էր որ 'ի գետեզերսն, և էր որ ցիր աստանդական վարատէր յերեսաց հեծելազօրուն 'ի սպառասպուռ կորանս, անձնատուր եղև Նիկիաս 'ի ձեռս Գիլիպպեայ՝ 'ի նա առաւել քան 'ի Սիրակուսացիս վստահացեալ. և 'ի կամս Լակեդեմոնացւոց յանձն եղև՝ առնել ընդ ինքն զոր և հաճոյ իցէ նոցա, խնայել միայն զօրուն և դադարել 'ի կոտորածէն։ Հրաման ետ յայն-

ժամ Գիլիպպոս 'ի գերութիւն վարել զմարդիկն, զորս ոչ կարացին թաքուցանել Սիրակուսացիք, որոց բազում յոյժ էր թիւ, և ածին զամենեսեան ողջամբ. խնդրակս արձակեցին հետամուտս և զկնի երից հարիւրոց զերծելոցն գիշերաւ, կալեալ ածին և զնոսա: Եւ միահամուռ մարդագերին՝ որոց գինք հատան 'ի գանձս հասարակաց, ոչ բազում ինչ եղև. զի յոլովք այնք էին՝ որք գողացեալ ծածկեցան, և լցաւ նոքօք Սիկիլիա ծայր 'ի ծայր. զի ո՛չ որպէս ոյք ընդ Դեմոսթենեայն՝ պայմանաւ անձնատուր եղեն նոքա: Ոչ սակաւ էր և անկելոց թիւ, զի մեծ եղև ծախումն զօրուն քան յամենայն պատերազմունս. քանզի և 'ի ստէպ յարձակմունս անդ թշնամեաց 'ի չու նահանջին՝ ամբոխ բազում կոտորեցան 'ի նոցանէ: Այլ և ոչ սակաւք փախըստեամբ զերծան. ոմանք անդէն առժամայն, և այլք յետ այնորիկ թափելով զանձինս 'ի ստրկութենէ, 'ի Կատանա անկեալ ապրեցան:

ՁԶ. Ժողովեալ Սիրակուսացւոց դաշնաւորօք հանդերձ զկապուտ աւարին և զմարդագերին՝ դարձան 'ի քաղաքն: Զգերութիւնն իջուցին 'ի քարահատս, յորում անքոյթ համարէին 'ի պահ, և զՆիկիաս և զԴեմոսթենէս փողոտեցին հակառակ կամաց Գիլիպպեայ. զի Գիլիպպոս 'ի վերայ այլոց ամենեցուն վաստակոցն, գեղեցիկ նահատակութիւն համարէր՝ առեալ ածել զզօրագլուխս հակառակորդաց իւրոց 'ի Լակեդեմոն: Դէպ լինէր Դեմոսթենեայ վասն արկածից կղզւոյն Սփակտերիոյ և Պիւղեայ ատելի գոլ Լակեդեմոնացւոց. յոր պատճառս և Նիկիաս մտերմագոյն և սիրելի, զի յառաջամիտ էր նա 'ի հաշտութիւն խաղաղութեան և յազատութիւն Լակեդեմոնացւոց գերելոց 'ի կղզւոջն: Վասն այսորիկ ահա սիրելի էր Լակեդեմոնացւոց, որով և ինքն Նիկիաս վստահ անձնատուր եղև 'ի Գիլիպպոս: Այլ 'ի Սիրակուսացւոց ոմանք ասէին, որպէս զրոյցք աւանդեն, որոց գաղտարար բանագնաց լեալ էր ընդ նմա, թէ գուցէ վասն այսր 'ի տանջանս մատուցեալ և 'ի

խոստովանութիւն, խռովեսցի երջանիկ յաջողութիւն գործոյն. և այլք, մանաւանդ Կորնթացիք, զի մի՛ կաշառովք արծաթոյ՝ որովհետև մեծափարթամ էր այն յոյժ, որսացեալ նորա զոմանս և փախիցէ, և դարձցի լինել սատան ընդդէմ նոցա, հաւանեցուցեալ զնիզակակիցս՝ եռուն սպանանել զայրն: Այս էին կամ այլոց նման պատճառք՝ որով 'ի մահ վարեցաւ այրն, որ 'ի Հելլէնս ժամանակին վասն փութոյ բարեպաշտութեան առ աստուածս՝ չէր այսպիսւոյ չարաչար վախճանի արժանաւոր:

ձէ. Զորս 'ի քարահատան էին՝ 'ի սկզբան անդ նեղէին զնոսա Սիրակուսացիք յոյժ՝ յանձուկ խորախորշս երկրի խռնեալ զամենս մարդկան, ուր բացօթեայք արևակէզ տապանային. և 'ի յաջորդել աշնայնոյ փոփոխութեամբ օդոյ ընդ ցրտագին գիշերաւ ախտակրեալք խօթանային, և առաւելուն անձկութեան իւրաքանչիւր զկարիս անձին անդէն վճարելով. նոյն և մեռելոցն դիակունք՝ որոց 'ի խոցուածոց վիրաց, կամ յօդոց անհարթութենէ և կամ յայլ ինչ պատճառաց անկեալ մեռանէին, իբրև զփայտակոյտս անտառաց դիզեալ 'ի վերայ միմեանց մնային. և ընդ անհանդուրժելի գարշահոտութեան և սովալլուկք և ծարաւահիւծք տանջէին. զի զամիսս ութ ընդունէին իւրաքանչիւր ըստ գլխոյ կոտիլ չափ մի ջրոյ, և կրկին կոտիլս ցորենոյ. և զորինչ 'ի դէպ էր վայրանկելոցս յայսպիսի տեղի վշտակրել. չպակասէր նոցա և ոչ մի 'ի չարեաց յայնցանէ: Եւ կացին մնացին այսպէս չեղջակուտեալք զաւուրս եօթանասուն. և յետ այնորիկ բաց յԱթենացւոց և յոմանց 'ի Սիկելացւոց և յԻտալիացւոց զինուորելոց ընդ նոսա՝ այլք ամենեքեան 'ի վաճառ հանան: Թէպէտ զգերելոյն թիւ և զհամար ճշմարիտ հաւաստեաւ ասել, սակայն ոչինչ պակաս գտան կարծեմ քան զեօթն հազար մարդկան: Մեծ եղև զինուորութիւնս այս հելլենական արշաւանիս քան յամենայն պատերազմունս ժամանակին. և ըստ իս՝ քան զոր 'ի լուր ականջաց գիտեմք 'ի գլուխ տարեալ նոցա, յաղթողաց

շքեղ և փառաւոր, իսկ պարտելոց՝ աղիտաւոր: Քանզի ամենևին յամենայնի կորակոր նկունք պարտեալքն, ոչ մի 'ի չարեաց ոչ Թողին՝ զոր ոչ կրեցին, և զի այսպէս ասասցուք, համայնաջինջ եղև կորուստ նոցա: Հետևակախումբ զինուորութիւն, հանդէս գումարտակի նաւաց, և չէր ինչ որ ոչ կորեաւ. 'ի մեծէ ամբոխէ զօրուն նուազունք յոյժ դարձան 'ի տուն: Այս վախճան եղև ահա Սիկիլեան արշաւանին:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Ը ԳՐՈՑ

Ա-Զ. Ընդ գործ արկածից Սիկիլիոյ՝ սաստանել Աթենացւոց և Հելլենաց շարժել աշխարհաւ 'ի վերայ նոցա: Է-ԺԸ. Խլրտումն դաշնակցաց Աթենացւոց յապստամբութիւն և ձեռն տալ նոցա Լակեդեմոնացւոց. խրախուսել զնոսա և Ալկիբիադեայ 'ի նոյն, որով և տարածել հրդեհի մարտին: ԺԹ-ԻԷ. Հարկանել Աթենացւոց զՔիացիս յայլ և այլ պատերազմունս. կրկին նաւածումն Լեսբեայ և Կլազոմենի, խորտակել նոցա և զՄիլետացիս. բայց և երկիցս տեղի տալ առաջի Աստիոքեայ ծովակալ զօրավարին Սպարտացւոց: ԻԸ-ԻԹ. Պելոպոնեսացիք ըստ ուխտի դաշանց եդելոց ընդ արքայից արքայի ձեռն տան Տիսափեռնեայ 'ի մերժել զԱմորկէս բռնաւոր Յասսեայ յաթոռոյն: Լ-ԼԵ. Զօրութիւն նաւաց Աթենացւոց 'ի Քիոս և 'ի Սամոս. Լեսբիացւոց կրկին նշկահել զԱթենացիս, և ուրեք ուրեք մրցութիւնք 'ի մէջ Աթենացւոց և Լակեդեմոնացւոց: ԼԶ-ԽԴ. Նորոգել դաշին Լակեդեմոնացւոց ընդ արքայից արքային, և փոխանակաւ ձեռն տալ իւրեանց 'ի ջախջախումն Աթենացւոց: ԽԵ-ԾԶ. Խորհուրդ Ալկիբիադեայ 'ի կշիռ հաւասարութեան ունել զզօրութիւն մարտադիր Հելլենաց, և բանագնաց լինել նորա ընդ զօրուն 'ի փոխել զվարչութիւն յԱթէնս և դառնալ 'ի հայրենիս: ԾԷ-Կ. Տիսափեռն նորոգ դաշամբ խոստանայ Պելոպոնեսացւոց ածել նոցա յօգնականութիւն զտորմիղ նաւաց Փիւնիկեցւոց. Պելոպոնեսացիք 'ի Միլետոս ամփոփին և Աթենացիք 'ի Սամոս: ԿԱ-ՀԱ. Սակաւուց իշխանութիւն 'ի դաշնաւորս Աթենացւոց և յԱթէնս. արհաւիրք հասարակաց, լուծումն սահմանադիր ժողովոյն և ատեան Զորեքհարիւրոց բռնաւորաց, որոց հրաւիրմամբ փորձ փորձել Ագիսայ արքայի առնուլ զԱթէնս: ՀԲ-ՁԲ. Միաբանել բանակի զօրուն Աթենացւոց որ 'ի Սամոս՝ ընդդէմ Զորեքհարիւրոց 'ի քաղաքին. Ալկիբիադ զօրավար ընտրի նոցին և սանձէ զզօրն յուզեալ ընդդէմ Զորեքհարիւրոցն՝ չճեղքել զզօրութիւն քաղաքին առանձին պատերազ-

մաւ: ՋԳ-ՋԸ. Տրտունջ Պելոպոնեսացւոց զդանդաղ գնացից Աստիո-քեայ ծովակալիշխանին և ընենգութենէ Տիսափեռնեայ. և ապստամ-բութեամբ զօրուն փոխանակել Մինդարեայ 'ի ծովակալ իշխանու-թեան: ՋԹ-ՂԸ. Անմիաբանութեամբ 'ի սակաւիշխանս յԱթէնս որոշել'ի նոցանէ Թերամենեայ՝ խորհելով փոխել զբռնաւորսն, և յերևել նաւախմբի Թշնամեաց 'ի Սալամինա, սասանել Աթենացւոց զՉորեքհարիւրոցն վարչութիւն 'ի խառն իշխանութիւն փոխեն, հրաւի-րելով զբանակն Սամեայ 'ի սէր միաբանութեան: ՂԹ-ՃԹ. Քանի մի ևս յետ աննշան պատերազմաց յանկարծ չկայ առնու ընթացք պատ-մութեանս, 'ի վերջ ձմերայնոյ 'ի լրանալ քսաներորդի և առաջ-նոյ ամի Պելոպոնեսական պատերազմին:

# ԳԻՐՔ Ը

Ա. Իբրեւ լուր եղեւ բանն յԱթէնս՝ չկարէր ոք հաւատս ընծայել ընդ այնպիսի ապառասպուռ ջախջախանս, զի և ոչ իսկ 'ի հաւաստի վկայութենէ փախստէիցն յաւագաց անտի զօրուէն ճշմարտել զայն ախորժէին: Այլ իբրեւ 'ի վերայ կացին իրացն հաստատութեամբ, սրտմտեալ զայրանային ընդդէմ հռետորացն, որք յոյս արշաւանս զնոսա խրախուսեցին, որպէս եթէ չէր նոցա միաբան հաւանութեամբ զայն վճռեալ. ցասուցեալ և 'ի վերայ պատգամախօսացն կիւսից, և բոլորից իսկ՝ որք որպէս յաստուածակոյս կողմանէ յաշխարհակալութիւն Սիկիլիոյ զնոսա յուսացուցին: Ամենուստ լի թախիծ տրտմութեամբ, ահ անհնարին պաշարէր զնոսա. զի ամենայն ոք և համայն քաղաքն ողջոյն գաւառացեալ հեծէր ընդ կորուստ բազմութեան սպայագունդ զօրուն, հեծելազին և արբուն հասակին, զորոց չէր այլ ևս տեսանել զհաւասարն. չէրևէին 'ի նաւարանս գումարտակք նաւաց, ոչ արծաթ 'ի հասարակաց գանձուն, ոչ նաւազն 'ի պէտս նաւատորմի, ամենայն իսկ յոյս փրկութեան բարձեալ 'ի նոցանէ. և ժամ 'ի ժամէ մնային երկիւղիւ արշաւելոյ թշնամւոյն 'ի Սիկիլիոյ և երեւելոյ նոցա 'ի Պիրէոն, մանաւանդ յետ այնքանոյ մեծի յաղթութեան. և որ առ դուրս մօտ թշնամիք էին՝ և հզօրագոյն ևս բազմապատիկ պատրաստութեամբ գալ հասա-

նել 'ի վերայ նոցա, և զդաշնաւորսն ուծացեալս՝ սարտու-
ցեալս և 'ի Թշնամիս անդր յաւելեալս։ Բայց և այնպէս
ըստ ժամուն ներելոյ և ըստ զօրութեան նոցա սրտապըն-
դեալք՝ չխոնարհել ամենևին, չտալ տեղի ընաւ, կազմել
նաւս՝ ուստի և հնար լիցէ հայթայթելով ատաղձ և արծաթ.
միտ դնել, զգուշանալ դաշնաւորաց՝ մանաւանդ Եւբէոյ.
և զգօնացեալ չափ դնել հասարակաց ծախուց, և 'ի ծե-
րունեաց անտի կազմել ժողով մի՝ ըստ հանգամանաց ժա-
մանակին 'ի վարչութիւն և 'ի յանձանձանս աշխարհին։
Եւ զամենայն ըստ այնր ժամու երկիւղին՝ որպէս սովոր է
առնել ժողովուրդն, պատրաստք և յօժար 'ի բարեկար-
գել, և որպէս ինչ հաճոյ Թուեցաւ՝ 'ի գլուխ տարեալ կա-
տարեցին. և վախճան եղև ամարայնոյս։

Բ. Ի գալ ձմերայնոյ խռախուսեալ Հելլէնք ձախող ար-
կածիւքն Աթենացւոց 'ի Սիկիլիա՝ մեծայոյս գլուխ ամբառ-
նային. և որոց չէր ցայնժամ ոչ յոյս և ոչ յայն կողմն
միտեալ, ոչ ևս այլ այնուհետև իմաստութիւն համարէին
հանդիսատես կռուոյն լինել, և առանց իսկ կոչոյ հրաւիրի
ինքնակամ զհակառակողմն Աթենացւոց ընտրէին, հաւա-
նեալք ամենեքին՝ զի եթէ յաջողէր նոցա 'ի Սիկիլիա, աներկ-
բայ 'ի վերայ միոյ միոյ 'ի նոցանէ ունէին նոքա գալ. և զի
հաւատային ընդ հուպ վախճան լինել պատերազմին, վասն
որոյ և կարի շահաւէտ բաժանորդ նմին գտանել։ Իսկ դաշ-
նաւորք նիզակակիցք Լակեդեմոնացւոց առաւելեալք 'ի
նախանձ միաբանութեան՝ ակն ունէին վաղ ընդ փոյթ զեր-
ծանել 'ի ծանրատաղտուկ աղետից աստի պատերազմին։
Եւ որ ընդ ձեռամբ Աթենացւոց ժողովուրդք հարկատուք՝
առանց ինչ կշռելոյ զիւրեանց ակարութիւն, պատրաստք
էին ընկենուլ զլուծ նոցա. զի յեռանդան անդ և 'ի յոյզս
խորհրդոց, ոչ ևս այլ հնարաւոր կարծէին գտանել զօրա-
նալ Աթենացւոց յամարանիս 'ի յաղթութիւն։ Նոյն ինքն
և քաղաքն Լակեդեմոնացւոց ամենեքումբք այսոքիւք առա-
ւելոյր 'ի խրախոյս. և զի դաշնաւորք նոցա 'ի Սիկիլիա ամ-

բարձեալք 'ի հզօր զօրութիւն նաւական, 'ի բանալ դրանց գարնայնոյ գային անտարակոյս յօգնականութիւն նոցին։ Եւ այսպէս բարեյոյս ամենուստ տալպատերազմ հաստատութեամբ անպատճառ, յորում և բարուոք վախճան տալով՝ զերծանել իսպառ յերեսաց անտի վտանգաց, զոր աչխորհակալութեամբ Սիկիլոյ սպառնային Աթենացիք. զորս և բեկեալ քակեալ գլխովին՝ ինքեանց ծայր այնուհետև Լակեդեմոնացւոց աներկեւան գլուխ և առաջնորդկալ բոլորից Հելլենաց։

Գ. Վաղվաղեաց և Ագիս արքայ 'ի սմին իսկ ձմերանի խաղալ զօրու 'ի Դեկալիոյ՝ հանել հարկս 'ի դաշնաւորաց իւրեանց 'ի ծախս նաւատորմղին. և յառաջեալ 'ի նեղուցն կոյս Մելեայ, առ վաղեմի ատելութեան աւար առնոյր զԻտէացիս և հարկս հանէր 'ի նոցանէ. առիպէր և զԱքայեցիս և Փթիովտացիս և զայլ ժողովուրդս հպատակս Թեսաղացւոց, յականայս տեարց նոցա և բողոքոյ՝ պատանդս տալ և հարկս արծաթոյ. և առեալ նստուցանէր զպատանդսն 'ի Կորնթոս, և հնարէր ձգնէր 'ի մարտակցութիւն զժողովուրդսն հաւանեցուցանել։ Պատուէր ետուն Լակեդեմոնացիք և դաշնաւոր քաղաքանւոյն գումարտակս նաւաց կազմել հարիւրոց. Բիովտացւոց նաւս քսանևհինգ. նոյնաթիւ և ինքեանք պատրաստէին Լակեդեմոնացիք. իսկ Փովկեացիք և Լոկրիացիք՝ հնգետասան. Կորնթացիք նոյնպէս հնգետասան. Արկադացիք, Պելենացիք և Սկիոնացիք՝ տասն. Մեգարացիք, Տրեզենիացիք, Եպիդաւրացիք և Հերմիոն՝ տասն. պատրաստէին և զայլ ամենայն կարևոր հանդերձանս, 'ի սկիզբն գարնայնոյ ելանել անյապաղ 'ի կռիւ։

Դ. Ըստ խորհրդոյն՝ զոր խորհեցան, պատրաստէին և Աթենացիք 'ի նմին ձմերանի, ժողովելով ատաղձս փայտի 'ի կառոյցս նաւաց, և պարսպեալ ամրացուցանէին զՍունիոն յապահովութիւն նպարաւոր նաւաց 'ի պատել նոցա զարիւն. Թողին և զամրոցն զոր յարշաւանս անդ 'ի Սիկիլիա կանգնեալ էր նոցա 'ի Լակոնիա, և զայլ ամենայն

զանօգուտ երևեալ ծախսն կորձեալ հատին. և մին եղեալ
զգուշանային դաշնաւորաց իւրեանց չտալ նոցա տեղի 'ի
լծընկէց ապստամբութիւն:

Ն. Իբրև աստի և անտի կողմանքն երկոքին յայսոսիկ ա-
մենայնի պատաղեալ, յոչինչ այլ՝ բայց 'ի պատրաստութիւն
մերձաւոր պատերազմին խորհէին, յառաջամատոյց եղեն
ահա 'ի ձմերանիս հրեշտակութեամբ Եւբիացիք առ Ագիս
արքայ՝ ձեռն տալ նոցա 'ի վտարանջութիւն յԱթենայւոց:
Որոյ ընկալեալ զառաջարկ խնդրոյ նոցա, եւ առաքել 'ի
Լակեդեմոնէ զԱլկամենէս Սթենելայիդեան և զՄելանթոս
'ի հրամանատարս յԵւբիա: Իբրև եկին սոքա երեքհարիւր
ազատագրելովք, արար նոցա Ագիս անցանել 'ի կղզին. հա-
սին և Լեսբիացիք խորհրդով յետս կալոյ յԱթենացւոց. և
'ի սատարել նոցա յայսմ Բիովտացւոց, հաւանեցաւ Ագիս՝
ժամանակելով զԵւբիացւոյն ձեռնտուութիւն, փութալ
սատարել նախ վտարանջութեան Լեսբիացւոց՝ կարգելով
նոցա զԱլկամենէս առաջնորդ ուղիղ, որում խոստանային
Բիովտացիք նաւս տասն, նոյնչափ ևս և Ագիս՝ անցուցա-
նել զնա յԵւբիա: Եւ այս ամենայն առանց գիտութեան
Լակեդեմոնացւոց քաղաքին գործէր. զի ցորչափ զԴեկե-
լիաւ էր Ագիս ունելով ձեռն հզօր ընդ իւր՝ իշխան էր նա
առաքելոյ զօրս ուր և կամէր. նոյնպէս զօրաժողով 'ի դաշ-
նաւորաց լինել և հարկս 'ի նոցանէ հանել՝ նմա մանաւանդ-
անայն նիշակակիցք 'ի ժամանակին յայնմիկ, որ հզօր բա-
նակաւն ահարկու էր ամենեցուն, քան վարչութեան Լա-
կեդեմոնացւոց քաղաքին: Մինչդեռ ձեռն տայր Ագիս Լես-
բիացւոց, պատրաստք և Քիացիք և Երիթրէացիք յապըս-
տամբութիւն, փոխանակ յԱգիս արքայ դիմելոյ՝ 'ի Լակե-
դեմոն բանագնաց եղեն. ընդ նոսա էր և հրեշտակ Տիսա-
փեռնեայ՝ որ յարքայէն Դարեհէ յորդւոյ Արտաշխի կու-
սակալ էր ստորին գաւառացն, զի ցանկայր Տիսափեռն
խոստմամբ ռոճկի յինքն ձգել զՊելոպոնեսացիս: Եւ դէպ
լինէր 'ի նոյն աւուրս պահանջել արքայի զխափանած

հարկաց իշխանութեան նախարարութեան նորա, զոր 'ի պատճառս Աթենացւոց ոչ կարելով ժողովել Տիսափեռն 'ի քաղաքաց Հելլենաց՝ ընդ պարտուք էր անկեալ: Ի ձախողել արդ իրաց Աթենացւոց և 'ի յաւելուլ զԼակեդեմոնացիս 'ի դաշնաւորս արքայի՝ յուսայր նա դիւրեաւ հաւաքել զտուրս. և զԱմորգէս զհարճորդի Պիսութնեայ զապըստամբեալն 'ի Կարիա՝ ածել կենդանւոյն կամ սպանանել. Այսպէս Քիացիք և Տիսափեռն միաբան եկին 'ի դաշնաւորութիւն:

Զ. Յայնմ ժամանակի և Կալլիգիտոս Լաոփոնեան Մեգարացի և Տիմագորաս որդի Աթենագորայ կիւզիկեցի տարագիրք 'ի հայրենեաց և առ Փառնաւազ Փառնակեան ապաւինեալ, եկին 'ի Լակեդեմոն 'ի դիմաց նախարարին՝ 'ի յորդորել զԼակեդեմոնացիս նաւս յԵլլէսպոնտոս արձակել. զի և Փառնաւազ ըստ օրինակի Տիսափեռնեայ ջանայցէ տալ վտարանջել յԱթենացւոց զքաղաքս՝ որ յիւրում իշխանութեան էին՝ առ տրոց հարկաց. և իւրովանն սատարել 'ի փութացուցանել զարքայ 'ի յօգնականութիւն Լակեդեմոնացւոց: Եւ զի որք 'ի Փառնաւազեայ և 'ի Տիսափեռնեայ պատգամաւորք էին՝ առանձինն զգործ դաշնաւորութեան յարմարել ճգնէին, վասն որոյ և նախանձընդդէմք իրերաց բազմօք մրցէին, սոքա՝ զի 'ի Յոնիանոս և 'ի Քիոս, և նոքա՝ զի յԵլլէսպոնտոս գումարտակ նաւաց և զօր արձակեսցի: Իսկ Լակեդեմոնացիք Քիացւոց մանաւանդ և Տիսափեռնեայ առաւել լսէին, որոց ձեռընտու էր Ալկիբիադ, որդի 'ի հօրէ ժառանգութեամբ ասպընջական և մտերիմ Ենդիոսի Պարեանի. զի և զանուն լակոնական յընտանիս իւր յասպնջականութենէ սորա ընկալեալ, և Ենդիոսի Ալկիբիադեան կոչել: Բայց յղեցին Լակեդեմոնացիք 'ի Քիոս 'ի շրջաբնակաց անտի քաղաքին զՓրինիս ոմն լրտեսել գիտել՝ եթէ ըստ համբաւոյն իցէ՞ և զօրութիւն քաղաքին՝ որչափ ինչ զրուցէինն՝ և նաւաց գումարտակ. և 'ի բերել պատուիրակին զհաւաստիս իրայն.

ստուգութեամբ, ընկալան նոքա անդէն զՔիացիս և զԵ-
րիթրիացիս 'ի դաշնաւորս, և վճռեալ սահմանեցին առա-
քել նոցա նաւս քառասուն, զի ըստ բանից Քիացւոց ոչինչ
պակաս քան զվաթսուն նաւք էին և նոցա: Եւ 'ի քառասու-
նից անտի նաւաց խորհէին յղել նախ զտասունս, և զՄե-
լանկրիդաս իշխան նաւապետ. այլ դէպ լեալ սասանու-
թեան երկրի, փոխանակ Մելանկրիդայ առաքեցաւ Քալկի-
դեւս հնգօք միայն նաւուք 'ի Լակոնիա: Եւ վախճան եղև
ձմերայնոյս և քսանևտասներորդի ամի պատերազմիս, զոր
պատմագրեաց Թուկիդիդէս:

Ն. Ի գալ ամարայնոյ և 'ի փութացուցանել Քիացւոց
զառաքումն նաւաց, երկուցեալք թէ գուցէ յայտնի լիցի
գաղտնութիւն գործոյն, որ զանխուլ յԱթենացւոց նիւ-
թեալ պատրաստէր, արձակեցին Լակեդեմոնացիք զորս
երիս սպարտացիս 'ի Կորնթոս, անցուցանել զնաւսն ան-
յապաղ ընդ պարանոցն 'ի ծովէ անտի 'ի միւսն՝ հանդէպ
քաղաքին Աթենացւոց. հրաման տուեալ և նաւաց՝ որ յԱ-
գիսեայ և որ յայլոց պատրաստեցան յարշաւանս Լեսբեայ՝
խաղալ 'ի Քիոս: Եւ եղեն միահամուռ դաշնաւորաց նաւք
յանդիման կղզւոյս քառասուն՝ մով միայն պակաս:

Ը. Իսկ Կալլիգիտոս և Տիմագորաս պատգամաւորք
Փառնաւազայ չեղեն կցորդք արշաւանիս 'ի Քիոս. և ոչ
ետուն զարծաթն 'ի գուբրս՝ զոր բերեալ էր տաղանդս
քսան և հինգ 'ի հանդերձանս տորմղի նաւաց, և խորհէին
պահել զայն այլում արշաւանի: Իբրև ետես արքայ Ագիս
զԼակեդեմոնացիս 'ի Քիոս նախ արշաւել, 'ի նոյն խոր-
հուրդս և ինքն լինէր. և ժողովեալ դաշնաւորաց 'ի Կորըն-
թոս, հաճոյ թուեցաւ նոցա 'ի Քիոս նախ խաղալ՝ առաջ-
նորդ ունելով իւրեանց զՔալկիդեւս, որ հնգ նաւուք պա-
տրաստ կայր 'ի Լակոնիա. որ և ըստ Ագիսայ խորհրդոյն
առեալ զԱլկիմենէս հրամատար 'ի Լեսբեայ հասանել յԵլ-
լեսպոնտոս, ուր իշխան էր և զօրավար Կլէարքոս Ռամ-
փեան. և զի զկէս միայն նաւատորմղին անցուցեն նախ

ընդ պարանոցն Կորնթեայ՝ իջուցանել 'ի ծով. 'ի նոյն զբաղեցուցեալ զմիտս Աթենացւոց, չլինիցին նոցա պարապ զհետ եկելոցն ուշ ունել: Այսպէս առ հենգն ակարութեան Աթենացւոց, որոց ոչ մի զօրութիւն նշանաւոր 'ի նաւս երեւէր յայնժամ, յայտնապէս զարշաւանս առնէին: Եւ զայս այսպէս սահմանեալ՝ արագապէս խաղացուցին նաւս քան և մի:

Թ. Ի ձեպել փութալ Լակեդեմոնացւոց յայս արշաւանս, դանդաղէին Կորնթացիք ընկերել զինուորութեանս նախ քան զխմբել զԻսթմեան խաղուցն՝ որ դէպ լինէր 'ի ժամանակին: Յօժարէր Ագիս թողուլ ազատ զԿորնթացիս յԻսթմեան դուլ զինուց, շատ է զի յիւր անուն իցէ արշաւանն: Եւ 'ի չհաւանել ընդ այն Կորնթացւոց և 'ի յամել իրացն, զգաստ լեալ Աթենացիք անցիցն անցելոց 'ի Քիոս, առաքեցին զԱրիստոկրատէս զոմն 'ի զօրավարաց բողոք ունել զիրացն. և յուրաստ լինել Քիացւոց՝ հրամայեցին նոցա Աթենացիք տալ նաւս 'ի հաւատ բանից երաշխաւորութեան, և առաքեցին Քիացիք նաւս եօթն: Եւ պատճառք դիւրեաւ զիջանելոյ նոցա առ այս, զի անգէտ էր ռամիկն Քիացւոց վտարանջութեանս. և սակաւուց աւագաց գիտակաց իրին ոչ կամելով 'ի թշնամութիւն գրգռել զժողովուրդն՝ մինչև յառաջագոյն գրաւական ինչ հաստատութեան առ 'ի նոցանէ ընդունելոյ, և զի յամելով Պեղոպոնեսացւոց՝ ոչ ևս այլ ակն ունէին զալստեան նոցա:

Ժ. Եւ խմբեցան 'ի ժամանակիս Իսթմեանքն. ազդւեալ և Աթենացւոց՝ գնացին և նոքա 'ի հանդէս խաղուն, յորում ստուգագոյն ևս 'ի վերայ հասեալ իրացն Քիացւոց՝ խորհեցան 'ի դարձին չթողուլ նաւաց նոցա՝ մեկնել 'ի Կենքրեայ: Յետ տօնին նաւեցին և Պեղոպոնեսացիք քան և մի նաւուք 'ի Քիոս, և 'ի գլուխ զօրուն էր Ալկամենէս: Ելին և Աթենացիք նոյնաթիւ նաւուք ընդդէմ նոցա՝ ձգել զնոսա 'ի խորս. բայց ոչ կամելով Պեղոպոնեսացւոց զհետ գնալ նոցին՝ դարձան ընդ կրունկն յետս, տեղի ետուն և

Աթենացիք. զի չէին վստա̃ք ընդ եօթն նաւս Քիացւոց' որ ընդ նոսա: Այլ ստուարացեալ ապա նոցա յերեսուն և եօթն նաւս, պնդեցան զհետ Պեղոպոնեսացւոց, հալածական արարեալ զնոսա մինչև 'ի Պիրէոն Կորնթեան, որ է նաւահանգիստ ամայի 'ի ծագս սահմանաց Եպիդաւրեայ: Կորուսին Պեղոպոնեսացիք նաւ մի 'ի խորս 'ի բացեայ, ժողովեալ զայլս զամենեսեան' ամփոփեցան 'ի նաւահանգըստին. այլ յարձակեալ 'ի նոսա Աթենացիք ընդ ծով և ընդ ցամաք աղմուկ չփոթի հարին 'ի նոսա, և զբազումս 'ի նաւաց նոցա առ ծովեզերբն խորտակեալ և զիշխան նոցա Ալկամենէս սպանին. Թողին և յիւրեանց անտի զոմանս մեռեալ:

ԺԱ. Ի վախճանի կռուոյս' կարգեալ անդանօր Աթենացւոց նաւս 'ի պահ և յարգել զզուշութեան նաւատորմի Թշնամեաց, մնացելովքն ամփոփեալ ինքեանք 'ի կղզեակ մի ուրեք հեռի անտի' բանակեցան 'ի տեղւոջն, և յղեալ խնդրէին օգնութիւն յԱթենայ: Ի վաղիւ անդր երևեցան Կորնթացիք 'ի մարտակցութիւն Պեղոպոնեսացւոց, ոչ անագանեցին և այլք 'ի մօտաւոր դաշնաւորաց. և տեսեալ զդժուարին աշխատութիւն պահելոյ զգումարտակն յամայոջ անդ' տարակուսեալք էին հնարս խնդրելին: Կամեցան նախ հրձիգ 'ի նաւսն լինել. այլ հաւանեցան ապա հանեալ 'ի ցամաք զնաւսն մօտ առ երկրախումբ բանակին պահել, մինչև յաջողեսցի նոցա փախստեամբ ապրեցուցանել զայնոսիկ: Իրազեկ այսմ Ագիս արքայ առաքեաց առ նոսա զԹերմոն սպարտացի: Բայց վաղ իսկ ժամանէր լուր մեկնելոյ նաւացն Պեղոպոնեսացւոց յԻսթմեայ, զի այսպէս պատուէր տուեալ էր Պարեստաց առ Ալկամենէս, 'ի ձեռն սուրհանդակի հեծելոյ ծանուցանել զայն նոցա. և փութացան արձակել նաւս հինգ պատրաստականս և զՔաղկիդեւս հրամանատար, ընդ նմա և զԱլկիբիադէս. այլ 'ի ժամ չուոյն լուեալ նոցա զփախուստ նաւաց Պեղոպոնեսացւոց 'ի Պիրէոն, և վհատեալք յոյժ' զի ընդ ձեռնարկելն 'ի պա-

տերագմն յոնիական, և խորտակեալ բեկան, ոչ ևս այլ զչուոյ նաւաց խորհէին, բայց եթէ հնար էր և զմեկնեալսն յետս կոչել:

ԺԲ. Իբրև գիտաց Ալկիբիադ զխորհուրդս նոցա, յոր-դորեալ հաւանեցոյց զայս երկրորդ անգամ զԵնդիոս և զայլս 'ի Պարետայ մի յապաղել զչուն, զի մինչև լուեալ Քիացւոց զարկածս նաւացն' մարթ էր գալ հասանել անդր 'ի ժամուն. և թէ ինքնին այց ելեալ 'ի Յոնիա շարժեսցէ դիւրեաւ զքաղաքանին յետս կալ յԱթենացւոց' ցուցա-նելով զտկարութիւն նոցա և զյառաջամտութիւն Լակեդե-մոնացւոց, և թէ քան յայլս յամենեսին դիւրահաւատ ինքեան գտանին: Եւ յաւելոյր թէ քանի փառք էին Են-դիոսի ձեռն տալ 'ի վտարանջութիւն Յոնիացւոց, և դաշ-նաւորել զարքայից արքայն ընդ Լակեդեմոնացւոց. և մի թողուլ Ագիսայ զայս գեղեցիկ մրցանս, քանզի խեթիւ էր նա ընդ ալքայի: Եւ այսպէս հաւանեցուցեալ նորա ընդ այլ Պարէտաս և զԵնդիոս' մեկնեցաւ հնգեքումբք նաւուք ընդ Քաղկիդեայ լակեդեմոնացւոյ, և վաղվաղէր ձեպէր զնաւարկութիւնն:

ԺԳ. Ի սոյն աւուրս դարձ արարին 'ի Սիկիլիոյ վեշ-տասան նաւք Պեղոպոնեսացւոց մարտակիցք Գիլիպպեայ, որոց և հանդիպեալ առ Լեւկադեաւ քանևօթն նաւաց Աթենացւոց և ծովակալին Իպպոկլեայ Մենիպպեան, որ դէտակն կալեալ մնայր վերադարձի նաւաց 'ի Սիկիլիոյ. զմին միայն կորուսեալ այլքն ամենեքեան զերծեալ անկան 'ի Կորնթոս:

ԺԴ. Իսկ Քաղկիդեւս և Ալկիբիադ 'ի նաւարկութեան անդ իւրեանց, որոց միանգամ հանդիպէին 'ի ծովուն' ըմ-բռնեալ զնաս տանէին ընդ իւրեանս, զի մի 'ի վեր ելցէ չու նոցա. և հասեալ 'ի ցամաք երկիր 'ի Կորիկոն, արձա-կեցին զորս կալեալ էին զնաւս 'ի բաց. և ինքեանք երեա-ւորեալք ընդ ոմանս 'ի Քիացւոց 'ի կուսակցաց իւրեանց, և ըստ խորհրդոյ նոցին' առանց ինչ յառաջագոյն ծանօթս

տալոյ գալստեան խերեանց, յանկարծակի երևեցան 'ի Քիոս: Ի զարմացումն և յահ երկիւղի ըմբռնէր ժողովուրդըն. բայց աւագանւոյն կանուխ հոգացեալ զամենայն, և 'ի ժողով գումարեալ զատեան խորհրդոյ. և 'ի բան Գալկիդեայ և Ալկիբիադեայ՝ թէ այլ ևս նաւաց բազմութիւն հասանել ունէին ընդ հուպ, չհանելով 'ի վեր զպաշարումն նաւաց 'ի Պիրէոն, յետս կացին Քիացիք և Երիթրիացիք յԱթենացւոց. և յառաջեալ անտի երիւք նաւուք ետուն վտարանջել և Կլազոմենացւոց. որոց և անցեալ վաղվաղակի 'ի ցամաք երկիր՝ ամրացուցին զարձակավայրն, զի 'ի ստիպել հարկին թողեալ զբնակութիւն կղզեկին՝ անկցին անդր յապաւէն ապաստանի: Եւ ապստամբքն միաշուն միաբան յամրութիւնս պարսպայ և 'ի պատրաստութիւնս պատերազմի պարապէին:

ԺԵ. Լուր եղև վաղվաղակի յԱթէնս ապստամբութիւն Քիացւոց. և տեսեալ Աթենացւոց զինքեանս յայտնապէս 'ի մեծի վտանգի, զի 'ի խլրտել հզօրագունին 'ի քաղաքացն՝ ոչ ևս հանդարտեսցեն այլք 'ի դաշնաւորաց, խորհեցան առ վերահաս երկիւղին լուծանել զխիստ օրինադրեալ վըճիռ հրամանին վասն հազար քանքարաց՝ չմխել 'ի նոսա ձեռն ընդ բովանդակ ամս պատերազմացս. և զի պատուհաս ևս ծանր 'ի վերայ կապեալ որում յանդգնեսցի խօսել զայնմանէ, և կամ ընդ քուէիւք և ընդ խնդրով արկանել զնոյն. որով և եղծեալ զայս ամենայն արգելս, սահմանեցին տալ 'ի գործ զարծաթն 'ի կազմածս և 'ի հանդերձանս նաւաց բազմաց: Հրաման ետուն արձակել ձեպով նաւս ութ 'ի պահանորդաց Պիրէոնի, և որոց ընդ Ստրոմբիքիդեայ որդւոյ Դիոտիմեայ թողեալ էր 'ի պահ զգուշութեան 'ի ծովուն, և յետ վայրապար հետամուտ լինելոյ Գալկիդեայ դարձ արարեալ էր. նոյնպէս և յետ ոչ բազմաց զկնի այլ ևս երկոտասան նաւս ընդ Թրասիկլեայ արձակել 'ի զօրաւիգն, որոց նոյնպէս պարտ էր թողուլ զերթևեկ և զպահ զգուշութեան 'ի ծովուն: Ետուն անել և զեօթն

նաւս Քիացւոց օժընդակս 'ի պաշարումն Պիրէոնի, և զատրուկս 'ի նոսա արձակեալ, և զաղաստ 'ի չղթայս արկին: Եւ փոխանակ ամենեցուն սոցա նաւացն կոչեցելոց յետս՝ զայլս փոխանակ կարգեցին փութով 'ի զգուշութիւն յերեսաց Պելոպոնեսացւոց. և խորհէին հանդերձել և այլ ևս նաւս երեսուն: Մեծ էր եռանդն փութոյ նոցա, մեծ և ամենայն իսկ պատրաստութիւն 'ի վերայ ապստամբաց Քիայ:

ԺԶ. Մինչ այս մինչ այն՝ եհաս Ստրոմբիքիդէս ութ նաւուք 'ի Սամոս, և առեալ անտի նաւ մի խաղաց 'ի Տէոս, և աղաչէր ողոքէր զնոսա հանդարտել: Յարուցեալ և Քալկիդեւս քսանևերիւք նաւուք գնայր 'ի Տէոս, մինչդեռ երկրախումբ զօրն և Կլազոմենեցիք և Երիթրիացիք յառաջէին ընդ ցամաք: Զգացեալ զայս կանուխ Ստրոմբիքիդէս խաղաց վաղվաղակի 'ի խորս. բայց իբրև ետես զբազմութիւն նաւաց գալ 'ի Քիայ, խոյս ետ 'ի Սամոս յերեսաց հետամուտ թշնամւոյն: Զընկալան Տէացիք 'ի սկզբան զհետևակ զօրն, այլ տեսեալ ապա զփախուստ Աթենացւոց, թողին մտանել նոցա 'ի քաղաքն: Հանդարտեալ մնայր ժողովուրդն դարձին Քալկիդեայ, և 'ի յամել նորա՝ ելին կործանել զպարիսպ քաղաքին Տէայ զձեռագործ Աթենացւոց 'ի ցամաք կուսէ: Ձեռն ետուն նոցա յայս և խումբ բարբարոսաց եկելոց ընդ զօրավարութեամբ Տագեսայ տեղակալի Տիսափեռնեայ:

ԺԷ. Իսկ Քալկիդեւս և Ալկիբիադ յետ հալածական առնելոյ զՍտրոմբիքիդէս մինչև 'ի Սամոս, զինեալ զնաւաղն Պելոպոնեսացւոց՝ թողին զնոսա 'ի Քիոս. և զայլս փոխանակեալ ընդ նոցա՝ ամբարձան 'ի Քիայ այլ ևս նաւս քսան 'ի վերայ յաւելեալ, և խաղացին 'ի Միլէտոն՝ առնել զի և նոքա յետս կայցեն յԱթենացւոց: Քանզի խորհէր Ալկիբիադ յառաջ քան զգալուստ նաւաց Պելոպոնեսացւոց, մտերիմ բարեկամութեամբ իւրով ընդ գլխաւորս Միլեսիացւոց, յորդորել ձգել զնոսա 'ի կողմն Լակեդե-

մոնացւոց, որով և Քիացւոց և իւրում անձին, Քաղկիդեայ և Ենդիոսի փառս յաւելուլ՝ որ արձակեալ էր զնա վստահացեալ 'ի բան խոստման նորին՝ ապստամբեցուցանելոյ զքաղաքանիս օգնութեամբ Քաղկիդեայ և զօրաց Քիացւոց։ Թաքուցանելով նոցա ընդ երկար զնաւարկութիւնս. և ոչ բազմօք ինչ յառաջագոյն քան զՍտրոմբիքիդէս և զԹրասիկլէս հասեալ անդր, որ այն ինչ եկեալ այդր յԱթենայ երկոտասան նաւուք ընդ Ստրոմբիքիդեայ հետամուտ էր նոցին, և ապստամբեցուցին զՄիլետոն։ Իսկ Աթենացիք որ ինն և տասն նաւուք զհետ նոցա գային, մերժեալք 'ի Միլեսիացւոց՝ զկայ առին 'ի Լադէ 'ի մօտաւոր կղզւոջ։ Յետ ապստամբութեան Միլեսիացւոց դէպ եղև նախկին դաշնադրութիւն Լակեդեմոնացւոց ընդ արքայից արքային 'ի ձեռն Տիսափեռնեայ և Քաղկիդեայ՝ օրինակ զայս.

ԺԸ. « Լակեդեմոնացիք և նիզակակիցք նոցա դաշինս կռեցին ընդ արքայի և ընդ Տիսափեռնեայ ըստ օրինակիս ըստ այսմիկ. Որ միանգամ արքայի են գաւառք և քաղաքք և հարց նորա կալուածք՝ նմա լիցին։ Եւ որչափ ինչ 'ի քաղաքանացս հանէին Աթենացիք արծաթ և այլ հարկս, թագաւորն՝ Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա հասարակաց հաւանութեամբ արգելուցուն զնոսա մի ևս հանել ոչ արծաթ և ոչ այլ ինչ։ Պատերազմ հասարակաց ընդդէմ Աթենացւոց պատերազմեսցուք թագաւորն՝ Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա. և մի օրէն լիցի լուծանել զայս ընդդիմամարտ նոցին կռիւ, բայց եթէ հասարակաց հաւանութեամբ թագաւորին, Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց։ Եւ որ 'ի հպատակաց ոք լծընկեց յետս կայցէ յարքայէ՝ թշնամի համարեսցի նա և Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց. և որ 'ի Լակեդեմոնացւոց և 'ի դաշնաւորաց վտարանջէն՝ թշնամի համարեսցի և արքայի »։

ԺԹ. Այսպիսի էր դաշնակցութիւնս։ Եւ յետ այսորիկ վաղվաղակի հանդերձեալ Քիացիք այլ ևս նաւս տասն, և թևակոխեալ յԱնէա կոյս գնային, առնուլ ինչ լուր

զՄիլեսիացւոց, և տալ վտարանջել և այլոց քաղաքաց. բայց հրեշտակ բանբեր 'ի Քաղկիդեայ ընկալեալ՝ յետս նահանջել 'ի նաւարկութենէ, զի գայր հասանէր Ամորգէս զօրօք իւրովք ընդ ցամաք. և մեկնեցան 'ի մեհեան կոյս Դիայ, և տեսեալ նաւս վեշտասան՝ զորս յետ Թրասիկլեայ մեկնելոյ ածէր Դիոմեդոն 'ի քաղաքէն Աթենացւոց, յորոց 'ի տեսիլ մի 'ի նաւաց յԵփեսոս, և այլք 'ի Տէոս փախեան։ Կալան Աթենացիք նաւս չորս դատարկս, որոց մարդիկն անկան 'ի ցամաք և փախուցեալ ապրեցան 'ի Տէոս։ Եւ մինչդեռ Աթենացիք 'ի Սամոս կոյս առախեթեալ զնաւս իւրեանց գնային, Քիացիք մնացելովքն նաւարկեալ և երկրախումբ զօրօք յապստամբութիւն դրդէին զԼեբեդոս, ապա և զԵրաս. և դարձան անդրէն իւրաքանչիւր յերկիր իւր, ընդ հետևակազօրուն և նաւաց գումարտակ։

Ի. Առ սովիմբ քան նաւք Պելոպոնեսացւոց՝ որ հալածականք առաջի Աթենացւոց պաշարեալք էին 'ի Պիրէոն 'ի նոյնչափ թուոյ նաւաց նոցա, յեղակարծում յարձակեալ և յաղթութեամբ 'ի ծովամարտի կալեալ յԱթենացւոց նաւս չորս՝ մեկնեցան 'ի Կենքրէ, պատրաստել անտի 'ի նոր արշաւանս 'ի Քիոս և 'ի Յոնիա։ Եկն եհաս նոցա Աստիոքոս 'ի Լակեդեմոնէ նաւապետ իշխան, որում էր 'ի գլուխ կալ միահամուռ ծովակալ իշխանութեան։ Իսկ 'ի մեկնել հետևակազօրուն 'ի Տէայ՝ եկն ինքնին Տիսափեռն զօրօք, և զմնացորդս պարսպին քակեալ եղ և գնաց։ Յետ նորա գնալոյն ոչ բազում ինչ անցեալ 'ի վերայ, երևեցաւ և Դիոմեդոն տասն նաւօք Աթենացւոց, և հաւանեցոյց զՏէացիս ընդունել զիւրսն. և զափամբ գնալով յարձակեցաւ յԵրաս, և չկարացեալ առնուլ զքաղաքն՝ մեկնեցաւ։

ԻԱ. Դէպ եղև 'ի ժամանակին յայնմիկ զի ստամբակեալ ռամիկն ընդդէմ Ճոխից 'ի Սամոս, յորում էր և ձեռն Աթենացւոց որ երիւք նաւուք դեգերէին անդանօր. և կոտորեաց ժողովուրդն Սամիացւոց յաւագաց երկրին զարս որպէս երկերիւր, և չորեքհարիւրս յաքսոր դատապար-

տեաց, լարաբաժին առնելով յիւրեանս զկալուածս նոցա և զտունս. և այնուհետև իբրև աներկեանք՝ ընկալեալ վձաւով Աթենացւոց զինքնօրէն իւրեանց վարչութիւն, և առեալ 'ի ձեռս զամենայն յանձանձանս քաղաքին, ոչ մի մասն հանելով անտի երկրատեարց. արգելին օրինօք մի ազգախառնել ժողովրդեան ընդ նոսա, ոչ տալով նոցա և ոչ առնելով 'ի նոցանէ կին:

ԻԲ. Յետ այսորիկ 'ի սմին ամարանի 'ի նոյն յեռանդըն հանապազորդելով Քիացիք՝ որով սկսանն, առանց մնալոյ օգնականութեան Պելոպոնեսացւոց՝ ընթանային ամբոխիւ ընդ քաղաքս դրդաւել զնոսա յապստամբութիւն, յոլովելով զբաժանորդս իւրեանց 'ի նոյն վտանգ. անցին երեքտասան նաւուք 'ի Լեսբոս, արշաւել անտի յԵլլեսպոնտոս, ըստ կանոնի խոստման Լակեդեմոնացւոց՝ տալ և ինքեանց զկնի նոցա. իսկ հետևակազօրն Պելոպոնեսացւոց և դաշնաւորք նոցա՝ որպէս ինչ պատրաստ էին՝ խաղացին 'ի Կլազոմէն և 'ի Կիւմէ. և զօրավար էր սոցա Եւալաս սպարտացի, և նաւախմբին Դինիադաս՝ 'ի շրջաբնակաց Լակեդեմոնի: Հասեալ նաւացս նախ զՄեթիմնացիս շարժեցին 'ի վտարանջել, և թողեալ առ նոսա նաւս չորս՝ մնացելովքն արարին և զՄիտիլենեցիս ապստամբել:

ԻԳ. Իսկ Աստիոքոս ծովապետ իշխան Լակեդեմոնացւոց չորիւք նաւուք ամբարձեալ 'ի Կենքրեայ եկն եհաս 'ի Քիոս՝ յոր և դէմ եդեալն էր: Եւ 'ի միւս վաղիւն երևեցան 'ի Լեսբոս քսան և երեք նաւք ատտիկեցիք, որոց զօրավարք էին Լեոն և Դիոմեդոն, զի 'ի վերջէ ուրեմն եկեալ գայր յԱթենայ Լեոն ձեռն տալ Դիոմեդոնի: Եկ և Աստիոքոս 'ի նմին իսկ աւուր ընդ երեկս կոյս 'ի ծով, և առեալ նաւ մի 'ի Քիոյ գնաց 'ի Լեսբոս՝ ըստ մարթելոյն՝ յօգնութիւն նոցա. անց անտի 'ի Պիւռա, և 'ի վաղիւն յԵրեսոս, և լուաւ անդ զառումն Միտիլենեայ յԱթենացւոց յարձակմամբ: Եւ զի անակնկալ էր գալուստ Աթենացւոց, մտեալ նոցա 'ի նաւահանգիստն Միտիլենեայ՝ կալան զնաւս Քիա-

ցւոց, և ելեալ 'ի ցամաք՝ հարին զամենայն ընդդիմակացս և տիրեցին քաղաքին։ Զոր լուեալ Աստիոքոս յԵրեսխացւոց և 'ի նաւաց անտի Քիացւոց՝ եկելոց 'ի Մեթիմնեայ ընդ Եւբուլեայ, զորս յառաջն անդ Միտիլինեայ թողեալ էր, յորոց և մին 'ի ձեռս Աթենացւոց անկեալ և երեքն փախուցեալ առ նա հասին, ոչ ևս այլ կամէր 'ի Միտիլինէ գնալ. այլ զԵրեսոս ապստամբեցուցեալ և զզօրս նաւատորմղին զինեալ արձակեաց ընդ ցամաք յԱնտիսա և 'ի Մեթիմնէ, կարգելով նոցա զԵտէոնիկոն 'ի զօրավար։ Եւ ինքն իւրովքն և երեքումբք քիացւովք նաւօք՝ գնաց յԱնտիսա և 'ի Մեթիմնէ, յուսով թէ 'ի տեսիլ իւրոցն խրախուսեալ Մեթիմնացիք պնդ կայցեն յապստամբութեան իւրեանց. այլ իբրև ետես զամենայն հակառակ ինքեան 'ի Լեսբոս, ամբարձեալ զզօրս իւր 'ի նաւս դարձ արար 'ի Քիոս։ Նոյնպէս և երկրախումբ զօրն՝ որ 'ի նաւս Պելոպոնեսացւոց պատրաստ էր խաղալ յԵլլեսպոնտոս, դարձաւ իւրաքանչիւր 'ի քաղաք իւր։ Եւ եկին յայնժամ 'ի Կենքրեայ 'ի նաւաց անտի դաշնաւորաց Պելոպոնեսացւոց նաւք վեց յօգնականութիւն 'ի Քիոս։ Իսկ Աթենացիք վերստին հաստատեալ որ ինչ 'ի Լեսբոս կարգ վարչութեան էր՝ մեկնեցան. կալան և զԿլազոմենացւոց զաւանն ամրացեալ յարձակավայրս ցամաք երկրին պատերազմաւ, և փոխեցին դարձեալ զբնակիչսն 'ի քաղաք նոցին 'ի կղզւոջն, բաց 'ի գլխաւորաց ապստամբութեան, և գնացին ինքեանք 'ի Դափնուս։ Եւ այսպէս եմուտ վերստին Կլազոմէն ընդ իշխանութեամբ Աթենացւոց։

ԻԴ. Ի նմին ամարանի Աթենացիք՝ որ քսան նաւօք խարխսխ արկեալ նստէին 'ի Լադէ՝ լրտեսել զխլրտմունս Միլեսիացւոց, ելին 'ի Պանորմն Միլեսիացւոց, հարեալ սպանին զՔալկիդեւս լակեդեմոնացի՝ որ չոկատիւ միով 'ի թիկունս էր եկեալ նոցա. և յետ երից աւուրց կրկին դարձ արարեալ 'ի նոյն յառաջին կղզին՝ նշան յաղթութեան կանգնեցին, զոր 'ի բաց բարձին Միլեսիացիք, զի

մինչեւ տիրապետեալ նոցա տեղւոյն նշան կանգնէին: Իսկ Լէոն և Դիոմեդոն զօրավարք Աթենացւոց նաւախմբին 'ի Լեսբոս՝ յարձակելով 'ի Քիոս 'ի կղզեաց անտի յՈինուսաց՝ որ հանդէպ Քիոյ, և 'ի հզօր քաղաքացն 'ի Սիդուսեայ և 'ի Պտելէայ երկրին Երիթրիացւոց և Լեսբեայ՝ մարտնչէին 'ի ծովու. և զզօրականն տապարաւոր ամբարձեալ 'ի նաւս՝ իբրու նաւաղն վարէին: Ելեալ սոցա 'ի Կարդամիլէ և 'ի Բոլիսոս, հարին զՔիացիս զդիմակացս. և կոտորեալ 'ի նոցանէ զբազումս, յաւար մատնեցին շուրջանակի զերկիրն, միւս այլ յաղթութիւն տարեալ 'ի Փանէ, և երրորդ այլ 'ի Լեւկոնիոն: Եւ ոչ ևս այնուհետև համարձակէին Քիացիք 'ի դիմի հարկանել թշնամւոյն, և 'ի ժամանակէ անտի Մարաց հանդարտեալ ցայնժամ զերկիրն բարգաւաճ և զբարեշէն յաւար և յապականութիւն դնէին Աթենացիք: Եւ ըստ իս արդարև սոքա Քիացիքս յետ Լակեդեմոնացւոց խոհականութեամբ իմաստնացեալք երանաւէտք էին, զի որչափ առաւելոյր քաղաք նոցա 'ի մեծութիւն, զոյնչափ ևս 'ի չափու կալով նոցա յաներկեւանութեան ամրանային. և այժմեանս այս ապստամբութիւն՝ թէպէտ յերեւման անդկասկածաւոր և խախուտ, սակայն մինչեւ զբազմութիւն ընտիր ընտիր դաշնաւորաց 'ի սոյն միաբանեալ՝ չխրախուսեցին նոքա 'ի սոյն. մանաւանդ զի և 'ի բանից իսկ Աթենացւոց հաստատելով յայնմ, թէ յետ բեկման և արկածից Սիկիլիոյ ամենեւին իսկ վատթարէին իրք նոցա. բայց եթէ մարդկեղէն վրիպակօք՝ որ անբաւ է հասարակաց կենացս, ընդ բազմաց մոլորեալ՝ որոց ընդ հուպ հասեալ թուէր վախճան իշխանութեան Աթենացւոց, պատրեալք անկան: Արգելեալ արդ 'ի ծովէ և յաւար մատնեալ 'ի ցամաքէ, էին 'ի նոսա որք խորհէին տալ զքաղաքն յԱթենացիս. զայս զգացեալ գլխաւորաց քաղաքին և ոչ կամելով անձամբ ինչ սահմանել, առաքեալ կոչեցին յԵրիթրիոյ զԱստիոքոս իշխան չորիւք նաւուք իւրովք, խորհել եւ հանդարտել զայս դաւակցութիւն, պատանդութեամբ կամ այլով ողոք հնարիւք: Յայսմ պայմանի էին ահա իրք Քիացւոց:

ԻԵ. Իբրեւ ամառն 'ի վերջ կայր խոնարհէր՝ ելին մեկնեցան 'ի քաղաքէն Աթենացւոց հազար մի ասպարազէն զօրական աթենացի, հազար և հինգհարիւր արգիւացի, յորոց հինգհարիւրն թեթեւազէն էր. և հազար մի ևս 'ի դաշնաւորաց՝ ամբարձեալ 'ի քառասուն և յութ նաւս հանդերձ զինուորակիր նաւուք ընդ առաջնորդութեամբ Փրինիքեայ Ոնոմակլեան և Սքիրոնիդեայ նաւեցին 'ի Սամոս. և անտի անցեալ 'ի Միլետոն, ղակիշ ածեալ նստան անդ: Ելեալ Միլեսիացիք ութհարիւր ասպայադունդ մնդաւոր, և որ ընդ Քաղկիդեայ Պեղոպոնեսացիք և վարձկան զօրական Տիսափեռնեայ, ինքնին և նախարարն 'ի գլուխ իւրոյ այրուձիոյն, հարան ընդ Աթենացիս և ընդ մարտակից դաշնաւորս նոցա: Երկայնեալ տարածեցին Արգիւացիք զթեւ իւրեանց՝ որպէս ընդ հենգն Յոնիացւոց, և խառնիխուռն դիմեցին իբրեւ 'ի վերայ անզօր և անարի մարդկան. և խորտակեալ առաջի Միլեսիացւոց՝ ոչինչ պակաս քան իբրու երեքհարիւր արք տապաստ անկան 'ի նոցանէ: Բայց Աթենացիք զօրացեալ 'ի սկզբան անդ 'ի վերայ Պեղոպոնեսացւոց՝ հալածական վարեցին զբարբարոսս և զայլ ամբոխ մարդկան, չխառնելով ընդ Միլեսիացիս 'ի կռիւ. որոց յետ հարուածոցն Արգիւացւոց տեսեալ զպարտութիւն իւրեանց զօրուն՝ ընկրկեալ մեկնէին 'ի քաղաքն. հասին յաղթութեամբս Աթենացիք մինչեւ 'ի դրունս Միլեսիացւոց դնել զզէնս իւրեանց: Դէպ եղեւ 'ի մարտիս երկուց կողմանց ախոյենիցն զօրանալ Յոնիացւոց 'ի վերայ Դորիացւոց. զի Աթենացիք Պեղոպոնեսացւոց յաղթեցին, և Միլեսիացիք՝ Արգիւացւոց:

Նշան յաղթութեան կանգնեալ Աթենացիք և ձեռն 'ի գործ արկին 'ի պաշարումն քաղաքին, և 'ի ձեւ պարանոցի գոլով երկրին՝ ակն ունէին առմամբ Միլետոնի դիւրեաւ անձնատուր լինել և այլոց քաղաքաց:

ԻԶ. Մինչ այս իրք գործէին, և ահա ազդ եղեւ նոցա ընդ երեկս կոյս, եթէ 'ի Պեղոպոնեսեայ և 'ի Սիկիլիոյ գան

հասանէն նաւք յիսուն և հինգ։ Քանզի 'ի Թախանձանաց Երմոկրատեայ ածեալ Սիրակուսացիք գային 'ի սպառսպուռ ջախջախումն Աթենացւոց. քսան նաւք էին 'ի Սիրակուսայ, երկու 'ի Սելինունդաց, և այք 'ի Պելոպոնեսեայ պատրաստք էին 'ի ժամուն, զամենեսեան զոսսա յանձն արարեալ Թերամենեայ Լակեդեմոնացւոյ բերել առ Աստիոքոս ծովապետ։ Ի Լերոս կղզի՝ որ առ Միլետաւ՝ զտեղի առին սոքա նախ. բայց իբրև լուան եթէ Աթենացիք կան հանդէպ քաղաքին, անցին 'ի ծոցն Յասիկեան՝ գիտել ինչ զՄիլետաւ։ Եւ Ալկիբիադեայ յերիվար աշտանակեալ գայր 'ի Տեքիուս Միլեսիացւոց, յորում 'ի ծոցին նաւարկեալ գիշերօթէին սոքա, և զրոյց տայր նա նոցա զպատերազմէն, յորում և ինքն անձամբ ընդ Տիսափեռնեայ զինուորէր. և խրատ ևս յաւելոյր նոցա՝ զի եթէ չկամին 'ի սպառ զկործանումն իրաց իւրեանց 'ի Յոնիա, փութալ 'ի Թիկուսն Միլեսիացւոց՝ մինչև փակեալ նոցա պաշարմամբ։

ԻԵ. Մինչդեռ պատրաստէին սոքա 'ի ծագել աւուրն նաւել 'ի Միլետոն յօգնութիւն պաշարելոցն, տեղեկացեալ Փռինիքեայ զօրավարին Աթենացւոց զարմիզ նաւաց թշնամեաց 'ի Լերոս. 'ի կամել իշխանակցաց իւրոց կալ մնալ 'ի տեղւոջն 'ի նաւամարտ ընդ նոսա, Քա՛ւ լիցի՛ն, ասէր, առնել զայդպիսի ինչ, և ցորչափ է յիս զօրութիւն և ոչ ձեզ թողից և ոչ այլում ումեք առնել զայդ. զի մարթ է ժամ տալ 'ի գիտել ճշգրիտ զթիւ նաւաց թշնամեացն, և առ նոքօք զմերսն կշռելով 'ի կռիւ գալ պատրաստ, և մի վայրապար առ երկիւղի ամօթոյ յանխորհուրդս 'ի վտանգ զմեզ արկանել։ Եւ զի ամենևին չեն ամօթոյ իրք Աթենացւոցս՝ 'ի տեղի տալ 'ի ծովու առաջի զօրութեան թշնամեացն, այլ այն է սաստիկ ամօթ նախատանաց, եթէ որով և է օրինակաւ պարտիցիմք 'ի նոցանէ. զի և քաղաքս մեր յայնժամ ոչ 'ի նախատինս անարգանաց միայն, այլ և յանհնարին վտանգ անկցի, որ յետ արկա-

ծիցն և ձախողելոյ միանգամ, պնդագոյն եւս կազմութեամբ, կամովին ընտրութեամբ կամ ամենեքին իսկ 'ի հարկէ նախաձեռն 'ի կռիւ լինիցի. ուր թողցուք ապա՝ առանց ինչ բռնադատութեան ինքնագրաւ 'ի վտանգ ընթանալ: Եւ խորհուրդ տայր նոցա աճապարեալ մուծանել 'ի նաւս զվիրաւորս և զհետեւակ զօրական և զամենայն աղխս՝ զորս ընդ իւրեանս բերին. և թողեալ անդր զոր 'ի թշնամեաց առին աւար, և թեթեւաբեռինք նաւել 'ի Սամոս, և գումարեալ անդանօր զնաւախումբն, 'ի դէպ ժամուն և պատեհաւ առպատակ սփռել անտի: Եւ հաւանեցուցեալ զխուռն, 'ի գլուխ տարաւ զայդ ամենայն. և ոչ յայդ գործ միայն յայնժամ, այլ և յետ այնորիկ 'ի բազմապատիկ յայլ դէպս երեւեցաւ Փրինիքոս զի ոչ աննշան ոք էր այրն: Եւ յերեկոյէ իսկ շարժեցան Աթենացիք՝ թերի թողեալ զյաղթութիւնն մեկնել 'ի Միլետոնէ. և Արգիւացիք առ զայրոյթ պարտութեան իւրեանց ելեալ վաղվաղակի 'ի նաւս դարձան յերկիր իւրեանց և 'ի տունս:

ԻԸ. Եւ ընդ այգն առաւօտուն ամբարձեալ Պելոպոնեսացիք 'ի Տիքիուսայ եկին մտին 'ի նաւահանգիստն Միլետոնի. և կացեալ անդ օր մի, 'ի վաղիւն առեալ ընդ իւրեանս և զնաւս Քիոյ՝ հալածականս երբեմն ընդ Քաղկիդեայ, կամէին դարձ առնել անդրէն 'ի Տիքիուսա, ժողովել զկարասին թողեալ 'ի տեղւոջն: Իբրև հասին նոքա անդր՝ մատուցեալ Տիսափեռն հետեւակախումբ զօրօքն հաւանեցոյց զնոսա արշաւանս առնել 'ի Յասոն, ուր բնակալէր թշնամի նորա Ամորգէս: Յարձակեալ նոցա յեղակարծումն 'ի Յասոն՝ որ Ատտիկեցւոց նաւաց միայն ակն կալեալ մնայր՝ առին անաշխատ զքաղաքն, յորում մեծապէս գովութեամբ առաջինացան Սիրակուսացիք. և զԱմորգէս՝ զհարձօրդին Պիսութնեայ զապստամբեալն յարքայէ, կալեալ կենդանւոյն Պելոպոնեսացիք ետուն 'ի ձեռս Տիսափեռնեայ տանել առ արքայ՝ եթէ կամեսցի, ըստ հրամանի նորին իսկ արքայի. և զՅասոն քաղաք մատ

նեցին յաւար զօրուն կապուտ մեծափարթամ, զի 'ի վաղընջուց ժամանակաց բազմամթեր ճոխութիւն էր երկրին։ Ածին յիւրեանս զվարձկան զօրն Ամորգեայ, որոց ոչինչ մեղանչելով նոցա՝ զի յոլովագոյնք 'ի Պելոպոնեսեայ էին, յաւելին 'ի գունդս զօրաց իւրեանց։ Զքաղաքն ետուն 'ի ձեռս Տիսափեռնեայ և զգերութիւնն առ հասարակ՝ զազատ և զանազատ մարդիկն, պայմանաւ հատուցանելոյ նոցա փոխանակ մի մի դարեհեան ըստ գլուխ, և մեկնեալ անտի դարձան 'ի Միլետոն։ Եւ առաքեցին հետի ընդ ցամաք մինչև յԵրիթրիա ընդ վարձկան զօրուն Ամորգեայ զՊեդարիտոս Լեոնեան զկարգեալն 'ի Լակեդեմոնացւոց իշխան վարիչ 'ի Քիոս, և փոխանակեցին ընդ նորա զՓիլիպպոս 'ի Միլետոն։ Եւ վախճան եղև ամարայնոյս։

ԻԹ. Ի գալ ձմերայնոյ՝ յետ ամրապնդելոյ պահանորդօք զՅասոն քաղաք, եկն երևեցաւ Տիսափեռն 'ի Միլետոն. և որպէս խոստացեալ էր 'ի Լակեդեմոն՝ բաշխեաց մէն մի դրամ ատտիկեան ըստ գլուխ՝ յամսօրեայ ռոճիկ նաւախմբին։ Բայց յետ այնորիկ զերիս զերիս դանկս կամէր տալ, մինչև ծանուցեալ արքայի և հրամանաւ նորա լնուլ զթերին։ Ի հակառակել այսմ Երմոկրատեայ զօրավարի Սիրակուսացւոց, Թերամենէս՝ որ չէր ծովապետ, այլ ուղեկից միայն առ յանձն առնելոյ Աստիոքեայ զիշխանութիւնն, ոչինչ պնդէր վասն ռոճկին. և պայմանադրեցան վասն հնգից նաւաց ըստ գլուխ յաւելուլ զերիս զերիս դանկս, զի տայր Տիսափեռն ամսոյ ամսոյ երիս տաղանդս վասն յիսուն և հնգից նաւաց. իսկ այլոց նաւաց՝ որոց յոլովագոյն էին թիւք, ըստ սակին եղելոյ հատուցանել։

Լ. Ի ձմերանիս հասին 'ի քաղաքէն յօգնութիւն Աթենացւոց նաւք երեսուն և երեք, և զօրավարք՝ Քարմինոս, Ստրոմբիքիդէս և Եւկտեմոն. որոց 'ի մի խմբեալ զամենայն նաւս, խորհեցան սահմանել վիճակաւ՝ զորս 'ի պաշարումն Միլետոնի, և զորս 'ի Քիոս արձակել. նոյն և վասն հետեւակախումբ զօրուն, զոր և արարին իսկ այնպէս։ Ստրոմ-

բիքլիդէս և Ոնոմակլէս և Եւկտեմոն երեսուն նաւուք, և մասամբ հազար մնդաւոր զօրուն եկելոյ 'ի Միլէտոնէ ելեալ 'ի զինուորակիր նաւս խաղացին 'ի Քիոս. իսկ այլք 'ի Սամոս մնալով՝ եօթանասուն և չորիւք նաւուք տիրապետեալ ծովուն, գնացին 'ի Միլէտոն:

ԼԱ. Իսկ Աստիոքոս որ 'ի Քիոս էր յայնժամ, առ կասկած մատնութեան ընտրելով պատանդս, իբրև լուաւ զգալուստ Թերամենեայ ընդ նաւախմբին և զբարւոք յաջողութիւն նոցա դաշնակցաց, ձեռն թափ 'ի գործոյս՝ առեալ նաւս տասն 'ի Պելոպոնեսացւոց և տասն 'ի Քիացւոց՝ ել և մեկնեցաւ: Եւ յարձակեալ 'ի վերայ քաղաքին Պտելէայ՝ իբրև չկարաց առնուլ զայն, զափամբ քերելով եհաս 'ի Կլազոմէն. հրաման ետ կուսակցաց Աթենացւոց խախտել 'ի միջերկրայս 'ի Դափնուս, և իւրոյ կողման անսալ այնուհետև. զնոյն պատուէր ետ նոցա՝ և Տամոս կուսակալ Յոնիոյ. և յանսաստել նոցա՝ յարձակեցաւ Աստիոքոս 'ի վերայ քաղաքին որ անպարիսպ էր, և ոչ կարաց առնուլ զնա: Մեկնեցաւ անտի սաստիկ հողմով և եկն 'ի Փովկեա և 'ի Կումէ. մինչդեռ այլք 'ի նաւաց գնացեալ դադարեցան 'ի կղզիս մերձաւոր Կլազոմենեայ, 'ի Մարաթուզա, 'ի Պելէ և 'ի Դրիմուսա. և կացեալ անդ զաւուրս ութ յերեսաց հողմոյն, և յաւարի առեալ զոր համբարեալ էր Կլազոմենեցւոց, զկէս մի յայնցանէ անդէն սպառեալ ծախեցին, և զկէս մի բարձեալ 'ի նաւս՝ դարձան 'ի Փովկեա և 'ի Կումէ առ Աստիոքոս:

ԼԲ. Անդ էր ինքնին Աստիոքոս յորժամ հասին դեսպանք Լեսբացւոց խորհրդով կրկին ապստամբութեան, և զօդ հաւանեցուցանել իմն զնա կարծէին. այլ 'ի յօտարանալ Կորնթացւոց և այլոց դաշնաւորաց 'ի խորհրդոյ աստի վասն առաջնոյ ձախողութեանն, ելեալ նաւեաց Աստիոքոս 'ի Քիոս. և ըմբռնեալ 'ի մրրկէ՝ 'ի վայրատել ցրուել նաւացն՝ ուր ուրեմն ժամանեցան 'ի Քիոս յայլեայլ կողմանց ժողովեալ 'ի նոյն: Յետ այնորիկ Պեդարիտոս՝ որ 'ի Միլէ-

տոնէ զծովեզերբ գնալով հետի յԵրիթրիա էր երթեալ, անց զօրօք 'ի Քիոս. ունէր սա ընդ իւր 'ի հինգ նաւս իբրև հինգհարիւր ասպարակիր զօրական թողեալ 'ի Փոլկիդեայ: Ի բանագնաց լինել ոմանց 'ի Լեսբացւոց առ Աստիոքոս յապստամբութիւն, 'ի վեր եհան նա զայս Պեդարիտեայ և Քիացւոց. թէ պարտ է նոցա երթալ ձեռն տալ ապըստամբութեան. յոր 'ի յաջողելն՝ յաւելցեն զթիւ դաշնաւորաց, և 'ի ձախողելն՝ չարիս գոնեա հասուսցեն Աթենացւոց. բայց չանսային նոքա այսմ և ոնդէր Պեդարիտոս չթողուլ նմա զխումբ նաւաց Քիացւոց:

ԼԳ. Առեալ Աստիոքեայ նաւս հինգ 'ի Կորնթացւոց, մի 'ի Մեգարայ և մի 'ի Հերմիոնայ, և զորս 'ի Լակոնիոյ ընդ իւր էր ածեալ, խաղաց 'ի Միլետոն երթալ 'ի գլուխ կալ նաւախմբին, մեծապէս սպառնացեալ Քիացւոց չտալ նոցա ձեռն օգնականութեան 'ի ժամանակի նեղութեան: Եկ նա 'ի Կորիւկոս Երիթրիոյ ագանել անդ. և որ 'ի Սամեայ 'ի Քիոս նաւէր զօրն աթենացի՝ եկեալ խարիսխ արկեալ նստէր զթիկամբք բլրոյն. որով 'ի միմեանց թագուն կային թշնամիք: Գիր հասանէր գիշերի 'ի Պեդարիտեայ առ Աստիոքոս, եթէ գերեալքն յԵրիթրիացւոց արձակեալ գան 'ի Սամեայ 'ի մատնութիւն քաղաքին. անձապարեաց Աստիոքոս դառնալ անդրէն յԵրիթրիա, և մազապուր զերծաւ 'ի ձեռաց Աթենացւոց: Եկեալ էին առ նա և Պեդարիտոս, և հարցափորձիւ խնդիր արարեալ վասն կարծեցեալ մատնութեանն, ոչ այլ ինչ գտին՝ բայց հնարս ճարտարութեան գերելոցն յարձակուրդ իւրեանց 'ի Սամեայ. և ազատ արարեալ զնոսա 'ի վնասուց ամբաստանութեանն ելին 'ի ճանապարհ, ըստ առաջնոյ խորհրդոյն՝ սա 'ի Քիոս և նա 'ի Միլետոն նաւելով:

ԼԴ. Առ սովիմբ և զօրն Աթենացւոց ամբարձեալ 'ի Կորիւկեայ զծովեզերբ գնալով, առ Արգինեաւ պատահեցան երից երկայն նաւուց Քիացւոց, ընդ տեսանելն և զհետ նոցին պնդեցան. և 'ի շնչել յանկարծ սաստիկ հողմոյ՝

հաղև ձողոպրեալ Քիացւոց անկան 'ի նաւահանգիստ Եւրեանց. իսկ երեք նաւք Աթենացւոց սաստկագոյնս վարեալք և առ Քիաւ հարեալք 'ի ցամաք՝ կորեան, և մարդիկն որ 'ի նոսա՝ կէսք ձերբակալ եղեն և կէսք սպանան: Իսկ այլք 'ի նաւաց փախուցեալ անդրագոյն քան զՄիմաս, զերծան 'ի Փինիկուս 'ի նաւահանգիստն. անցին անտի ապա 'ի Լեսբոս և ձեռն արկին պատնիշափակ ամրանալ անդանօր:

ԼԵ. Եւ 'ի Պեղոպոնեսեայ զայն ձմեան Իպպոկրատէս Լակեդեմոնացի տասն նաւուք Թուրիացւոց, և հրամանատար զումարտակիս էր Դորիեւս որդի Դիակորայ, երկուայլ իշխանակցօք և մի մի Լակոնացի և Սիրակուսացի նաւուք. և հասին առքա 'ի Կնիդոս, որ սադրանօք Տիսափեռնեայ կանուխ իսկ յետս կացեալ էր յԱթենացւոց: Իբրև լուան զգալուստ նոցա որք 'ի Միլետոն էին՝ պատուէր առ նոսա արձակեցին, կիսով մասամբ նաւախմբին զԿնիդոս պահել և մասամբ 'ի Տրիոպիոն դարանել նպարաւոր նաւուց եկելոց յԵգիպտոսէ. և Տրիոպիոն էր սարաւանդ ամբարձեալ 'ի վերայ Կնիդեայ նուիրական Ապոլոնի: Զգացեալ զայս Աթենացւոց խաղացին 'ի Սամեայ, հասին կալան զվեց պահակ նաւս 'ի Տրիոպիոն, յորոց փախուցեալ ապրեցան մարդիկն: Եւ յետ այնորիկ նաւեալ 'ի Կնիդոս հարան պատերազմաւ ընդ քաղաքին, և զի անպարիսպ էր՝ սակաւ մի ևս և առնուին զայն: Ի վաղիւ անդր 'ի նոյն դարձեալ 'ի կռիւ, այլ զի գիշերի ամրացեալ էր քաղաքացւոց պատնիշափակ, և 'ի նաւաց Տրիոպիոնի փախստեայք յաւելեալ յամրականս, ոչ կարացին ըստ առաջնոյն օրինակի սանանել ինչ նոցա, և ձեռնունայն մեկնեցան անտի. և ապականեալ զերկիրն Կնիդացւոց դարձան 'ի Սամոս:

ԼԶ. Ի ժամանակին յորում Աստիոքոս 'ի Միլետոն գայր 'ի հրամատարութիւն տորմղին, ունէին Պեղոպոնեսացիք լիուլի առատապէս զամենայն պէտս զօրուն. զի ռոճիկ ելանէր նոցա ըստ չափու բաւականին, և աւարն 'ի Յասոնեայ յափշտակեալ տնէր բաւէր նոցա դեռ ևս, և յա-

ռաջամիտ էին Միլեսիացիք 'ի ծախս պատերազմին: Բայց նախկին դաշինքն կնքեալ ընդ Տիսափեռն և ընդ Քալկիդեւս Թերի երևեալ Պելոպոնեսացւոց և ոչ շատ 'ի շահ օգտի իւրեանց, կնքեցին այլ նոր դաշինս, մինչդեռ Թերամենէս 'ի Միլետոն էր, որ և էր օրինակ զայս.

ԼԵ. «Դաշինք ուխտին եղելոյ Լակեդեմոնացւոց և դաշնաւոր նիզակակցաց նոցա ընդ Դարեհի արքայի, ընդ արքայորդւոցն և ընդ Տիսափեռնեայ 'ի հաշտութիւն խաղաղութեան և 'ի սէր բարեկամութեան ըստ օրինակիս ըստ այսմիկ:

Որ միանգամ երկիր և քաղաքանի թագաւորին գոլով Դարեհի և հօր նորա և կամ նախնեաց, մի՛ իշխեսցեն ոչ Լակեդեմոնացիք և ոչ դաշնաւորք Լակեդեմոնացւոց ելանել պատերազմաւ 'ի վերայ, կամ որո՛վ և է վնասու, ոչ հարկս հանելով 'ի քաղաքացս յայսցանէ ոչ Լակեդեմոնացիք և ոչ դաշնաւորք Լակեդեմոնացւոց:

Ոչ Դարեհ արքայ և ոչ որոց իշխէ նա, մի՛ ելցեն 'ի վերայ Լակեդեմոնացւոց և մի՛ 'ի վերայ դաշնաւորաց նոցա պատերազմաւ, և ոչ որով և է վնասու:

Եթէ Լակեդեմոնացիք և կամ դաշնաւորք նոցին կարօտ լինիցին օգնականութեան արքայի. և կամ արքայն ինքնին Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցուն սատարութեան կարօտասցի, որ ինչ և միաբան հաւանութեամբ կարգեսցեն, զնոյն կալցեն հաստատութեամբ:

Կողմանքս երկոքին հասարակ հաւանութեամբ պատերազմ տացեն ընդ Աթենացիս և ընդ դաշնաւորս նոցա. և նոյն երկոցունց հասարակաց հաւանութեամբ վախճան արասցեն պատերազմի: Որչափ ինչ 'ի խնդրոյ արքայի առաքեսցի ձեռն օգնական յաշխարհ նորա, յարքունուստ հատուսցի ռոճիկ զօրուն:

Եթէ 'ի քաղաքաց ոք կամ 'ի ժողովրդոց դաշնաւորելոց ընդ արքայի մտցէ թշնամութեամբ յերկիր տէրութեան նորին արքայի, այլք ամենեքեան ջանասցեն արգե-

ձուլ զայն, և ամենայն զօրութեամբ իւրեանց վրէժխնդիր արքային լինիցին: Եթէ 'ի կուսակալաց ոք արքային, և կամ որոց իշխէ արքայ՝ շարժեսցի զինու ք 'ի վերայ Լակեդեմոնացւոց և կամ դաշնաւորաց նոցին, խափանեսցէ զայն արքայ, և ամենայն զօրութեամբ իւրով 'ի բաց զնա վանեսցէ »:

ԼԸ. Յետ կապելոյ դաշանցս՝ Թողեալ Թերամինեայ զնաւախումբ զօրականն յԱստիոքոս, և ինքն ելեալ 'ի նաւ մի երագաթի՝ գնաց ուր և գնաց: Իսկ որ 'ի Լեսբոս էին Աթենացիք անցեալ զօրու 'ի Քիոս, և տիրապետեալ ծովու և ցամաքի պարապէին զԴելփինիոն՝ տեղի 'ի բնէ ամուր 'ի ցամաքի նաւահանգստիւքն, ոչինչ հեռի 'ի քաղաքէն Քիացւոց: Ի բազում պատերազմունս ցարդ խորտակեալ Քիացիք, յետ մանաւանդ սպանութեան Տիւդէոսի որդւոյ Յոնեայ և ընկերացն նորա, իբրև կուսակցաց Աթենացւոց կոտորելոց 'ի Պեդարիտեայ և մնացելոյ քաղաքացւոց ընդ ազնուապետաց իշխանութեամբ նուաճելոյ, խեթիւ այնուհետև ընդ միմեանս և յերկպառակ խորհուրդս՝ լեալ դադարէին: Զի ոչ զինքեանս և ոչ ոյք ընդ Պեդարիտեայ էին գունդք՝ բաւականս համարէին 'ի դիմամարտ ընդ թշնամւոյն: Եւ առաքեցին 'ի Միլետոն 'ի խնդիր օգնականութեան առ Աստիոքոս. և 'ի չլսելն նորա աղաչանացն, նամակագիր եղև Պեդարիտոս ամբաստան զնմանէ 'ի Լակեդեմոն՝ իբրու զդաւաճան մատնչէ: Յայս պայման էին իրք Աթենացւոց 'ի Քիոս և գումարտակ նաւաց նոցա ելանէին 'ի Սամեայ ընդդէմ նաւաց դադարելոց 'ի Միլետոն. բայց զի չելանէին նոքա 'ի կռիւ, կրկին դարձ արարեալ սոցա 'ի Սամոս հանդարտէին:

ԼԹ. Ի ձմեռնային յեղմունս կոյս ամբարձեալ 'ի Պելեպոնեսեայ քսան և եօթն նաւք 'ի թախանձանաց Կալլիգիտեայ Մեգարացւոյ և Տիմագորայ Կիւզիկեցւոյ կազմեալք վասն Փառնաւազայ, խաղացին 'ի Յոնիա, և Անտիսթենէս սպարապետ 'ի գլուխ կայր նաւախմբին: Առա-

քեցին ընդ սմա Լակեդեմոնացիք արս մետասան սպարտա-
ցիս 'ի խորհրդակիցս Աստիոքեայ, ընդ որս էր և Լիքաս
որդի Արկեսիլայոսի։ Որոց պատուէր տուեալ էր ընդ հա-
սանելն 'ի Միլետոն զամենայնէ խնամ ունել՝ զի 'ի լաւա-
գոյն պայմանի իցեն. և զնաւս՝ եթէ այնպէս հաճոյ իցէ,
խմբովին կամ մասամբ առաքել առ Փառնաւազ յՀելլես-
պոնտոս. և զԿղէարքոս Հռամփեան որ ուղեկից էր նոցա,
կարգել յիշխան նաւապետ. և եթէ բարւոք թուեսցի մե-
տասանիցն՝ զԱստիոքոս արկեալ յիշխանութենէն՝ զԱն-
տիսթենէս կարգել ընդ նորա, քանզի 'ի նամականւոյն Պե-
ղարիտեայ 'ի միտս կասկածոտս էին զնմանէ Լակեդեմո-
նացիք։ Ի Մալեայ ամբարձեալ նաւատորմս խաղալով 'ի
խորս եկն մերձեցաւ 'ի Մելոս, յորում հանդիպեալ տասն
նաւաց Աթենացւոց, կալեալ յայնցանէ զերիս դատարկա-
հրոյ ետուն ճարակ. և երկուցեալ ապա զի զերծեալքն 'ի
Մելեայ նաւք Աթենացւոց երթեալ ազդ արասցեն զգա-
լուստ նոցա 'ի Սամոս, որպէս և եղեն իսկ, նաւեցին անտի
'ի Կրետէ, և բազում զգուշութեամբ զնաւարկութիւնս
արարեալ՝ իջին 'ի Կաւնոն Ասիոյ։ Եւ անտի իբրև յանքոյթ
ապաստանէ հրեշտակութեամբ ծանուցին հանդիսի նաւաց
'ի Միլետոն՝ գալ նոցա յառաջնորդութիւն ճանապարհին։

Խ. Առ սովին ոչինչ թուլացեալ Քիացիք և Պեդարի-
տոս ընդ յապաղումն Աստիոքեայ՝ հրեշտակս տային առ նա
արձակէին աղաչելով զնա փութալ ողջոյն իսկ նաւատոր-
մըղաւ գալ 'ի թիկունս նոցա, և մի անտես առնել զմեծ քա-
ղաքն 'ի դաշնաւորս Յոնիոյ փակեալ ընդ ծով, և յապա-
կանութիւն և յաւար մատնեալ 'ի ցամաքի։ Որոց բազմու-
թիւն ստրկաց էր, որ յետ Լակեդեմոնի մի միայն քաղաք
էր բազմագերի, որ և ըստ յոլովութեան նոցուն՝ խստա-
պատուհասակոծ զնոսա առնէին վասն յանցանաց. և յորմէ-
հետէ պատնիշափակ ամրանայր զօրն Աթենացւոց ։ գունդա-
գունդ առ նոսա յաճախէին դասալիք փախստեայք, որոց
և ծանօթ գոլով երկրին՝ բազում չարեաց պատճառք լինէին։

վասն որոյ ցորչափ անկնկալութիւն էր և հնար խափանելոյ զչինուածս ամրութեանց Դելփինեայ, և անդադոյն զբանակ զօրուն և զխումբս նաւաց պատնիշօք զօրացուցանելոյ, փութացուցանէին Քիացիք զօգնականութիւն Աստիոքեայ: Իսկ Աստիոքոս՝ Թէպէտ ըստ առաջնոց իւրոց սպառնալեաց չյօժարէր բնաւ, այլ իբրև ետես զյառաջամտութիւն դաշնաւորաց 'ի նոյն, բռնադատեցաւ և ինքն եղանել նոցա յօգնութիւն:

ԽԱ. Եւ յայնժամ ահա լուր 'ի Կաւնեայ ընկալաւ, եթէ քսան և եօթն նաւք և խորհրդակիցք Լակեդեմոնացւոց հասեալ գան 'ի տեղին. որ և առ նաւախմբիւս զայն ամենայն յետին համարեալ գործ, զորս 'ի մի գումարելով ծովակալել մտայր նմա, և անքոյթ զանցս Լակեդեմոնացւոց գործել՝ ոյք 'ի լրտեսել զգնացս նորա գային. և Թողեալ անդէն զարշաւանս 'ի Քիոս՝ նաւեաց 'ի Կաւնոս: Զճանապարհայն ել 'ի Կով-Մերոպեայ՝ որ անպարիսպ էր, և 'ի մեծէ յանլուր ցայնժամ սասանութենէ խախտեալ, և մարդկան քաղաքին փախուցեալ 'ի լերինս. յաւար էառ զայն, 'ի յափշտակութիւն մատնեաց և զերկիրն, խնայեալ միայն յազատ մարդիկն արձակեաց զնոսա: Ի Կովէ էջ գիշերաւ 'ի Կնիդոս, և ըստ խրատու Կնիդացւոց ստիպեցաւ չհանել զնաւսն 'ի ցամաք, այլ որպէս և եգեալ էր 'ի մտի՝ խաղալ ձեպով 'ի վերայ քսանից նաւաց Աթենացւոց, որովք Քարմինոս՝ մի ոմն 'ի զօրավարաց անտի Սամեայ, դարանեալ լրտեսէր զգալուստ քսանևեօթն նաւաց 'ի Պելոպոնեսեայ, առ որս և Աստիոքոս երԹայր յուղեկցութիւն: Որք 'ի Սամոս էին Աթենացիք լուան զգալ մերձենալ Պելոպոնեսացւոց 'ի Մելեայ. և յանձն եղև Քարմինայ զգուշութիւն պահպանութեան Սիմեայ, Քալկեայ, Հռոդոսի և Լիւկիայ, քանզի կանուխ իսկ լուեալ էին 'ի Կաւնոս լինել Թշնամեացն:

ԽԲ. Մինչև լու լեալ գալստեան նորա՝ փութացաւ Աստիոքոս 'ի Սիմէ, զի Թերևս հասեալ ըմբռնեսցէ զնոսա

'ի խորս ծովու, այլ տարափ անձրեւոյ և երկինք մառախլապատ մոլորեցոյց զչուամարտակ նաւաց նորա 'ի խաւարի և 'ի չփոթս արկ զնոսա: Եւ յառաւօտուն պահու 'ի գնալն նորա ցիր և ցան, մինչ յերևան գայ ձախոյ թևի նորա տորմղին Աթենացւոց, մինչդեռ միւս թեւն զկղզեաւն Սիմեայ դեռ ևս թափառէր, խաղացին Քարմինոս և Աթենացիք 'ի խորս ընդդէմ նոցա՝ նուազ քան քսան նաւուք, և կարծէին զնոսա որոց 'ի Կաւնեայ ակն կալեալ մնային. անկան անդէն 'ի վերայ և խորտակեալ ընկլուզին զերիս յոյնցանէ, և հարուածեալ փչացեցին զայլս: Եւ մինչդեռ յաղթականս լինել համարէին, երևեցաւ ահա բազմութիւն նաւաց թշնամեաց՝ որ շուրջանակի պատեալ պաշարեցին զնոսա: Եւ փախստեայք սոքա յերեսաց նոցին՝ կորուսին նաւս վեց, և մնացեալքն զերծեալ անկան 'ի կղզին Տեւտլուսա, և անտի յԱլիկառնաս:

Յետ այնորիկ իջին Պելոպոնեսացիք 'ի Կնիդոս, յորում քսանևեօթն նաւք եկեալ 'ի Կաւնեայ խառնեցան ընդ նոսա, և միախումբ նաւարկեալ՝ նշան յաղթութեան կանգնեցին 'ի Սիմէ, ուստի անցին դարձեալ 'ի Կնիդոս:

ԽԳ. Իսկ Աթենացիք ընդ լուր ծովամարտիս, ելեալ 'ի Սամեայ ողջոյն նաւախմբիւ գան 'ի Սիմէ, չկամեցան հանդիպել նոցա պատերազմաւ՝ որ 'ի Կնիդոս էին, և ոչ նոքա ընդ սոսա. և առեալ 'ի Սիմեայ զկազմածս նաւաց՝ յարձակեցան 'ի Լորիմէ քաղաք 'ի ցամաք երկրին. և դարձան անտի 'ի Սամոս: Համախումբ հանդէս նաւացն Պելոպոնեսացւոց 'ի Կնիդոս էր 'ի կարևոր բեդեկ նոցին պարապեալ. անդ էր և Տիսափեռնէս 'ի խորհուրդ ընդ մետասան Լակեդեմոնացիս խորհրդականս վասն անցիցն անցելոց ցայնժամ և սահմանելոյ 'ի շահ օգտի հասարակաց, յորս էին ինչ ինչ արդարև անհաճոյք, և զորս յետ այնորիկ ունէին առնել: Լիքաս մանաւանդ 'ի քննութիւն առնոյր զիրսն, և թէ կրկնակի դաշինքն ընդ արքայի՝ ոչ Քաղկիդեայն և ոչ Թերամինեայն, չէին բարւոք յօրինեալ. զի

ամենևին իսկ դժպհի էր եթէ որոց իշխէր երբեմն արքայ գաւառաց և նախնիք նորա, կամեցի տիրել և այսօր. որով և բոլորից այնուհետև կցզեաց ընդ ծառայութեամբ նորա լինել, և Թեսսալիոյ և Լոկրիսեայ մինչ 'ի Բիովտիա, և փոխանակ ազատութեան՝ դնել Լակեդեմոնացւոց 'ի պարանոց Հելլենաց զլուծ Մարաց: Եւ խնդրէր 'ի լաւագոյն պայման փոխել զդաշինս, և ոչ եղելովքն վարել, որովք չպիտին նոցա տուրք և ռոճիկք: Ընդ որ ծանրացասումն Տիսափեռն, ոչինչ ամենևին սահմանեալ էլ և գնաց:

ԽԴ. Խորհէին Լակեդեմոնացիք նաւել 'ի Հռոդոս, յորոց 'ի գլխաւորաց ժողովրդեան նուիրակութիւնս ընկալեալ էր նոցա, յուսով յիւրեանս յարելոյ զկղզին՝ բազմութեամբ նաւաց և հետևակախումբ բանակաւ մեծազօր. և համարէին այնուհետև ձեռնտուութեամբ դաշնաւորաց ոչ ևս այլ ունել պէտս 'ի Տիսափեռնեայ 'ի ռոճիկ նաւաց: Ամբարձեալ վաղվաղակի 'ի Կնիդեայ զայն ձմեռն, ելին նախ 'ի Կամիրոս Հռոդացւոց իննսուն և չորիւք նաւուք. պակուցեալ զահի հարաւ ժողովուրդն անդէտ իրացն, և զի անպարիսպ էր քաղաքն՝ թողեալ զայն փախեան: Կոչեցեալ ապա զնոսա Լակեդեմոնացւոց և զբնակիչս երկուց քաղաքաց Լինդեայ և Յելիսեայ 'ի ժողով, հաւանեցուցին զնոսա 'ի բաց կալ յԱթենացւոց, և յաւելաւ յայնժամ Հռոդոս 'ի կողմն Պելոպոնեսացւոց: Զգացեալ զայս Աթենացւոց կանուխ և աճապարեալ զառաջս առնուլ իրին, խաղացին նաւուք Սամեայ երևել 'ի ծովու հանդէպ Հռոդոսի. բայց անազանեալ սակաւիկ մի՝ մեկնեցան 'ի Քալկէ և անտի կրկին 'ի Սամոս: Եւ յետ այնորիկ 'ի Քալկեայ, 'ի Կովայ և 'ի Սամեայ յարձակէին պատերազմաւ 'ի Հռոդոս: Հանին Պելոպոնեսացիք հարկս երեսուն և երկուց տաղանդաց 'ի Հռոդացւոց, և քարշեալ զնաւս իւրեանց 'ի ցամաք՝ հանգեան 'ի տեղւոջն զաւուրս ութ:

ԽԵ. Ի ժամանակիս և յառաջագոյն իսկ քան զարշաւանս Պելոպոնեսացւոց 'ի Հռոդոս, այսպիսի ինչ դէպք

եղեն: Ալկիբիադէս յետ մահուն Քալկիդեայ և պատերազմին 'ի Միլետոն կասկածաւոր լեալ Պելոպոնեսացւոց, և առ 'ի նոցանէ հասեալ նամականւոյն 'ի Լակեդեմոնէ առ Աստիոքոս՝ սպանանել զնա իբրև Թշնամի Ագիսայ և մանիկ՝ երկուցեալ մեկնեցաւ նախ առ Տիսափեռն, առ որում որչափ ինչ ձեռնհաս եղև, վնաս մեծ հասոյց իրաց Պելոպոնեսացւոց: Ուսուցիչ լեալ նմա յամենայնի, կարճեալ եհատ զվարձս զօրականին, փոխանակ ատտիկեան դրամոյ՝ կարգելով նոցա երիս երիս դանկս ըստ գլխոյ, և զայս ոչ հանապազօր. և դնէր բան 'ի բերան Տիսափեռնեայ ասել նոցա՝ եթէ Աթենացիք 'ի բազմաց հետէ հմուտք նաւաստականութեան՝ երիս դանկս տային իւրեանց նաւաստւոյն. և զայս ոչ առ չքաւորութեան, այլ որպէս զի մի նաւաղք նոցա աւելորդովք յղփացեալք ըմբոստասցին, կէսք զեղծանելով չարաչար 'ի մարմինս, այնպիսի հեշտից տալով զանձինս՝ որ լուցկիք են ախտակրութեանց, այլոց Թողլով զնաւս, և յաւելուածով ծախուց զայլս 'ի նոյն պատանդելով: Ուստի դարձեալ կաշառակուրծ որսալ 'ի կամս իւր զկարգապետս նաւաց և զզօրավարս քաղաքաց. սակայն բաց 'ի Սիրակուսացւոյն, յորոց Երմոկրատէս միայն գիտաց հակառակ կալ յանուն ամենայն դաշնաւորաց: Մերժեաց Ալկիբիադէս և զքաղաքս որ 'ի խնդիր էին արծաթոյ, առնելով նոցա 'ի կողմանէ Տիսափեռնեայ սաստիւ զպատասխանին. Անպատկառք էն և անամօթ Քիացիք, ասէր, որ փորթամագոյնք 'ի Հելլէնս, օտար զօրականօք յուսին ունելով զիշխանութիւն, ժպրհին ևս զի այլք մարմնով իւրեանց և ընչիւք 'ի վերայ ազատութեան դիմադրաւ լինիցին: Իսկ վասն այլոց քաղաքաց ասէր, մեծապէս անիրաւին և նոքա՝ որ յառաջ քան զվտարանդութիւն իւրեանց, այնչափ ինչ վատնեալ 'ի վերայ քաղաքին Աթենացւոց, և այժմ արդ 'ի վերայ ազատութեան իւրեանց նոյնչափ ինչ և աւելի իսկ ոչ կամին ծախել: Եւ յաւելուր յայտ առնել նոցա, եթէ պատերազմելով այսօր ծախուք

ւորովք Տիսափեռն՝ խնայել խնայէ իրաւամբ. այլ յորժամ 'ի Թագաւորէն եկին ռոճիկք, անթերի յայնժամ հատուցին նոցա վարձք, և պատշաճականն շնորհեցի քաղաքանւոյն:

ԽՁ. Խրատ եմ և Տիսափեռնեայ մի՛ վաղվաղել վախճան առնելոյ պատերազմին, և մի՛ տալ ածել զնաւախումբն Փիւնիկեցւոց՝ յոր յօժարն թուէր նա, և կամ ռոճիկ կարգելով Հելլենաց, զծովու և զցամաքի իշխանութիւն առեալ աւանդել նոցա. այլ բաժանել զիշխանութիւն 'ի մէջ երկուց նախանձորդ ժողովրդոց, որպէս զի տեղի լիցէ արքային միմեամբք զնոսա վատթարելոյ: Զի եթէ իշխանութիւն ծովու և ցամաքի 'ի նոյն ձեռս ամփոփեսցի, չգացէ այնուհետև Թագաւորն ձեռն տատար 'ի ջախջախել զհզօրացեալն, բայց եթէ ինքնին անձամբ՝ մեծաւ իսկ տուժիւք և վտանգաւ 'ի կռիւ եկանելով. որ դիւրեաւ արդ և նուազ յոյժ ծախուք և ապահովութեամբ վճարի, եթէ միմեամբք կործանել զՀելլէնս կամիցի: Ճահաւորագոյն է, ասէր, կցորդս առնուլ իշխանութեան իւրում զԱթենացիս, որ չեն որպէս զայլս ցանկացողս աշխարհակալութեան ցամաք երկրի. ըստ այսմ և յարդիւնս անդ իրաց օգտակար լինել արքային, զի միաբան տիրապետել ծովու, Թողուցուն և արքային նուաճել զհելլենաբնակ գաւառս արքունիս, ուր 'ի հակառակէն՝ յաղթութիւն նոցա զան արդ Լակեդեմոնացիք: Եւ չէ ինչ ըմբռն, եթէ ազատելով այսօր Լակեդեմոնացւոց 'ի լծոյ Հելլենաց զՀելլէնս, չազատեսցեն զնոսա վարանջութեամբ և 'ի լծոյ անտի բարբարոսաց: Խրատ տայր դարձեալ տկարացուցանել զերկոսին զնոսա միանգամայն նախ, և յետ հատանելոյ գաւառս 'ի տէրութենէ Աթենացւոց, մերժել ապա և զՊելոպոնեսացիս 'ի քաղաքաց արքունի: Զայն և առաւել քան զայն խորհէր և Տիսափեռն, զոր և յարդեանց անտի գործոց գուշակել է. վասն որոյ և ամենեւին իսկ վստահութեամբ՝ իբրու քաջի խորհրդականի անձնատուր էր յԱլկիբիադ, և անփութու-

թեամբ պաշտէր նա այնուհետև զռոճիկ Պելոպոնեսացւոց և չթողոյր նոցա գալ 'ի ծովամարտ. և խոստմամբն ընդ հուպ գալստեան Փիւնիկեցւոց և միախուռն յայնժամ մարտնչելոյ՝ խանգարեալ ապականեաց զիրս նոցա. եւ կորուսանել և զընտիր ընտիրս նաւաստեաց, որով հզօրք էին նոքա, և այնպէս թուլագոյնս մարտակից լինէր ընդ նոսա, մինչև չկարէր իսկ պատրուակեալ թաքուցանել զայն:

ԽԷ. Իսկ Ալկիբիադ զայս ամենայն խրատս օգտակարս առ Տիսափեռն և առ արքայ 'ի շնորհս առանձնականութեան նոցա առ ինքն մատուցանէր, և զի դիւրեսցէ զդարձ իւր 'ի հայրենիս: Գիտելով չափ, զի եթէ մարթասցի խափանել զկործանումն նորին՝ իցէ նմա յոյս ակնկալութեան կոչոյ երբեմն առ 'ի նմանէ. և համարէր դիւրեաւ հաւանեցուցանել 'ի նոյն զԱթենացիս՝ կարծեօք մտերմութեան իւրոյ ընդ Տիսափեռնեայ, որպէս և եղեն իսկ: Քանզի իբրև լուան զայս՝ որ 'ի Սամոս բանակ զօրուն Աթենացւոց, յորոց առ գլխաւորս նախ բանագնաց լինէր նա խօսել զնմանէ առ լաւորեարն՝ այն է առ տոհմիկսն, զի միտք նորա 'ի սակաւապետութիւն հայէին, և ոչ 'ի յոռութիւն կամ 'ի ռամկավար իշխանութիւն ամբոխին՝ յորոց և տարագիրն եղև, և պատրաստել նոցա զնիզակակից բարեկամութիւն Տիսափեռնեայ. և որ սատարէրն նմա յայսմ մեծապէս՝ զի կարգապետք և ամենայն այր զօրաւոր յԱթենացւոց 'ի Սամոս 'ի քակտումն ռամկապետութեան թևակոխէին:

ԽԸ. Յածէր բանս այս նախ 'ի զօրուն, ապա յետ այնորիկ և 'ի քաղաքին. և երթային ոմանք 'ի Սամեայ առ Ալկիբիադէս 'ի բանակցութիւն, որոց խոստանայր նա նախ զբարեկամութիւն Տիսափեռնեայ, ապա և զթագաւորին, միայն զի թողուցուն զվարչութիւն ռամկին, որով յաւելցէ արքայ վստահ լինել 'ի նոսա: Այսու և յոյս բազում առաջի դնէր և ձոխից քաղաքին, որոց առաւել չարակրել է միշտ, դիւրեաւ մուտ գտանելոյ 'ի յանձանձանս աշխարհին և

զօրանալոյ 'ի վերայ Թշնամեաց: Դարձ արարեալ սոցա 'ի Սամոս և 'ի ժողով գումարեալ զյաջողակս 'ի խորհուրդ միաբանութեան, և յայտնապէս այնուհետև ծանուցին ամբոխին, եթէ բարեկամ լիցի նոցա արքայ և ձեռնտու գանձուք արծաթոյ, եթէ դարձուցանելով զԱլկիբիադէս 'ի հայրենիս՝ լուծցեն զիշխանութիւն ռամկին: Թէպէտ առ ժամն գժգմնեցաւ ընդ այս ամբոխն, բայց յուսով ապա լիագոյն վարձուց ռոճկին յարքայէ՝ լռեաց: Եւ որք պատրաստէին թևակոխէին 'ի վարչութիւն ազնուապետական՝ յետ 'ի վեր հանելոյ զայս ժողովրդեան, դարձան խորհել յիւրեանս և յակումբս անդ համախոհից զխորհրդոյ առաջարկութեան Ալկիբիադեայ: Իբրև ոչինչ դժուարին թուէր բազմաց բանն և յամենայնի դիւրընկալ, Փրինիքեայ՝ որ դեռ ևս զօրավար էր յայնժամ, ոչ հաճոյ թուեցաւ. «Զի Ալկիբիադեայ, ասէր, որպէս և էրն արդարև, ոչ ընդ ազնուապետաց իշխանութիւն և ոչ ընդ ռամկին վարչութիւն փոյթ ինչ է, այլ զի միտք նորա յայն հային՝ եթէ զիարդ հնարիւք իմն զառաջիկայ վարչութիւն քաղաքին փոփոխել կարասցէ, և 'ի ձեռն կուսակցաց իւրոց դառնալ 'ի հայրենիս. վասն որոյ պարտ է մեզ զգոյշ լինել յամենայն չփոթից յեղափոխութեան. և թէ չէ օգուտ արքային՝ մինչդեռ հաւասարազօր ընդ մեզ են Պելոպոնեսացիք 'ի ծովու, ունին և քաղաքս յերկրի իշխանութեան նորա ոչ փոքունս, ձեռն տալ Աթենացւոց՝ զորոց թերահաւատէ նա, և կրնճիռս ինքեան պատճառել նորանորս. ուր արժան է մանաւանդ շահել զբարեկամութիւն Պելոպոնեսացւոց, յորոց չկրեաց նա երբեք չարիս: Իսկ վասն քաղաքաց մերոց դաշնաւորաց՝ որոց խոստանայցեմք զսակաւիշխան աւագորերոյ վարչութիւն, զի և մեք իսկ Աթենացիք ոչ ևս այնուհետև վարչութեան ամբոխին անսամք, գիտասջիք, զի ոչ վասն այնորիկ ոչ յետս կացին 'ի մէնջ՝ դարձցին յարել վերստին 'ի մեզ, և ոչ որ կանն և մնան՝ հաւատարիմագոյն ինչ լինիցին. քանզի ոչ եթէ յանուն սակաւուց կամ

ամբոխին իշխանութեան յօժարագոյնք 'ի ծառայութիւն գտանիցին. այլ ընդ այսու և ընդ այնու ձևով ընկերհաշտութեան՝ ազատս լինել մանաւանդ ախորժիցեն. Իսկ որ լաւորեարն կոչին՝ տոհմիկքն, ոչինչ նուազ քան առ վարչութեամբ ռամկին՝ առ սոքօք, այս է՝ առ նուազ իշխանօք. համարեցին ինքեանց ասպարէս համարձակագոյնս գործելոյ, ոյք խորհրդակիցք և պատճառք չարեաց ժողովրդեան, զամենայն իսկ շահս օգտից անտի անձանց քաղեսցեն։ Դարձեալ առ սոքօք դէպ լիցի և ատեան և մահ ռամկաւորագոյն առանց հարցափորձի և քննութեան, որ առ ռամկին տեղի իցէ միշտ փախստի և իրաւախոհութեան։ Զգոյն յարդեանց անտի ուսեալ քաղաքաց, որպէս հաւանեալս եմ. նոյնօրինակ և ինքեանք խորհեսցին յիրիս յայսմիկ. վասն որոյ որ յԱլկիբիադեայ առաջարկ է խորհրդոց՝ յոր ձրկտոնն այժմ միտք հասարակաց, չհաճիմ ես բնաւ ամենևին ընդ այդ ամենայն»։

ԽԹ. Իսկ գումարեալքն 'ի դաշնակից միաբանութիւն՝ որպէս ինչ յառաջագոյն հաճոյ թուեցաւ նոցա, ընկալեալ զառաջարկն խորհէին առաքել հրեշտակութեամբ զՊիսանդրոս և զայլս ոմանս յԱթէնս՝ ջանալ հնարել զդարձ Ալկիբիադեայ, զքակտումն իշխանութեան ռամկին և վասն բարեկամութեան Տիսափեռնեայ ընդ Աթենացւոց։

Ծ. Գիտացեալ Փրինիքեայ եթէ վասն դարձին Ալկիբիադեայ երթան նոքա խօսել, և երկուցեալ զի եթէ ընդունելի լիցի այն Աթենացւոց և յաջողեսցի դարձ Ալկիբիադեայ՝ չարիս ինչ կրեսցէ ինքն 'ի նմանէ, փոխանակ զի ընդդէմ դարձաւ խորհրդոյն, վասն որոյ և այսպիսի ինչ հնարս հնարեցաւ։ Նամակագիր եղև առ Աստիոքոս առ ծովակալ իշխան Լակեդեմոնացւոց գաղտ՝ որ զՄիլետեաւ էր յայնժամ, եթէ վնասակար է Ալկիբիադէս իրաց նոցա՝ բարեկամ առնելով զՏիսափեռն Աթենացւոց. և զամենայնէ ճշգրիտ մանր ծանօթս տայր նմա 'ի թղթին, ներումն իմն վասն անձին խնդրելով՝ զի 'ի վնաս իսկ հայրենի քա-

զաքին չարիս խորհէր զթշնամւոյն: Իսկ Աստիոքոս հեռի ամենևին 'ի խորհրդոց պատուհասելոյ զԱղկիբիադ՝ որում և չէր իսկ ձեռնհաս որպէս երբեմն, չոգաւ առ նա 'ի Մագնեսիա, միանգամայն և առ Տիսափեռն. և 'ի վեր եհան նոցա զամենայն բանս գրելոցն 'ի Սամեայ և անձամբ մատնիչ եղև նոցին: Յայսմ և յայլ ինչ դէպս, որպէս պատմենն, յօգուտ իւրոյ անձին համախոհ ընդ Տիսափեռնեայ գտաւ. զոր օրինակ և թուլագոյն շարժէր յանթերի հատուցումն վարձուց ռոճկի զօրականին: Իսկ Աղկիբիադ արար վաղվաղակի գիր ամբաստանութեան ընդդէմ Փրինիքեայ առ գլխաւորս զօրուն 'ի Սամոս, յայտ առնելով զմեծութիւն յանցանաց նորա, և թէ արժանի մահու է այրն: Խռովեալ Փրինիքեայ ընդ մեծ վտանգ անձին ամբաստանութեամբս այսու, յաւել առաքել առ Աստիոքոս՝ եպերելով զնա ընդ ոչ պահպանութիւն առաջնոյն, և թէ պատրաստ է արդ տալ 'ի ձեռս նորա զամենայն բանակ զօրուն Աթենացւոց՝ որ 'ի Սամոս, և ցուցանէր մանր՝ թէ որպէս անպարիսպ գոլով Սամեայ մարթ էր նմա անաշխատ 'ի գլուխ տանել զգործն. և թէ գնելով գլխովին զանձն իւր վասն նոցա, անպարսաւ է ամենևին գալ յայդ գործ և յայլ սոյնպիսիս, քան եթէ յոխերմագունից անտի իւրոց թշնամեաց կորնչել չարաչար: Իսկ Աստիոքոս և ոչ զայսոսիկ ծածկեաց յԱղկիբիադեայ:

ԾԱ. Կանուխ գուշակելով Փրինիքոս զմատնութենէս, և թէ ընդ հուպ վասն այնորիկ հասցէ նամականի յԱղկիբիադեայ, աճապարեաց ծանոյց ինքնին զօրուն՝ եթէ անպարիսպ գոլով Սամեայ և նաւահանգստին անձկութիւն անբաւական 'ի բովանդակել զբազմութիւն նաւաց, խորհի թշնամին յարձակել 'ի վերայ բանակին. որում և ստուգիւ տեղեկացեալ, պարտ է փութալ պարսպել ձեպով զՍամոս և 'ի պահ զգուշութեան կալ: Եւ զի հրամատար էր նա՝ որով և իշխան 'ի գլուխ տանելոյ զխորհուրդս իւր, վասն որոյ ձեռն 'ի գործ եղեն վաղվաղակի. և այսպէս որ կարևորն

էր՝ արագապէս պարսպեալ ամրացաւ Սամոս։ Յետ սակաւու միոյ եհաս և գիր Ալկիբիադեայ, թէ մատնեալ է զօրն 'ի Փռիւնիքեայ և ընդ հուպ ժամանեսցէ թշնամին. բայց ամենևին անհաւատարիմ եղեն բանք Ալկիբիադեայ, իբրու կանուխ գիտակ խորհրդոց թշնամեաց, և առ ատելութեան զՓռիւնիքեաւ արկանէր զեղեռն համախոհութեան. որով ոչինչ կարացեալ տռնանել առնն, վկայ երաշխաւոր եղև մանաւանդ գուշակութեան բանից նորա։

ԾԲ. Յետ այսորիկ ջանայր Ալկիբիադէս ողոքել զմիտս Տիսափեռնեայ 'ի հաւանութիւն բարեկամութեան ընդ Աթենացիս, զի սկսեալ էր նա խիթալ 'ի Պելոպոնեսացւոց՝ որ հզօրագոյն քան զԱթենացւոցն գումարտակաւ երևէին 'ի ծովուն. այլ ջանայր Տիսափեռն խորամանկ ևս լինել իրացն՝ մանաւանդ յետ տեսանելոյ զանմիաբանութիւն Պե-
Հ լոպոնեսացւոց 'ի վերայ դաշանց ուխտին 'ի ձեռն Թերամինեայ եղելոյ 'ի Կնիդոս. և դէպ լինէր այս 'ի ժամանակին յորում 'ի Հռոդոս էին, յասելն Ալկիբիադեայ թէ կամք են Լակեդեմոնացւոց յազատութիւն հանել զամենայն քաղաքս Հելլենաց. զնոյն հաստատէր Լիքաս, թէ արդարև անհնար է նոցա թողուլ արքայի տիրել քաղաքաց, որոց երբեմն ինքն և կամ հարք նորա իշխեցին։ Եւ Ալկիբիադէս որ զծանունց և զկարևորաց զհետ նկրտէր միշտ իրաց, անդուլ այնուհետև առ Տիսափեռնեայ պաշտօն առնելով, յառաջամիտ զանձն իւր նմին ցուցանէր։

ԾԳ. Իբրու որք ընդ Պիսանդրեայ հրեշտակք Աթենացւոց առաքեալ 'ի Սամեայ յԱթէնս հասին, մատուցեալ նոցա առ ժողովուրդն՝ զբաղում ինչ իրաց սղագունիւք բովանդակելով, յայնմ մանաւանդ երկարէին զբանս, թէ զիարդ մարթ էր նոցա դարձուցանել զԱլկիբիադ 'ի հայրենիս, և փոփոխութիւն 'ի վարչութեան հասարակաց առնելով՝ նիզակակից իւրեանց ունել զարքայ և զօրանալ 'ի վերայ Պելոպոնեսացւոց։ Ի հակառակել բազմաց 'ի կողմ վարչութեան ամբոխին, ամբարձին յայնժամ և թշնամիք

Ալկիբիադեսյ զձայնս իւրեանց, թէ անհնար է զայր օրի-
նազանց դարձուցանել 'ի հայրենիս. վկայէին և Եւմոլպի-
դեանք և Կերիկեանք վասն խորհրդատօնիցն՝ որոց վասն
տարագիր եղև նա, և զգխ կարդալով վրէժխնդիրս սրբու-
թեանց՝ նզովիւք հակառակ կային դարձին: Ի մէջ անցեալ
Պիսանդրոս 'ի պատասխանի բազմադիմի բանիցս այսոցիկ
հակառակութեան և սպառնական բողոքոյ, կոչեալ զմի մի
'ի հակառակորդաց մեկուսի ուրոյն հարցանէր, ունիցի՞
ինչ ուսանէք ակնկալութիւն փրկութեան հասարակաց պե-
տութեան, մինչդեռ հաւասարազօր խումբ նաւաց Պելո-
պոնեսացւոց կազմ՝ 'ի ծովու ընդ մեզ հակառակամարտ
գտանին, և քաղաքք դաշնակիցք բազմաւորք և արքայ և
Տիսափեռն ընչիւք իւրեանց ձեռնտու նոցա, և մեք ամե-
նեւին չքաւորեալք, բայց եթէ գտցի ոք որ հաւանեցուսցէ
զարքայ զմեր կողմն ունել: Եւ իբրև այսոցիկ ամենայնի
զբացասիկ զոչն պատասխանէին, յաւելոյր յայնժամ յայտ-
նապէս ասել նոցա. Չլինիցի մեզ հասանել յայսմ երբէք,
եթէ ոչ զգօնագոյնս քաղաքավարեսցուք՝ 'ի նուազիշխանս
զվարչութիւնս հաւատացեալ, զի վստահ լիցի 'ի մեզ
արքայ. և 'ի ժամուս քան վասն վարչութեանս՝ ազատու-
թեան վասն հոգասցուք. քանզի չէ մեզ արգել փոխելոյ
զայն ժամանակաւ, եթէ ինչ մի անհաճոյ մեզ երևեսցի, մի-
այն եթէ զԱլկիբիադ դարձուսցուք, որ յամենեցուն 'ի
մէջ այսօր ինքն միայն է բաւական 'ի գլուխ տանելոյ
զգործս զայս զմեծ և զկարեւոր:

ԾԴ. Ընդ լուր բանիցս այսոցիկ՝ 'ի սկզբան անդ դըժ-
կամակեալ զչարէր ամբոխ ռամկին յազնուապետականս
թողուլ զվարչութիւն քաղաքին. այլ ուսեալ ապա հաւաս-
տեաւ 'ի Պիսանդրեայ, թէ չիք այլով իւիք փրկութիւն,
երկիւղիւ միանգամայն և յուսով ակնկալութեան տեղի
ետ փոփոխութեանս: Եւ վճռեալ սահմանեցին նաւել Պի-
սանդրեայ ընդ տասն որերոյ, և որպիսի ինչ բարւոք թուի-
ցի նոցա յարմարել զիրսն ընդ Տիսափեռնեայ և ընդ Ալկի-

բիադեայ: Եւ ամբաստանութեամբ Պիսանդրեայ եղծ ժողովուրդն զՓրինիքոս յիշխանութենէ, և զհամիշխան նորա զՍկիրոնիդէս, փոխանակ նոցա առաքելով զօրավարս նաւատորմիղին զԴիոմեդոն և զԼէոն: Գիտելով Պիսանդրեայ եթէ չլինիցի երբէք Փրինիքոս ձեռնտու և օժանդակ խորհրդոց Ալկիբիադեայ, ամբաստան զզօրավարէս եղև իբրու զմատնիչ Յասոնեայ քաղաքի և Ամորգեայ: Եւ մատուցեալ Պիսանդրոս առ ամենայն երասաս՝ որ երբեմն 'ի վերայ դատից կայր և պաշտամանց յԱթէնս, և աղաչէր զնոսա հաւասարել ընդ նոսա 'ի խորհուրդս քակելոյ զիշխանութիւն ռամկին. և ըստ ժամուն փութով պատրաստեալ զամենայն 'ի կատարումն առաջարկութեան գործոյն՝ ինքն եւ տասնեքումբք իշխանակցօք նաւեալ առ Տիսափեռն:

ԾԵ. Հասեալ 'ի ձմերանին Լէոն և Դիոմեդոն 'ի գումարտակ նաւացն Աթենացւոց, դէպ ուղիղ խաղացին 'ի Հռոդոս. ուր զնաւս Պելոպոնեսացւոց 'ի ցամաքի գտեալ, իջին և նոքա յերկիր. հարան ընդ Հռոդացիս եկեալս 'ի կռիւ և խորտակեալ զնոսա դարձան 'ի Քալկէ. 'ի կղզւոյս աստի մանաւանդ քան եթէ 'ի Կով կղզւոյն զարշաւանս առնէին, զի դիւրին էր անտի զգուշացեալ միադնել խաղացից նաւաց Պելոպոնեսացւոց: Եկն 'ի Հռոդոս և Քսենոփանտիդաս լակոնացի 'ի Քիայ՝ առաքեալ 'ի Պեդարիտեայ, ասել՝ եթէ շինուած պատուարացն Աթենացւոց կատարեալ է. և եթէ ոչ ողջոյն նաւատորմղաւն աճապարեսցեն գալ յօգնականութիւն, չլինիցի նոցա այլ ևս ունել ձեռն 'ի Քիոս: Իբրև պատրաստէին սոքա յայն, Պեդարիտոս և զօրն օժանդակ ընդ նմա և Քիացիք անկեալ միաբան 'ի վերայ պատնիշացն Աթենացւոց շուրջ զնաւախմբիւն ամբարձելոց, առին զկողմն մի նորին, և կալեալ և զքանի մի 'ի նաւաց 'ի ցամաք գտելոց. այլ հասեալ Աթենացիք 'ի վերայ, խորտակեցին նախ զՔիացիս, հարին և զօրս զՊեդարիտեան էին, և զնոյն ինքն զՊեդարիտոս սպանին. Թափեցին և զէն բազում և գերի շատ 'ի Քիացւոց:

ԾԶ. Յետ այսորիկ անդադոյնս պաշարեցան Քիացիք ընդ ծով և ընդ ցամաք և սովէին մեծապէս: Իսկ որ ընդ Պիսանդրեայ դեսպանութիւն էր Աթենացւոց առ Տիսափեռն, հասեալ նոցա և բանս առաջի արկանէին նմա վասն դաշանց միաբանութեան: Բայց Ալկիբիադ՝ որ չէրն իսպառ աներկմիտ ընդ Տիսափեռն, որ ըստ նորին իսկ ինքեան խորհրդոյ 'ի Պեղոպոնեսացւոց մանաւանդ խիթալով, և որպէս ուսաւն իսկ 'ի նմանէ՝ կամէր միմեամբք զերկոսին կողմանս տկարացուցանել, այսպիսի ինչ հնարս հնարեցաւ. որպէս զի ծանր ծանր պահանջանօքն յԱթենացւոց վրիպեսցի Տիսափեռն յաջողել 'ի դաշնաւորութիւն ընդ նոսա: Կարծեմ այս էին կամք և Տիսափեռնեայ, այլ առ երկիւղի միայն, զի մի տեսեալ Ալկիբիադեայ զանյօժարութիւն նորա յուխտ միաբանութեան՝ կամիցի ցուցանել Աթենացւոց թէ չէ անհնարին հաւանեցուցանել զՏիսափեռն 'ի նոյն՝ որ շատ իսկ յառաջամիտ էր զիջանել առ նոսա, որ այնպէս ժլատ առ նա ինքն գտանէին: Եւ այսպիսի ինչ առաջի արար նոցա Ալկիբիադ յանդիման Տիսափեռնեայ. մինչ զի Աթենացիք որ 'ի բազում ինչ խնդիրս խոնարհեալ տեղի ետուն, չկարացին լսել և այսմ: Քանզի զբովանդակ Յոնիա խնդրելով և զկղզիս մերձաւորս և զայլս, ոչ հակառակեցան Աթենացիք. և երկուցեալ Ալկիբիադեայ թէ գուցէ յերևան գայցէ անկարողութիւն իւր, յաւել խնդրեաց յերրորդ ժողովի անդ բանակցութեան՝ թոյլ տալ արքային կազմել նաւս, և շուրջ գալ զծովեզերբք տէրութեան նոցա, ցո՛րվայր և որպիսի՛ ինչ հանդիսի նաւաց կամիցի նա մերձենալ. ընդ որ ոչ ևս այլ հանդուրժեալ Աթենացիք ընդ պատրանս Ալկիբիադեայ, լի ցասմամբ դարձան 'ի Սամոս:

ԾԷ. Յետ այնորիկ Տիսափեռն 'ի նմին իսկ ձմերանի շարժէր երթալ 'ի Կաւնոս, և խորհէր ածել վերստին զՊեղոպոնեսացիս 'ի Միլետոն, և նորով դաշամբ ուխտի տալ նոցա պարէնս 'ի լիութիւն բանականի, և մի իսպառ դըր-

ժել նոցա զայն, զի մի՛ 'ի չքաւորել բազմութեան նաւախմբին և 'ի ստիպել 'ի ծովամարտ՝ տկարասցին առաջի Աթենացւոց, և կամ յանռոճիկ նաւաստւոյն Թափուրացեալք, և լցի Աթենացւոց համանել ըղձից. և որ խնթալի ևս էր, մի՛ 'ի խնդիր պարենից զցամաքերկիրն ապաստակութեամբ ապականեսցեն: Նախահոգակ խորհրդով յայսմ ամենայնի և ըստ կանոնս հնարագիտութեան առ 'ի կչիռ հաւասարութեան զՀելլենս պահելոյ, կոչեցեալ զՊելոպոնեսացիս բաշխեաց նոցա պարէնս կերակրոյ. և կռեաց ընդ նոսա զայս երրորդ ուխտ միաբանութեան,

ԾԸ. « Յերեքտասաներորդի ամի Թագաւորութեան Դարեհի, և 'ի պարետութեան Աղեքսիպպիդայ 'ի Լակեդեմոն կռեցան դաշինքս 'ի Մէանդրեայ դաշտավայրին 'ի մէջ Լակեդեմոնացւոց և նիզակակից դաշնաւորաց նոցա, և 'ի մէջ Տիսափեռնեայ և Հերամենեայ և որդւոց Փառնակայ վասն գործառնութեանց արքայի և Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա:

Գաւառք տէրութեան որ 'ի մասին Ասիոյ, արքայի են, վասն գաւառացս այսոցիկ արասցէ արքայ՝ որպէս և կամ իցէ նմա: Եւ մի՛ իշխեսցեն Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցուն կոխել զերկիրն արքունի չարակամ մտօք, և մի՛ արքայ զերկիր տէրութեան Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցին և ոչ միով իւիք վնասու պատճառաւ:

Եթէ 'ի Լակեդեմոնացւոց ոք կամ 'ի դաշնաւորաց մտցէ յերկիր արքունի չարամիտ խորհրդով՝ արգելուցուն զայն Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա:

Եւ եթէ 'ի նախարարաց ոք արքայի չարակամութեամբ յառնիցէ 'ի վերայ Լակեդեմոնացւոց կամ դաշնաւորաց նոցա՝ խափանեսցէ զայն արքայ:

Հայթայթեսցէ Տիսափեռն ըստ ուխտի դաշանց ռոճիկ պարենի այժմեան նաւախմբին մինչև ցգալուստ արքունի նաւաց: Եւ 'ի ժամանել հանդիսի նաւաց արքայի՝ եթէ հաճոյ իցէ Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա ռոճկօք

վարձկանել զնաւս իւրեանց՝ 'ի կամս նոցա լիցի առնել զայդ։ Իսկ եթէ 'ի Տիսափեռնեայ կամեսցին առնուլ զռոճիկ, առնուլ առնուցուն, այլ պայմանաւ զի 'ի վախճանի պատերազմին հատուսցեն Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա որչափ ինչ ընկալան 'ի նմանէ արծաթ։

Ի հասանել արքունի նաւաց՝ հասարակ ընդ նոսա պատերազմեսցին և նաւք Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց․ որպէս ինչ Տիսափեռնեայ և Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա հաճոյ թուեսցի։

Եւ եթէ լուծանել զպատերազմն որ ընդ Աթենացիս է կամեսցին, միաբան հաւանութեամբ զայն արասցեն»։

ԾԹ․ Այսոքիկ եղեն ահա պայմանք դաշնադրութեանս։ Եւ պատրաստէր այնուհետև Տիսափեռն ածել ըստ խոստման իւրում զխումբս նաւաց Փիւնիկեցւոց, և զայլս ամենայն մի ըստ միոջէ ապա 'ի գլուխ տանել․ կամ գոնեա այնպէս ինչ կամէր ցուցանել, եթէ չէր անփոյթ զիրացն։

Կ․ Ի վերջ կոյս ձմերան առին Բիովտացիք մատնութեամբ զՈրոպոս, զամրոց պահանորդաց Աթենացւոց։ Ձեռն եառուն յայսմ և ոմանք յԵրետրիացւոց, և որք յՈրոպացւոց զհետ էին ապստամբութեան Եւբիոյ․ ցորչափ 'ի ձեռս էր Աթենացւոց ամրոցս այս՝ իշխեցող Երետրիոյ, անմարթ էր չլինել մեծապէս վնասակար երկրին և բովանդակ Եւբիոյ։ Տիրապետեալ միանգամ Որոպայ՝ անցին Երետրիացիք 'ի Հռոդոս, կարդալով զՊելոպոնեսացիս 'ի թիկունս օգնականութեան Եւբիոյ․ այլ սոքա Քիացւոց մանաւանդ նեղելոց յօգնութիւն փութալով՝ ամբարձեալ 'ի Հռոդոսէ համախումբ նաւէին․ և հասեալ 'ի Տրիոպիոն, տեսին 'ի հեռուստ 'ի խորս զհանդէս նաւացն Աթենացւոց խաղալ 'ի Քաղկեայ․ և զգուշացեալ չհանդիպել իւրեաց՝ սոքա 'ի Սամոս և նոքա 'ի Միլետոն առանձնեալ գնացին․ և 'ի մտ առին անդ յայնժամ՝ եթէ առանց կռուոյ չկարեն ձեռն տալ Քիացւոց։ Ընդ ձմերայնոյս վախճան եղև և

քաներորդի ամի պատերազմիս, զոր պատմագրեաց Թուկիդիդէս։

ԿԱ. Ի գալ յաջորդի ամարայնոյ՝ և 'ի բանալ իսկ դրանց գարնան, առաքեցաւ Դերկիլիդաս սպարտացի սակաւաձեռն զօրու յԵլլեսպոնտոս ընդ ցամաք՝ տալ վտարանջել զԱբիւդոս զդաշնակ հատուած Միլեսիացւոց։ Քիացիք՝ 'ի դանդաղել Աստիոքեայ յօգնութիւն նոցա, նեղեալք յերեսաց պաշարման բռնադատեցան 'ի նաւամարտ. քանզի մինչդեռ Աստիոքոս 'ի Հռոդոս էր, դէպ եղև Քիացւոց յետ մահուն Պեդարիտեայ ընդունել հրամատար զԼէոն սպարտացի 'ի Միլետեայ, որ ընդ Անտիսթենեայ եկեալ էր ընդ սպայս. ընդ որում նաւք երկոտասան 'ի պահանորդաց անտի Միլետեայ, յորոց հինգ 'ի Թուրիոյ էին, չորք 'ի Սիրակուսայ, և մի մի յԱնէայ, 'ի Միլեսիացւոց և Նորին իսկ Լէոնի։ Ելեալ Քիացւոց միադունդ 'ի քաղաքէն կալան տեղի մի ամուր. 'ի նմին ժամանակի և երեսուն և վեց նաւք նոցա յառաջեալ ընդդէմ երեսուն և երկուց նաւաց Աթենացւոց՝ հարան ընդ նոսա 'ի ծովամարտ։ Եղև պատերազմ խիստ, յորում աննկունք Քիացիք և դաշնաւորք նոցուն, 'ի խոնարհել աւուրն 'ի մուտս՝ դարձան մտին և ինքեանք 'ի քաղաքն։

ԿԲ. Յետ այսորիկ 'ի գալ յերևել Դերկիլիդեայ հետի 'ի Մելիտեայ յԵլլեսպոնտ՝ ոչինչ յամեաց Աբիւդոս անցանել վտարանջութեամբ 'ի կողմն նորա և Փառնաւազայ. յետ երկուց աւուրց զնոյն արար և Լամպսակոն։ Ընդ այս լուր աճապարեաց Ստրոմբիքիդէս քաներկու նաւուք 'ի Քիոյ եհաս անդր 'ի Թիկունս. բազումք 'ի նաւաց կազմեալ 'ի փոխադրութիւն զօրուն՝ բարձեալ բերէին զօրականս մինդաւորս։ Եւ հարեալ ուրէք 'ի կռուի զԼամպսակեցիս, յարձակեալ էառ զԼամպսակոն՝ որ անպարիսպն էր, և զկապուտ և զաւար քաղաքին առեալ և զստրուկս, կրկին բնակեցոյց 'ի նմա զազատ մարդիկն, և խաղաց ինքն 'ի վերայ Աբիւդեայ։ Եւ զի յամառեալ պնդէր քաղաքն չլինել

անձնատուր, և զի չկարաց նա տանուլ զայն յարձակմամբ, անց յայնկոյս հանդէպ Աբիւդեայ. և զՍեստոս քաղաք 'ի Քերսոնեսոն՝ զոր երբեմն Մարք ունէին, կարգեաց յամրոց քաջադէպ 'ի պահ զգուշութեան բովանդակ Ելլեսպոնտեայ:

ԿԳ. Ի ժամանակին յայնմիկ զօրացեալ Քիացիք սկըսան երևել 'ի ծովու, և որք 'ի Միլետոն էին և Աստիոքոս լուեալ զնաւամարտ նոցա և զմեկնել Ստրոմբիքիդեայ և նաւացն, քաջալերեալ խրախուսեցան: Եկն Աստիոքոս երկոքումբք նաւուք 'ի Քիոս, և խմբեալ անդանօր զնաւսն էանց 'ի Սամոս. և զի յերկմիտս էին զիրաց Աթենացիք, չխլրտեցան ընդդէմ նորա 'ի կռիւ, և դարձ արար վերստին նա 'ի Միլետոն:

Առ սովին և կանուխ ևս երթայր և 'ի կործանումն դիմէր վարչութիւն ռամկին յԱթէնս: Իսկ որք ընդ Պիսանդրեայ հրեշտակութեամբ առ Տիսափեռն էին գնացեալ, դարձան յայնժամ 'ի Սամոս. և ամրագոյնս պնդէին 'ի խորհուրդ առաջարկութեան իւրեանց 'ի զօրուն, մինչև նոցուն իսկ ժողովրդեան Սամոսացւոց թախանձել զաւագանին միաբան փորձ փորձել յազնուապետական վարչութիւն, որք թէպէտ երկպառակ երբեմն յիւրեանս՝ 'ի բարձումն նորին այժմ ճգնէին: Միաբանեալ յայնժամ և Աթենացիք 'ի Սամոս՝ սահմանեցին 'ի բաց կալ յԱլկիբիադեայ, որ չթուէր իսկ յօժար գալ յընկերհաշտութիւն ազնուապետական. և զի 'ի վտանգի էին իրք նոցա, անձամբ անձանց հոգելով՝ չառնել անտես զկարևորսն, և տոկալ տևել 'ի պատերազմ, և զի յառաջամիտք յիւրեանց իսկ 'ի բնիկ ստացուածոց լնուլ զծախս արծաթով և այլով ամենայնիւ. քանզի ոչ ևս 'ի վերայ օտարին, այլ 'ի վերայ անձանց տագնապեալ զճգնութիւնս զայս կրէին:

ԿԴ. Եւ այսպէս քաջապնդեալ զանձինս՝ արձակեցին զՊիսանդրոս և զկէսս 'ի թուոյ դեսպանացն յԱթէնս յուղղութիւն վարչութեան աշխարհին, պատուէր տուեալ

նոցա, յամենայն հպատակ քաղաքանին՝ ընդ որ անցանիցեն՝ հաստատել զռամկաւուց վարչութիւն, և զայլս 'ի դեսպանացն այսր անդր ընդ ամենայն քաղաքս իշխանութեան իւրեանց առաքէին. և զԴիտորեփէս՝ որ առ Քիոսիւ կայր հրամատարութիւն, 'ի վերին Թրակիա առաքեցին: Հասեալ նորա 'ի Թասոս՝ ելոյծ զիշխանութիւն ռամկին. այլ յետ մեկնելոյ նորա անտի յամսեանն երկրորդի, պարըսպեցին Թասիացիք զքաղաք իւրեանց, և տառնգանեալ զԱթենացւովք և զազնուապետութեամբ նոցա՝ ակն կալեալ մնացին ազատութեան 'ի Լակեդեմոնացւոց: Էին նոցա և արտաքոյ վտարանդիք ոմանք 'ի Պելոպոնէս՝ 'ի ձեռն Աթենացւոց տարագրեալք, որք միջնորդութեամբ բարեկամաց իւրեանց 'ի քաղաքին խորհէին գալ նաւուք ձեռն տալ 'ի վտարանջութիւն Թասոսի: Յորում և յաջողեցան իսկ 'ի բարւոք և 'ի հաստատուն վարչութիւն վերածեալ զքաղաքն, լուծաւ և հակառակող նոյին իշխանութիւն ռամկին. և որ զռամկաւուց իշխանութիւն կարգել կամէին Աթենացիք՝ ձախողեցան և նոքա 'ի խորհուրդս իւրեանց. Նոյն կարծեմ դէպ եղև նոցա և յայլ բազում քաղաքս՝ զորս դեռ ևս ընդ ձեռամբ ունէին: Զի զգօնութեամբ վարեալ քաղաքանւոյն և աներկիւղ համարձակութեամբ, և արհամարհեալ զկեղծանուն օրինադրութեամբ Աթենացւոց՝ հասին 'ի ստոյգ ազատութիւն:

ԿԵ. Իսկ որ ընդ Պիսանդրեայ զցամաքաւ նաւարկելով՝ ըստ սահմանելոյն լուծեալ 'ի քաղաքս քաղաքս զիշխանութիւն ռամկին, և առեալ 'ի նոցանէ զօր ասպարակիր օժանդակ, նոքօք հանդերձ եկին հասին յԱթէնս, և գտին վաղ իսկ 'ի կուսակցաց իւրեանց բազում ինչ 'ի գլուխ հանեալ: Քանզի պատանեաց ոմանց միաբանեալ յիւրեանս՝ գաղտ սպանեալ էր զԱնդրոկլէս ոմն ռամկավար, գլուխ ժողովրդեան և նախկին պատճառ տարագրութեան Ալկիբիադեայ: Եւ զայս յերկուս դէմս առնէին. մի՝ զի առաջնորդ էր այրն ռամկին, և երկրորդ՝ շնորհակս իմն առնել

նովաւ Ալկիբիադեայ, իբրու պատրաստելոյ 'ի դարձ 'ի հայրենիս, և իբրու հաշտարարի Տիսափեռնեայ ընդ քաղաքին նոցա: Սոյն օրինակաւ և զայլս ոմանս 'ի հակառակորդաց անտի իւրեանց խարդաւանեալ բարձին 'ի միջոյ, և տարածեալ սփռեցին զրոյցս, եթէ բաց 'ի զօրականէն չընկալցի ոք այսուհետև ռոճիկ. և ոչ ումեք արտաքոյ հինգ հազարացն, և որոց ընչիւք և անձամբ օգտակարք իցեն հայրենեաց՝ ձեռնամուխ լիցի լինել 'ի վարչութիւն աշխարհին:

ԿԶ. Եւ այս ամենեքին իսկ պատշաճական թուէր բազմաց, նոցա միայն ունել զվարչութիւն քաղաքին, որք ընդ փոփոխութիւն օրինաց նորա հետամուտք էին: Բայց սակայն դեռևս ամբոխ ռամկին և ատեան խորհրդոյ Բակլայի[1] գումարէր. այլ չկամէին ինչ մի անհաճոյ դաւակցացն միաբանելոց սահմանել, որոց ատենաբանք զխորհեալս և զխօսեալս 'ի նոցանէ քննէին կանուխ: Եւ չիշխէր ոք արտաքոյ ձիկ հանել, երկուցեալ 'ի միաբանելոց անտի երդմնակցաց՝ զորոց տեսանէին զյոքնաթիւ բազմութիւն. և եթէ համարձակէր ոք բանս ընդդէմ արկանել, դիպող իմն հնարիւք բառնայր նա արագապէս 'ի միջոյ: Եւ դաւաճանից ոչ յոյզ լինէր և խնդիր, և ոչ 'ի վերայ կասկածաւորաց ատեան դատաստանի: Լռեալ սարսէր ժողովուրդն, և այնպիսի էր ահն և հոյն, մինչև շահ համարել լռութեամբ խոյս տալ 'ի բռնութենէ չարեաց: Զդաւակից միաբանեալսն քան զոր էին յոլովագոյն կարծելով՝ լքեալ վհատէին. և առ ընդարձակութեան մեծի քաղաքին և առ անծանօթ օտարութեան իրերաց՝ անհնարին լինէր նոցա 'ի վերայ կալ թուոյ բազմութեան դաւակցաց. որով և անմարթ էր հաւատալ ումեք զգաղտնիս խորհրդոյ իւրոց առ 'ի միաբան վրէժխնդրութիւն. զի երկիւղ էր անծանօթի

[1] Ատեան Հինգհարիւրոց՝ որ 'ի բակլայս սպիտակս և 'ի սեաւս զընտրութիւնս առնէին, յորոց բազումք յատենակալացս կարգէին 'ի բարձս աւագութեան և 'ի յանձանձանս աշխարհին:

ումեք հանդիպել, և կամ ծանօթի անհաւատարմի և մատնչի։ Կուսակիցք անգամ ժողովրդեան 'ի հաւասար կենակցութեան ընդ միմեանս, իբրու 'ի մէջ դաւակցաց դեգերելով՝ խիթացեալ զգուշանացին յիրերաց։ Էին էին և այնպիսիք ոմանք 'ի դաւադիրս, զորս անմարթ էր 'ի կողմն ազնուապետաց կարծել. որք և մեծապէս պատճառք լինէին կասկածոտ երկմտութեան ռամկին, և անվեհեր ապահովութեան ազնուապետաց իշխանութեան՝ բառնալով խպառ զհասարակաց հաւատս ժողովրդեան։

ԿԷ. Ի ժամանակին յայնմիկ հասեալ և Պիսանդրեանք 'ի քաղաքն՝ մղէին վարէին 'ի լիովին կատարումն գործոյն։ Գումարեցին նախ զժողովուրդն և ետուն նոցա ընտրել զարս տասն, իբրու 'ի տասնպետ դպիրս խմբագիրս, իշխանութեամբս 'ի ժամադիր աւուր առաջի առնելոյ ժողովրդեան զազգ վարչութեան՝ զոր ընտրելագոյն համարեսցին։ Եւ 'ի կէտ եդեալ աւուրն խմբեցին սոքա զժողովն 'ի Կողոնոս, յորում մեհեան է Պոսիդոնի, իբրու տասն ասպարիսաւ հեռի 'ի քաղաքէն։ Ոչինչ այլ առաջի արկին անդ դպիրքս, բայց զի օրէն էր ամենայն Աթենացւոց ածել 'ի մէջ զկարծիս իւր. զսպառնալիս սակայն պատուհասից 'ի վերայ կապելով՝ որ յանդգնեսցի հակառակ օրինաց կամ այլ ինչ վնասակար առաջի առնել։ Եւ ծանուցաւ անդանօր յայնժամ անպատրուակ, եթէ դադարեալ է այնուհետև ամենայն իշխանութիւն՝ որ ըստ նախնոյ վարչութեան էր, բարձեալ և ամենայն ռոճիկ և վարձկանութիւն ատենակալաց. և հրաման եղև ընտրելոյ զարս հինգ իբրու նախագահս, որոց իշխանութիւն լիցի ընտրել արանց հարիւրից, և իւրաքանչիւր ումեք 'ի հարիւրոցն երիս երիս իշխանակիցս. և մտեալ Չորեքհարիւրոցս այսոցիկ 'ի խորհուրդ, վարեսցեն ինքնօրէն զտեսչութիւն աշխարհին. կոչեսցեն և զՀինգհազարսն 'ի ժողով երբ և հաճոյ թուեսցի նոցա։

ԿԸ. Եւ էր ինքնին Պիսանդրոս առաջարկող խորհըր-



գոյս, որ և այլովք բազմօք յայտնապէս նախանձաւոր ցուցաւ 'ի լուծումն իշխանութեան ռամկին. բայց որ այնպէս զամենայն կարգեաց՝ զի յայս վախճան առնուցուն իրք, և զորոց 'ի բազմաց անախ զհետ պնդեալ ձգնէր՝ Անտիփոն եղև: Սա այս այր ոչ ումեք յԱթենացիս ժամանակին տեղի ետ յառաքինութեան մասին, զօրաւոր 'ի խորհուրդ և 'ի բան, որ չերևելովն ինքնակամ 'ի ժողովս ռամկին և ոչ 'ի վէճս հասարակաց, անաչառ խիստ գնացիւք կասկածաւոր էր ամբոխին. բայց եկակոչ դատափետելոցն յատեանս և 'ի ժողովուրդն՝ խորհրդատու էր անզուգական և ապաւէն հզօր: Սա ինքն ապա յանկանել Չորեքհարիւրոցն և 'ի պատուհասակոծ լինել նոցուն՝ ամբաստանեալ 'ի ժողովըրդենէ հերև կուսակից նոցին, յընդունելն զվճիռ մահուն՝ քան զամենայն ատենաբանս ժամանակին հզօրագոյն յոյժ երևեցաւ 'ի պատասխանատուութեան իւրում [1]:

Ի սոսա յամենեսին նշանաւոր եկաց և Փրինիքոս 'ի մեծամծիգն իւր ջանս 'ի հաստատութիւն նուազ իշխանաց, զի երկնչէր յԱլկիբիադեայ, գիտելով զնա տեղեակ ամենայն բանագնացութեանց իւրոց ընդ Աստիւքեայ 'ի Սամոս. և համարէր՝ որպէս 'ի դէպ էր կարծել, թէ չյաջողեսցի երբեք դարձ Ալկիբիադեայ առ նուազ իշխանօքն 'ի հայրենիս. և զի ըմբռնեալ նորա միանգամ 'ի մեծ վտանգ՝ պնդագոյնս եկաց 'ի նմա և անսասան:

Էր և Թերամենէս որդի Ագնոնեայ 'ի գլխաւորաց անաւ միաբանելոց 'ի քակտումն իշխանութեան ռամկին, ոչինչ անզօր ոք և սա 'ի բան և 'ի խորհուրդ: Որպէս զի 'ի բազում հանճարեղ որերոյ ձեռնարկեալս այս գործ մեծ և ծանր՝ ոչ անճահս ինչ 'ի գլուխ ելեալ կատարէր: Զի դըժուարին յոյժ էր, յետ իբրու հարիւրամեան ժամանակի

[1] Անտիփոն վարժապետ եկաց Թուկիդիդեայ, յորմէ և մեծի վարկին և սիրոյն առ նա գլխաւոր պատճառք: Անողոքելի առ նա գտեալ Աթենացիք, և ոչ յԱստիկէ թաղել զնա ներեցին:

քակելոյ իշխանութեան բռնաւորաց՝ կապել յազատութենէ զժողովուրդն Աթենացւոց, որ ոչ միայն անվարժ էր տանելոյ զլուծ հպատակութեան, այլ և ընդ ժամանակ աւելի քան կիսոյ դարու սովորեալ իշխել այլոց։

կթ. Իբրև առանց ուրուք հակառակելոյ զայս ամենայն օրինադրեալ արձակէր գումար ժողովոյն, մուծան ապա յետ այնորիկ Զօրէքհարիւրքն ըստ այսմ 'ի խորհրդարանն։ Ամենայն այր աթենացի հանապազօր 'ի զէնս էր. կէսք 'ի վերայ պարսպաց, և այլք 'ի սահմանեալ նոցա պահս յերեսաց Թշնամեաց ամրացելոց 'ի Դեկալիա։ Ի ժամադիր աւուրն ըստ սովորութեան 'ի բաց արձակեցին զորս չէին 'ի Թուոյ անտի երդմնակից միաբանելոց, և հրաման ետուն գաւակցաց հանդարտեալ կալ փոքր մի հեռի 'ի կայից անտի, և 'ի խլրտել ուրուք՝ զէն վերացուցեալ հակառակ կալ նմին։ Եւ որք ընկալանն զայս պատուէր Անդրոսացիք էին, Տենոսացիք, երեքհարիւր Կարիստացիք, և 'ի գաղթականաց անտի Եգինայ՝ խախտելոց 'ի քաղաքէն Աթենացւոց, որք և սովին խորհրդով վառեալք էին 'ի զէն։ Եւ իբրև այս այսպէս կարգեցաւ՝ գնացին Զօրէքհարիւրքն զինեալ 'ի դաշոյն ընդ հանդերձիւք գաղտ ընդ հարիւր քսանից երիտասարդ Հելլենաց՝ 'ի պէտս հարկին 'ի կռիւ գալ նոքօք. մտին սոքա յանկարծ 'ի խորհրդարան առենի ծերակուտին Հնգհարիւրոց, հրամայեցին նոցա՝ առեալ զվարձս ռոճկին 'ի բաց գնալ 'ի տեղւոյն. և ցորչափ 'ի պաշտաման էին, զվարձս նոցա անձամբ բերեալ՝ յելս անդ 'ի ժողովարանէն մատուցեալ տային նոցա։

Հ. Իբրև տեսին զխորհրդարանն այսպէս լուծեալ անկռիւ, առանց խլրտելոյ և այլոց քաղաքացւոց դադարեալ լռեցին. և Զօրէքհարիւրոցն մտեալ 'ի տուն խորհրդոց, կարգեցին վիճակաւ յիւրեանց անտի զԲրիտանիկ առենակալս. և որ ինչ առ դիս սահմանեալ էին աղօթք և նուէրք 'ի մուտս անդ պաշտաման՝ ըստ օրինի կատարեցին. յետոյ ապա բաժնում ինչ 'ի կարգաց վարչութեան ժողովրդ-

դեան փոխեցին, առանց սակայն յետս կոչելոյ զաքսո-րեալս 'ի պատճառս Ալկիբիադեայ: Իսկ յայլս ամենայն խըս-տութեամբ գնային, զոմանս՝ Թէպէտ ոչ բազումս՝ իբրու խոհական խորհրդով սպանեալ բարձին 'ի միջոյ, զայլս 'ի կապանս արկին, եղեն և զորս տարագիր արարին. առաքե-ցին և առ Ագիս արքայ Լակեդեմոնացւոց հրեշտակս 'ի Դեկաղիա 'ի հաշտութիւն խաղաղութեան, զի 'ի դէպ էր արքային ընդ նոսա քան ընդ յեղյեղուկ ռամկին 'ի դաշինս հաւանութեան գալ:

ՀԱ. Եւ զի 'ի խռովութեան կարծէր արքայ զքաղաքն, և ոչ այսպէս վաղվաղակի Թողուլ ռամկին լոկ զնախնին իւր ազատութիւն, 'ի մերձենալն միայն առ նոսա հզօր բա-նակաւ, խորհէր բորբոքել 'ի նոսա զխանձս խռովութեան նաև 'ի ժամուն իսկ անհաւատանայր իսպառ եթէ չիցէ 'ի յոյզս քաղաքն. վասն որոյ չարար ինչ խաղաղական պա-տասխանի եկելոցն 'ի Չորեքհարիւրոց: Եւ առաքեաց ետ բերել 'ի Պելոպոնեսեայ զօր բազում, և ոչ անագանեալ էջ մերձեցաւ ինքնին ընդ պահանորդ գնդին Դեկաղիոյ և ընդ նորոգ եկելոյ զօրուն 'ի պարիսպս Աթենացւոց. յուսայր զի ահաբեկ Աթենացիք ձեռն տացեն անդէն զօրուն երևե-լոյ, և կամ ինքնին յարձակմամբ 'ի բուռն առնուցու ան-վրէպ զ'ի ներքոյ և արտաքոյ խռովութեամբ ծփեալ զքա-ղաքն, և զլքեալ Թափուր 'ի մարդկանէ զերկայն պարիս-պըն: Այլ իբրև հուպ մատեաւ Թագաւորն, Աթենացիք բնաւին անշարժ 'ի ներքս 'ի քաղաքին՝ յանկարծ հանին 'ի դուրս հեծեալս և գունդ մի ասպարակիր և աղեղնաւորս և զօր մեկնակազէն, և դիմեալ տապաստ արկեալ զմօտ մատուցեալսն, և 'ի վերայ դիականց նոցա և զինուց կա-ցին յաղթականք. 'ի միտ առեալ յայնժամ արքային՝ յոր ինչ ձեռն էարկ, և վերջոտնեալ հեռացաւ դարձաւ ընդ կրունկն: Եկաց ինքն արքայ և իւրքն 'ի Դեկաղիա, և զե-կաւոր օժընդակ զօրականն՝ յետ յամելոյ զաւուրս ինչ ան-դանօր՝ արձակեաց 'ի տունս իւրեանց: Դարձան յետ այ-

տորիկ Զօրեքհարիւրքն առնել այլ նոր հրեշտակութիւն առ Ագիս արքայ. և յընդունել զնոսա արքային և խորհուրդս բարեաց նոցա տալ, առաքեցին նոքա և 'ի Լակեդեմոն 'ի խնդիր հաշտութեան:

ՀԲ. Արձակեցին և արս տասն 'ի Սամոս ողոքով հանդարտելոյ զզօրն, զի ոչ 'ի վնաս ինչ քաղաքին և քաղաքացւոց, այլ 'ի փրկութիւն հասարակաց կարգեցաւ ազնուապետ իշխանութիւնն. և թէ ոչ Զօրեքհարիւրքն միայն, այլ և Հինգհազարքն կան 'ի գլուխ գործոց աշխարհին. Թէպէտ և ոչ երբեք Աթենացիք վասն բանակի զօրուն և վասն գործոց արտաքոյ սահմանի տէրութեան, որչափ և մեծ լինէր այն և կարեւոր, զժողով Հինգհազարաց խմբէին: Յետ հաստատելոյ իշխանութեան իւրեանց՝ փութացան նոքա տալ և զայլ կարեւոր հրահանգս նուիրակացն, խիթացեալ՝ որպէս և դիպաւն իսկ, թէ գուցէ անսաստեսցէ ամբոխն նաւորդ ընդդէմ ազնուապետացն, և աստի սկիզբըն լեալ չարեաց, տապալեսցի իշխանութիւն նոցա:

ՀԳ. Եւ կանուխ իսկ 'ի Սամոս պատրաստէր յեղափոխութիւն 'ի կողմն ռամկապետութեան. և դէպ լինէր այսպիսի ինչ 'ի ժամանակին, յորում Զօրեքհարիւրքն կարգեցան: Զի որք երբեմն 'ի Սամոսացւոց յարուցեալ ընդդէմ ձոխից զկողմն ռամկին ունէին, շրջեալ յայնժամ զմիտս՝ զՊիսանդրեայ զհետ գնացին, յորմէ հետէ երեւեցաւ նա 'ի Սամոս. և ընդ դաւակցաց Աթենացւոց միաբանեալ արք երեքհարիւր, և խորհէին գալ անկանել 'ի վերայ որոց զկողմն ռամկավարութեան ունել կարծէին: Եւ զՀիպերբոլ ոմն աթենացի զչար և զպանդոյր այր՝ խեցեկոյտ վճռով դատապարտեալ, ոչ առ երկիւղի զօրութեան առնն և արժանեաց, այլ առ ապիրատութեան նորա և ամօթոյ նախատանաց քաղաքին՝ սպանին զնա դաւակիցքն, ձեռն տալով նոցա յայս և Քարմինոս ոմն 'ի զօրավարաց և ոմանք յԱթենացւոց՝ արժանաւոր վստահութեան 'ի նոսա և հաւատոց ծանուցեալ արք. յորոց 'ի ձեռն և այլ ինչ

այսպիսի գործեալ, խորհէին նոքա իսկ ելանել ընդդէմ
կուսակցաց ժողովրդեան։ Որոց զգաստ լեալ դաւոյն 'ի
վեր հանին զայն զօրավարաց Լեոնի և Դիոմեդոնի, որք մե-
ծարոյք առ ռամկին, դժկամակէին ընդ սակաւուց իշխա-
նութիւն. և ազդ արարին զայն Թրասիբուլեայ և Թրասիլ-
լեայ, յորոց առաջինն հրամատար էր պատերազմիկ նաւաց
և երկրորդն ասպարաւոր զօրուն գնդապետ, և այլոց ո-
մանց յայտնի հակառակորդաց դաւակցաց խմբին։ Եւ
աղաչէին նոքա զարսն մի անտես առնել զնոսա 'ի կորուստ
և մի թողուլ զՍամոս օտարանալ յԱթենացւոց, որով անէ
տուկայ ցարդ պետութիւն նոցա։ Լուեալ նոցա զայս ա-
մենայն, և մատուցեալ միում միում 'ի զօրուէն յորդո-
րէին զնոսա չհաւանել չտալ տեղի. մանաւանդ զՊարա-
լեանս Թախանձէին՝ զարս աթենացիս, զՊարալեան նա-
ւաղն, հակառակորդ միշտ աղնուապետական վարչութեան
և յառաջ իսկ քան զհաստատութիւն նորին։ Եւ այնու-
հետև Լեոն և Դիոմեդոն զօրավարքս 'ի գնալ ուրեք 'ի ծո-
վուն, յանձն առնէին նոցա նաւս 'ի պահ զգուշութեան։
Եւ յարձակել Երեքհարիւրոց 'ի վերայ նոցա պատերազ-
մաւ, զէն առին սոքա ամենեքեան՝ մանաւանդ Պարա-
լեանքն, և յաղթեաց կողմն ժողովրդեան 'ի Սամոս։ Եւ
յԵրեքհարիւրոց դաւադրաց զերեսունս սպանին, զերիս
'ի գլխաւորաց յաքսոր դատապարտեցին. և այլոց անյու-
շութիւն և ներումն յանցանաց քարոզեալ, դարձան միա-
բանութեամբ 'ի ընկերահաճոյ քաղաքավարութիւն ժո-
ղովրդեան։

ՀԴ. Եւ առաքեցին վաղվաղակի Սամոսացիք և զօրա-
վարքն զՊարալեան նաւն յԱթէնս, և 'ի նմա զՔերէաս
զորդի Արքեստրատեայ՝ զայր աթենացի, նախանձաւոր
առաջնորդ յեղափոխութեանս, ծանօթս տալ զիրացն.
քանզի անգէտք էին դեռ ևս զանցից բռնակալութեան Չո-
րեքհարիւրոցն։ Ի ժամանել սոցին 'ի քաղաքն՝ աճապա-
րեալ բռնաւորացն կալան զերկուս կամ զերիս 'ի Պարա-

լեանց և 'ի կալանս արկին, և զայլս, փոխադրեալ յայլ նաւ պատերազմիկ կարգեցին զնոսա 'ի պահ զԵւբիաւ։ Քերէաս մազապուր զերծեալ 'ի ձեռաց նոցա՝ դարձ արար անդէն 'ի Սամոս պատմել զպայման քաղաքին Աթենացւոց, աստուարացուցանելով խիստ զչարիսն՝ որպէս եթէ 'ի հարուածս գանից դատապարտեալ քաղաքացիք չկարեն և ոչ ճիկ անգամ հանել ընդդէմ բռնաւորաց, և թէ որդիք նոցա և կանայք 'ի խայտառականս են մատնեալ. և թէ խորհին բռնաւորք կալեալ զազգակիցս և զմերձաւորս զօրականին՝ որ 'ի Սամոս, և ոյք չենն ընդ նոսա համախոհք՝ 'ի բանտ արկանել, և 'ի չխոնարհելն 'ի հլուութիւն հնազանդութեան, սրով կոտորել. և զայլ ինչ բազում սուտութեամբ բարդեալ կուտէր զնոցանէ։

ՀԵ. Ընդ այս լուր դրդեալ շարժեցաւ զօրականն 'ի վերայ գլխաւորաց ազնուապետութեանն և 'ի վերայ համախոհից նոցին. այլ արգելեալք ապա յորոց միջնորդ և յորդոր լինէին՝ մի խապառ եղծեալ կորուսանել զամենայն, մինչդեռ առ դուրս կայր թշնամին նաւատորմղաւն, հազիւ հանդարտեալ լռեցին։ Յետ այսորիկ Թրասիբուլոս որդի Լիւքեայ և Թրասիլլոս առաջնորդք յեղափոխութեանն կամելով յայտնապէս պնդեալ ամրացուցանել զռամկավարութիւն 'ի Սամոս, յերդմնի արարին զզօրականն յերդմունս ծանունս, մանաւանդ զկուսակիցս նուազ իշխանաց միաբան հաւանութեամբ ռամկաբար քաղաքավարելոյ, և չկալ յետս 'ի պատերազմելոյ ընդ Պելոպոննեսացիս, և հակառակորդք միշտ ընդ Զորեքհարիւրոցն՝ չգալ երբեք 'ի բանակցութիւն ընդ նոսա։ Երդմնակից գտաւ 'ի սոյն և ամենայն որբուն հասակ սամոսացի. և հաւասար բաժանորդս ընկալաւ զօրականն զսամոսացիս առաջիկայ շահուն և վտանգին, տեսեալ եթէ չէր այլ հնար հասարակաց նոցա փրկութեան. քանզի եթէ Զորեքհարիւրքն և եթէ թշնամիք 'ի Միլետոսյ զօրանային յաղթութեամբ, նոյն կորուստ 'ի վերայ կայր նոցա անվրէպ։

ՀԶ. Անդ այնուհետեւ 'ի հակառակ մրցութիւնս զժամանակն կարգէին. սոքա 'ի բռնադատել զքաղաքն 'ի վարչութիւն ռամկավար, և նոքա զզօրն ընդ սակաւուց մտանել իշխանութեամբ։ Կազմեաց վաղվաղակի զօրականն իւր ժողով, յորում զնախկին զօրավարսն և զորոց 'ի կարգապետաց կասկածէր, արկ զնոսա յիշխանութենէն և զայլս ընդ նոցա կարգեաց հրամատարս պատերազմին նաւաց և զօրավարս, յորս էին Թրասիբուղ և Թրասիլլոս. որոց և յոտն կացեալ 'ի ժողովն անդ յորդոր և քաջալերս մատուցանէին. «Չէ արժան, չէ պարտ մեզ վհատել, ասէին, զի 'ի բաց եկաց 'ի մէնջ քաղաքն. զի նուազունք 'ի բազմաց և 'ի լիացելոց առաւելութեամբ նպաստից զատուցեալ անջատին։ Քանզի 'ի մեր ձեռս է նաւական զօրութիւն, որով բռնադատեմք զքաղաքս՝ որոց իշխեմքս՝ 'ի տուրս հարկաց, որպէս եթէ յորժամ հրամանն յԱթենացւոց անտի քաղաքէն գայր։ Մեր է Սամոս՝ քաղաք ոչ անզօր, որ արդարև ընդ Աթենացիս պատերազմելով և սակաւիկ միւս ևս և բառնայր 'ի նմանէ զպետութիւն ծովուն, և լիցի մեզ վանել զթշնամին յերկրէ աստի, որպէս երբեմն յառաջագոյն։ Եւ զօրաւորագոյն լինիցիմք նաւատորմղաւս 'ի հայթայթել մեզ զկարևորս՝ քան որ 'ի քաղաքին իցեն։ Ի Սամոս հանդարտեալ նստելով տեարք էաք ելի և մտի Պիրէոնի, 'ի նոյն եմք արդ 'ի պայմանի. 'ի չկամել նոցա թողուլ մեզ այսպէս քաղաքավարել, ոչինչ կարասցեն գամագիւտ 'ի նոյն լինել, ինքեանք մանաւանդ 'ի հզօրագունիցս արգելեալ խափանեսցին 'ի ծովէ։ Թէև և ոչ ինչ էր նպաստ քաղաքին մեզ 'ի յաղթութիւն՝ որոց ոչ արծաթ էր առաքել՝ զոր բանակ զօրուս հաւաքէր նմա, և ոչ խորհուրդ կարևոր՝ որով իշխէ քաղաք 'ի վերայ զօրուն. այլ զի յանցեաւ նա 'ի սոսին՝ լուծանելով զհայրենեաց զօրէնս, մինչդեռ մեք անարատ պահելով զայն, 'ի նոյն և զնոսա դարձուցանել ձգնիմք, որով և 'ի խորհուրդս պիտանիս ոչինչ քան զնոսա յետնեալ գտանիմք։ Եւ Ալկիբիադէս՝ եթէ

մատուսցի նմա ապահովութիւն և դարձ 'ի հայրենիս, յօժարագոյնս ընկալցի նա զնիզակակցութիւն յարքայէ: Եւ որ ամենևին մեծն է, եթէ և վրիպել մեզ հասանիցէ յամենայնէ յայսոցիկ, ցորչափ մեզ է նաւախումբն՝ չպակասիցէ մեզ տեղի ապաստանի, յորում իցեն և քաղաքանի և երկիր և հող մշակելի»:

ՀԷ. Այսպէս քաջալերեալ զմիմեանս յախումբս իւրեանց երկարաձիգ բանիւք, ոչ գլային 'ի պատրաստութենէ պատերազմի: Իսկ որ 'ի Զորեքհարիւրոց առաքեցան 'ի Սամոս տասն դեսպանք ժամանելով 'ի Դելոս՝ իբրև լուան զայս ամենայն, զտեղի առին անդանօր:

ՀԸ. Զայսու ժամանակաւ երթայր և բարձրանայր բողոք նաւախումբ զօրուն Պելոպոնեսացւոց 'ի Միլետոն, զի վատթարէին իրք նոցա 'ի ձեռն Աստիոքեայ և Տիսափեռնեայ. քանզի 'ի սկզբան մինչդեռ ինքեանք յուժի էին և նաւական զօրութիւն Աթենացւոց նուազեալ, ոչ կամելով Աստիոքոս գալ 'ի նաւամարտ, և ոչ յայնժամ իսկ՝ երկպառակ յիւրեանս զնոսա տեսանելով և նաւք նոցա ցիր և ոչ ուրեք խմբեալ, և մեր ձգալով, ասէին, նաւացն Փիւնիկեցւոց՝ որ վայրապար անարգիւն խոստմունք են Տիսափեռնեայ, ծախիմք և վատնիմք. և Տիսափեռն յամելով 'ի կատարումն խոստման, և ոչ ըստ օրինի հատուցանելով անթերի զռոճիկ զօրականին՝ վատթարեալ կործանէ զզօրութիւն մեր նաւական: Ոչ ևս արժան է մեզ, ասէին, այսուհետև յամել ընդ վայր, այլ փութալ պխալ 'ի նաւամարտ, և 'ի Սիրակուսացւոց մանաւանդ 'ի նոյն գրգռէին:

ՀԹ. Լուեալ գաշնաւորաց և Աստիոքեայ զտրտունջ զօրուն, սահմանեցին ժողովել ելանել 'ի ծովամարտ, զի և 'ի Սամեայ լուր խռովութեան նոցա լսելի լինէր. և ամբարձեալ համագումար նաւուք հարիւր երկոտասանիւք, հրաման տալով և Միլեսիացւոց խաղալ ընդ ցամաք 'ի Միկալէ, անդր դէմ եդեալ նաւեցին և ինքեանք: Դէպ լինէր յայնժամ և Աթենացւոց ութսուն և երկու նաւուք ելեալ

'ի Սամեայ դադար առնուլ 'ի Կլաւկէ Միկաղեայ, յորոյ 'ի ծովափանցն փոքր խարոցաւ հեռի է Սամոս. բայց իբրև տեսին նոքա զխումբ նաւաց Պեղոպոնեսացւոց դալ անդր, դարձեալ մեկնեցան 'ի Սամոս, անբաւականս գիտելով զինքեանս ընդդէմ բազմութեան հանդիսի նաւաց 'ի դիմադրաւ: Եւ զի կանուխ իմացեալ նոցա զպատրաստ Թշնամւոյն 'ի Միլետեայ 'ի նաւամարտ, հրեշտակս արձակեալ էր առ Ստրոմբիքիդէս, և մնային նմա որ յԵլլեսպոնտեայ գումարտակաւ նաւաց Քիոյ անցեալ ընդ Աբիւդոս գայր նոցա յօգնականութիւն: Այսպէս դարձան նոքա 'ի Սամոս. և Պեղոպոնեսացւոց եկեալ 'ի Միկաղէ բանակեցան ընդ հետևակազօրուն Միլեսիացւոց և մերձաւոր նոցա ժողովրդոց: Ի վաղւն իբրև նաւել կամէին 'ի վերայ Սամեայ, ազդ եղև նոցա եթէ Ստրոմբիքիդէս հասեալ գայ նաւուք յԵլլեսպոնտեայ, և դարձան անդրէն 'ի Միլետոն: Իսկ Աթենացւոց ստուարացեալ 'ի զօրութիւն հարիւր և ութ նաւուք խաղացին 'ի վերայ Միլետեայ՝ խորհրդով գալոյ ընդ նոսա 'ի նաւամարտ. և զի չելանէր ոք ընդդէմ նոցա, դարձ արարին կրկին 'ի Սամոս:

Զ. Առ սովաւ 'ի նմին յայսմ ամարանիս տեսեալ Պեղոպոնեսացւոց՝ թէ և ոչ համախումբ նաւուք իւրեանց բաւական եղեն 'ի կռիւ ընդ թշնամւոյն, և թէ ուստ ուստեք կարասցեն հայթայթել բազմութեան նաւաց արծաթ բաւական, զի և Տիսափեռն ագահէր 'ի հատուցումն սակս ռոճկին, առաքեցին առ Փառնաւազ՝ որպէս հրաման եղեալ էր առ նոսա 'ի Պեղոպոնեսեայ երբեմն, զԿղէարքոս Հռամփեան քառասուն նաւուք: Եւ զի հրաւիրեալ զնոսա առ ինքն Փառնաւազ յօժարէր 'ի տուրս ռոճկին, միանգամայն բանագնաց լինէր և 'ի Բիւզանդիոն՝ յետս կալ յԱթենացւոց: Ի խաղալ նաւացն Պեղոպոնեսացւոց 'ի խորս առ 'ի թաքուցանել զչու իւրեանց զանխուլ յԱթենացւոց՝ ըմբռնեցան 'ի մրրկէ, և յոլովք անկան ընդ Կղէարքեայ 'ի Դելոս, դառնալ անտի ապա 'ի Միլետոն. իսկ Կղէարքոս

դարձ արար վերստին ընդ ցամաք յԵղեւսպոնտոս, յերկիր
իշխանութեան իւրոյ. և նաւք տասն ընդ Եղիքայ զօրա-
վարի Մեգարացւոց զերծեալ յԵղեւսպոնտոս ձեռն ետուն
Բիւզանդացւոց 'ի վարանջութիւն: Զոր իմացեալ Աթե-
նացիք առաքեցին 'ի Սամոսէ նաւս յօգնականութիւն և
պահանորդս յԵղեւսպոնտ. և մխեցաւ առ Բիւզանդիոնիւ
նաւամարտ թեթև և դուզնաքեայ, ութ նաւք ընդ ութից
բախելով:

ԶԱ. Իսկ որ նախիշխանք կային տեսչութեան իւրաց 'ի
Սամոս, որոց և գլուխ էր Թրասիբուլ, 'ի ժամանակէ ան-
տի յեղափոխութեանս սա ունէր հանապազօր հաստա-
տութեամբ 'ի մտի՝ դարձուցանել զԱլկիբիադէս յաքսո-
րանաց, որ և 'ի վերջէ ուրեմն հաւանեցոյց 'ի ժողովն և
զամբոխ զօրականին 'ի նոյն. և 'ի վճռել նոցուն զդարձ
նորա և զապահովութիւն կենաց, նաւարկեալ Թրասիբուլ
առ Տիսափեռն՝ ած զԱլկիբիադէս 'ի Սամոս, համարելով
նովաւ միայն գտանել զփրկութեան հնարս, եթէ յաջո-
ղեսցին 'ի ձեռն նորա միանգամ 'ի Պեղոպոնեսացւոց անտի
յիւրեանս արկանել զՏիսափեռն:

Ի գումարել ժողովոյ մատուցեալ Ալկիբիադ զիւր
աղէտս տարագրութեան ողբոյր. և զքաղաքական տես-
չութենէ երկարագոյնս ճառելով, յոյս ոչ փոքր յուսա-
ցուցանէր զնոսա վասն ապառնւոյն, և ստուարացուցանէր
յոյժ զզօրութիւն իւր առ Տիսափեռնեայ 'ի խէթ երկիւ-
ղի ազնուապետաց յԱթէնս և 'ի քակտումն միաբանու-
թեան դաւակցաց, և յաներկմիտ քաջալերութիւն նոցա
որոց 'ի Սամոս էին, և 'ի պատուաւորագոյն ընդունելու-
թիւն անձին իւրոյ առ նոսա, և 'ի չքացուցանել իսպառ
մանաւանդ զթշնամիս առ Տիսափեռնեայ, և յամենայն
յուսոյ անկնկալութեան արկանել զնոսա: Այսպէս խոստ-
մունս մեծամեծս առաջի դնէր Ալկիբիադ ժողովոյն յո-
խորտ պանծանօք, որպէս եթէ ուխտ եդեալ էր Տիսա-
փեռն ընդ նմա հաստատութեամբ, թէ ցորչափ կացցէ

ձիասցէ նմա ինչ մի յընչից իւրոց, չառ է զի կարասցէ նա
վստահ լինել յԱթենացիս, մի՛ չքաւորեսցին նոքա երբէք
'ի ռոճկէն, մինչև 'ի բռնադատել իսկ հարկին՝ և զանկողինս
անգամ իւր 'ի գրաւ փոխել. և որ արդ յԱսպենդոս՝ զտոր-
միղ նաւաց Փիւնիկեցւոց փոխանակ Պելոպոնեսացւոց 'ի
թիկունս Աթենացւոց կամէր տալ ածել, միայն դարձիւ-
նորա 'ի հայրենիս և երաշխաւորութեամբն վստահանալ
կարասցէ 'ի նոսա:

ՁԶ. Որոց լուեալ զայս ամենայն և զայլ ինչ բազում
այսպիսի՝ կարգեցին զնա վաղվաղակի ընդ առաջինսն 'ի զօ-
րավար, և ետուն 'ի ձեռս նորա զամենայն իրս տեսչու-
թեան, մինչև ոչ ումեք յայնժամ զառաջինկայ յոյս փրկու-
թեան և զվրէժ պատուհասի Չորեքհարիւրոցն ընդ այլում
իմիք փոխանակել յօժարելով: Եւ անդէն իսկ խրախու-
սեալ 'ի բանից նորա զմօտաւոր թշնամիս անգոսնէին, և
խաղալ 'ի Պիրէոն ըղձանային. այլ զեռանդն ամբոխին սան-
ձեալ Ալկիբիադ, մի՛ զթշնամին 'ի թիկունս թողեալ 'ի Պի-
րէոն արշաւել. և որովհետև զօրավար զիս կացուցէք, ա-
սէր, պարտ է նախ առ Տիսափեռն գնալ և վասն պատե-
րազմիս սահմանել: Եւ յետ ժողովոյն փութացեալ ուղևոր
եղև Ալկիբիադ, ցուցանել թէ ոչինչ ծածկէր 'ի Տիսափեռ-
նեայ. և թէ զօրավարութեամբ արդ իւրով մեծարոյ եւս
իցէ առաջի նորա, և կարող այնուհետև և բարի և չար առ-
նելոյ նմա: Որով յաջողէր Ալկիբիադեայ Տիսափեռնեաւ
երկեղուկս Աթենացւոց արկանել, և նոքօք Տիսափեռնեայ:

ՁԷ. Իբրև լուան Պելոպոնեսացիք 'ի Միլետոն զդարձ
Ալկիբիադեայ յաքսորանաց, որք և յառաջագոյն իսկ 'ի
միտս էին կասկածաւորս զՏիսափեռնեայ, և եւս դժկամա-
կեալ զչարէին ընդ նա: Եւ զի դէպ լինէր արշաւել Աթե-
նացւոց 'ի Միլետոն, և հրաժարել Պելոպոնեսացւոց յելա-
նելոյ ընդդէմ նոցա պատերազմաւ, որով և Տիսափեռնեայ
պատճառելով առաւել եւս դանդաղել 'ի հատուցմանն սակ
արկեալ ռոճկին. այս ամենայն՝ կանուխ իսկ քան զիրս

Ալկիբիադեայ՝ զատելն Պելոպոնեսացւոց զՏիսափեռն ևս քան զևս ատելի առնէր: Եւ խմբեալ զօրուն յիւրեանս յակումբս յակումբս, որպէս երբեմն ոչ սինլքորն միայն, այլ և յականաւոր մարդկանէ շատ ոք, խորհէին և խօսէին եթէ չընկալան նոքա երբեք անթերի զռոճիկս, և զուղնաքեայն անգամ չհատուցաւ նոցա բնաւ անընդհատ. և եթէ չտացի նաւամարտ մի սահմանից բաղդին, և կամ չփոխեսցին այլուր՝ յորում իցէ գտանել կերակուր, թողեալ զնաւս՝ ցրուեսցին մարդիկն. և այսոցիկ ամենայնի պատճառք Աստիոքոս, որ 'ի շահ օգտի իւրումն անձին՝ հաճոյից Տիսափեռնեայ արբանեկէր:

ԶԳ. Եւ 'ի խորհելն նոցա ստէպ զայս ամենայն և 'ի խօսել, յարեաւ աղմուկ խռովութեան ընդդէմ Աստիոքեայ. և ամբոխ նաւաստեաց Սիրակուսացւոց և Թուրիացւոց յանդգնագոյնս յարձակեալ 'ի վերայ՝ զի յազատ մարդկանէ էին, պահանջէին զվարձս ռոճկին: Որոց յոխորտս արար պատասխանի Աստիոքոս և սպառնականս, և գաւազան վերացոյց 'ի վերայ Դորիեւսայ, որ օգնական և ձայնակից էր իւրոց նաւաստեաց: Զայս իբրև ետես ամբոխ զօրուն, զաղաղակ հարեալ՝ որպէս 'ի դէպ է նաւազին առնել, դիմեցին 'ի վերայ Աստիոքեայ 'ի փողոտել զնա. կանխատես վերահաս վտանգին՝ խոյս ետ 'ի բագինն ուրեք և ապրեցաւ. ցրուեցաւ և ամբոխն: Յարձակեալ յանկարծ և Միլեսիացւոց կալան զամրոցն՝ զոր կառուցեալ էր Տիսափեռնեայ 'ի Միլետոն, և մերժեալ հալածեցին անտի զպահանորդս նորա: Ի հաճել ընդ այն դաշնաւորաց և Սիրակուսացւոց, դժկամակէր Լիքաս, Պարտ է, ասէր, Միլեսիացւոց և այլոց Հելլենաց բնակելոց յերկրի իշխանութեան արքայի՝ ծառայել Տիսափեռնեայ արդար օրինօք, և անսալ նմա մինչև 'ի բարւոք վախճան պատերազմին: Ընդ որ զայրացան յոյժ Միլեսիացիք. և վասն այսորիկ և որ սոցին սակի պատճառաց՝ 'ի մեռանել առնս յախտէ մահու, չթողին զնա թաղել 'ի տեղւոջն յորում կամէին Լակեդեմոնացիք յայնժամ 'ի Միլետոն:

ԶԵ. Իբրև այսպէս գրգռեալք գժտէին սոքա ընդ Աստիոքեայ և ընդ Տիսափեռնեայ, եկն 'ի Լակեդեմոնէ Մինդարոս յաջորդել զԱստիոքոս 'ի հրամանատարութեան նաւատորմղին, և Աստիոքոս ելեալ մեկնեցաւ: Առաքեաց ընդ նմա Տիսափեռն յիւրոց անտի զոք Գաւլիտէս անուն, յազգէ Կարիացի. 'ի կրկին բարբառս վարժ, բողոք ունել զՄիլեսիացւոց վասն ամրոցին. միանգամայն և 'ի ջատագովութիւն անձին իւրոյ, զի գիտէր եթէ գնան Միլեսիացիք 'ի Լակեդեմոն 'ի տրտունջ զնմանէ. ընդ նոսա գնայր և Երմոկրատէս առ 'ի ցուցանել զՏիսափեռն երկխօս նենգութեամբն միաբան ընդ Ալկիբիադեայ և յայտնապէս կործանիչ իրաց Պելոպոնեսացւոց: Եւ պատճառք ատելութեան Երմոկրատեայ ընդ նմա 'ի ժամանակէ անտի չհատուցանելոյ ռոճկին էր. զի և յետոյ ուրեմն 'ի տարագրել նորա 'ի Սիրակուսայ, և անցանել այլոց 'ի գլուխ գումարտակին սիրակուսացւոց 'ի Միլետոն՝ Պոտամեայ, Միսկոնի և Դեմարքեայ զօրավարաց, ոչ դադարէր Տիսափեռն զոտատրոփելոյ 'ի վերայ տարագրելոյն. և այլովք ամենեքումբք չարախօս զնմանէ լինէր, իբրու եթէ արծաթոյն խնդրելոյ ոչ հանդիպեալ նորա՝ հանապազորդէր 'ի թշնամութեան իւրում: Ելին 'ի նաւս Աստիոքոս, Միլեսիացիք և Երմոկրատէս երթալ 'ի Լակեդեմոն. և Ալկիբիադէս մեկնեցաւ 'ի Տիսափեռնեայ դարձ առնել վերստին 'ի Սամոս:

ԶԶ. Եկին հասին յայնժամ 'ի Դելոսէ հրեշտակք Զօրեքհարիւրոցն 'ի յորդոր սիրոյ և 'ի հանդարտութիւն մըտաց Աթենացւոց՝ որ 'ի Սամոս, անդ էր և Ալկիբիադէս. և ատեան ժողովոյ գումարեալ՝ մատեան նոքա 'ի խօսել: Անսաստեալ նախ զօրականին ունկն մատուցանել բանից խօսելեացն՝ աղաղակէր մեծաձայն ընդ սուր հանել զամենայն քակտիչս իշխանութեան ռամկին, և հազիւ ուրեմն հանդարտեալ լռէր յունկնդրութիւն: Որոց առաջի արարեալ յայտ առնէին թէ ոչ 'ի կորուստ, այլ 'ի փրկութիւն քաղաքին եղև յեղափոխութիւնս. և ոչ տալ զայն 'ի ձեռս

թշնամեաց, քանզի այլազդ յեղանել նոցին 'ի վերայ քաղաքին, մարթ էր նոցա 'ի սկզբան անդ իշխանութեան իւրեանց մատնատու նմին լինել: Իսկ վասն Հինգհազարացն՝ ամենեքեան նոքա ըստ կարգին հաղորդք էին վարչութեան. և թէ ոչ միով իւիք թշնամանօք նեղեալ քաղաքայնոց՝ զոր օրինակ ախորժէր Քերէաս սաստկութեամբ զլուրս տալ փնոցանէ. որոց և ոչ մի կրելով չարիս, այր իւրաքանչիւր յարարս իւր և յինչս վայելէ խաղաղութեամբ: Եւ յերկարել նոցա 'ի բանս, ոչ ևս այլ հանդարտեալ զօրուն 'ի լուր նոցին՝ 'ի մեծի ցասման անդ իւրեանց յայլեայլ խորհուրդս մտաբերէին, խաղալ մանաւանդ 'ի վերայ Պիրէոնի կամէին: Եւ երևեցաւ անդ յայնժամ Ալկիբիադէս յառաջամատոյց քան զամենեսեան զնոսա յօգուտ քաղաքին. զի յարշաւելն Աթենացւոց որ 'ի Սամոս՝ 'ի վերայ իւրեանց քաղաքացւոց յԱթէնս, աներկբայ այնուհետև հասեալ ունէին թշնամիք զՅոնիա և զՀելլեսպոնտոս, և եղև ինքն որ արգել զնոսա 'ի խորհրդոց անտի նոցա: Քանզի ոչ այլ ոք կարող էր 'ի ժամուն սանձահարել զամբոխն, որպէս արգել սա զայրանացեալ զխմեցումն նոցա, և կշտամբանօքն լռեցոյց զզայրացեալ միտս նոցա ընդդէմ նաւորակաց, և ինքնին պատասխանի արարեալ նոցունց՝ արձակեաց զնոսա: Զարգելում, ասէր, զՀինգհազարսն 'ի վարչութենէ, կամիմ միայն զՉորեքհարիւրսն արձակել և ընդ նոցա կարգել, որպէս երբեմն զխորհուրդ Հինգհարիւրոց. և գովեմ զձեզ մեծապէս, զի կարճելով զաւելորդ ծախսն յաւելուք զթոշակ զօրականին: Եւ աղաչէր զնոսա պինդ կալ՝ չտալ տեղի թշնամւոյն, զի 'ի փրկութեան քաղաքին, լիցի միշտ յոյս միաբանելոյ զհերձուածս ժողովրդեան. ուր եթէ կորիցէ մի վրիպեալ անկցի, այն որ 'ի Սամոս, և կամ որ 'ի ձեզ յԱթէնս, չմնայ այնուհետև ընդ որում 'ի հաշտութիւն լիցէ գալ: Անդ էին և հրեշտակք Արգիացւոց, ոյք խոստանային օժանդակել ռամկավար մասին ժողովրդեան 'ի Սամոս: Գովեաց զնոսա Ալկիբիադ, և հրամայեալ 'ի ձայն կոչոյն չդանդա-

զել՝ արձակեաց զնոսա: Եկեալ էին Արգիացիքս ընդ Պարալեանս առաքեալս 'ի Զորեքհարիւրոց 'ի զինուորակիր նաւս 'ի պահ զգուշութեան զԵւբիաւ. և ածեալ անտի 'ի Լակեդեմոն զդեսպանս՝ զԼեոպոդիաս, զԱրիստոփոն և զՄելեսիաս՝ արձակեալս 'ի կողմանէ Զորեքհարիւրոց: Հասեալ Պարալեանց յԱրգոս, կալան զդեսպանսն և մատնեցին 'ի ձեռս Արգիացւոց՝ իբրև գլխաւոր հակառակորդս վարչութեան ժողովրդեան. և ոչ ևս դառնալով յԱթէնս, ածին 'ի պատերազմիկ նաւս իւրեանց զհրեշտակս Արգիացւոց 'ի Սամոս:

Ձէ. Ի սմին յայսմ ամարանի Տիսափեռն՝ ընդ որում վասն բազում ինչ իրաց և վասն դարձին Ալկիբիադեայ յաքսորանաց՝ զայրացեալք մախային Պելոպոնեսացիք, իբրու ընդդէմ յայտնապէս սատարողի Ատտիկեցւոց, կամելով նոցա՝ որպէս հաւանեալս եմ, քերել յանձնէն զամբաստանութիւնս, խորհէր երթալ յԱսպենդոս 'ի տորմիղ նաւաց Փիւնիկեցւոց. աղաչէր և զԼիքաս ընդ իւր գնալ. հրաման տուեալ, ասէր, և Տամոսի՝ որ 'ի ձեռանէ նորա ռամիկան կարգեալ էր երկրին, պաշարել զթոշակ զօրուն՝ ցորչափ ինքն բացական լինէր: Բայց այլ և այլ լսէին զայսմանէ յայնժամ զրոյցք. և չէր դիւրին գիտել թէ որով խորհրդով երթայր Տիսափեռն յԱսպենդոս, և զի գնալովն չէած նա զնաւատորմն: Եւ զի նաւք Փիւնիկեցւոց հարիւր քառասուն և եօթն եկին մինչև յԱսպենդոս, այս յայտ է. այլ թէ առ ինչ ոչ ժամանեցին անտի այսր՝ բազմապատիկ կարծիք են զայսմանէ: Ոմանք ասացին, թէ մեկնելով անտի Տիսափեռնեայ կամէր իսպառ ջախջախել զզօրութիւն Պելոպոնեսացւոց. զի Տամոս որ վերակացու կարգեցաւ, ժլատագոյն մատուանդ 'ի բաշխոյս ռոճկին երևէր. և այլք՝ թէ զՓիւնիկեցիս ածեալ նորա յԱսպենդոս, և յետ կորզելոյ 'ի նոցանէ արծաթ բազում, զի չվարէր զնոսա յաշխատութիւն՝ արձակեաց զնոսա ազատս. և այլք դարձեալ, վասն բողոքոյ զնմանէ 'ի Լակեդեմոն կամէր տալ զրուցել

թէ չէին նորա մեղք, որ արդարև չոգաւ 'ի նաւախումբ կազմ և պատրաստ: Բայց որ ինչ հաւանականագոյն թուի. կամք էին նորա թողուլ սպառել ամենևին և անպիտան գործել զզօրութիւն Հելլենաց, յոյր սակս և չետ նա ածել զնաւատորմն. և ինքեան հեռի դեգերելով՝ թողուլ զնոսա և ևս վատթարել. և ոչ ումեք 'ի նոցանէ սատարելով. 'ի հաւասարութեան զնոսա պահէր՝ չզօրանալ ումեք քան զընկերն: Զի եթէ կամէր նա վախճան առնել պատերազմին, ապաքէն ոչ չքաւորէր ձեռն նորա տալ ածել զտորմիղ նաւացն առ Լակեդեմոնացիս, և 'ի դէպ յոյժ շնորհել նոցա զյաղթութիւն, որ արդէն իսկ հաւասարազօրք և ոչինչ խոնարհ նաւական զօրութեամբ՝ դադարեալ նստէին: Եւ անձամբ անձին մասն լինէր Տիսափեռն բաղբաղանօքն պատճառելովք վասն յամելոյ ածել զնաւսն, զի նուազունս, ասէր, քան զոր արքայն հրամայեալ էր, գումարեալ նոյա զնաւս. յորում մանաւանդ մեծապէս շնորհս արժան էր ունել նմա արքայի, զի խնայելով նորա արքունի գանձուն՝ սակաւուք 'ի գլուխ տանէր զայն: Խորհրդով այսու աճա յԱսպենդոս Տիսափեռն երթայր երեւել ընդ Փիւնիկեցիս. ուր ըստ կոչոյ հրամանի նորա առաքեցին Պելոպոնեսացիք երկու պատերազմիկ նաւուք զՓիլիպպոս Լակեդեմոնացի՝ իբրու ընդ առաջ նաւախմբին:

ՁԸ. Իբրև լուաւ Ալկիբիադ եթէ Տիսափեռն յԱսպենդոս գնայ, ել և ինքն մետասան նաւուք երթալ զհետ նորա, խոստանալով որոց 'ի Սամոս էին՝ անվրէպ մեծամեծ երախտիս և սպաս ծառայութեան մատուցանել նոցա, կամ զնաւախումբն Փիւնիկեցւոց առ Աթենացիս ածելով, և կամ խափանելով զնոսա գոնեա չերթալ առ Պելոպոնեսացիս: Ի բազմաց հետէ գիտէր Ալկիբիադ, որպէս 'ի դէպ է կարծել, զմիտս Տիսափեռնեայ՝ չածելոյ բնաւ երբէք զնաւսն. և խորհէր բարեկամութեամբ նորա առ ինքն և առ Աթենացիս՝ կասկածաւոր և ատելի առնել զնա Պելոպոնեսացւոց, որով և ստիպել լինի զնա անցանել 'ի կողմն Աթե-

նացւոց. և ամբարձեալ խաղաց ընդ ծով դէպ ուղիղ 'ի Փասելիդոս և 'ի Կաւնոս:

ՁԹ. Իբրև դարձ արարին 'ի Սամեայ նաւիրակք Զօրեքհարիւրոցն յԱթէնս, և կացեալ առաջի պատմեցին զբանս Ալկիբիադեայ՝ որ աղաչէրն պնդ կալ չտալ տեղի Թշնամեաց. զի ոչ փոքր ակնկալութիւն էր նմա հաշտեցուցանելոյ զնոսա ընդ բանակին և յաղթանակելոյ 'ի վերայ Պելոպոնեսացւոց: Ի բանից սորա յորդորեալ բազումք խրախոյս առին, որոց վաղ իսկ տեղեկացեալ էր 'ի կուսակցութենէ անտի սակաւիշխանաց, և յօժարամիտք էին Թօթափելոյ 'ի նոցանէ՝ միայն եթէ աներկեանք իցեն: Եւ միաբան սոքա յուրեանս ողբալով եպերէին զառաջիկայ պայման վարչութեան. և առաջնորդ սոցա էին մեծանուն զօրավարքն, որպիսի ոք Թերամենէսն էր որդի Ագնոնի, և Արիստոկրատէս Սկելլեան և այլք. որք Թէպէտ ընդ առաջինս յայնժամ 'ի գլուխ սակաւիշխան վարչութեան էին, սակայն խիթալով՝ որպէս ասէին՝ 'ի բանակէ զօրուն որ 'ի Սամոս և յԱլկիբիադեայ, զի մի առանց խառնելոյ զբազմութիւնն յիրս վարչութեան չարիս ինչ կրեսցէ քաղաքս, պնդադեսպանս արձակեցին 'ի Լակեդեմոն. չասէին չլինել նոցա կամք 'ի ձեռս սակաւուց զիշխանութիւնն ամփոփելոյ, այլ Թէ արդեամբք մանաւանդ քան բանիւք զՀինգհազարսն 'ի տէրութիւն աշխարհին խառնել և օրինօք հաւասարութեան քաղաքավարել: Կերպարան արտաքնայարդար քաղաքավարութեան էր 'ի բանս նոցա, այլ իրօք բազումք 'ի նոցանէ փառասէր խորհրդով հաճ էին ընդ պայման իրաց. յորում և ագնուապետութիւն յընկերհաշտութենէ ժողովրդեան սկիզբն առեալ, սովոր է սանառեալ կորնչել, զի ամենայն մարդ ոչ 'ի հաւասարութիւն ձկտի 'ի բնէ, այլ 'ի նախապատիւ առաջնորդութիւն. քանզի յընտրութիւնս ժողովոյ վարչութեան ռամկին՝ դիւրեաւ տանի ոք որում զհետ գայ անախ, զի չիք երկիւղ 'ի հաւասար նուաստանալոյ: Եւ որ քան զամենայն քաջա-

լերեալ վաւերզմիտս նուաղ իշխանացս՝ էր զօրութիւն Աղկիբիադեայ 'ի Սամոս, և զի անկայուն երևէր նոցա վարչութիւն ազնուապետական. և այսպէս այր այր 'ի նոցանէ ելևելս զմիմեամբք՝ զինի նախաթոռ վերականգնութեան ժողովրդեան ձկտէր։

Դ. Եւ որ 'ի Զօրէքհարիւրոց անտի աւագանւոյն գլխաւորք էին և հակառակ այսօրինակ վարչութեան, որպիսի ոք էր Փրինիքոս՝ որ 'ի զօրավարութեան իւրում երբեմն 'ի Սամոս հակառակելով ոսոխէր ընդ Աղկիբիադեայ, և Արիստարքոս 'ի վաղուց իսկ ուժգին թշնամի ռամկին, և Պիսանդր և Անտիփոն և այլք ոմանք արք հզօրք, որոց 'ի հաստատել յիշխանութեան իւրեանց փութացեալ հրեշտակս արձակեցին 'ի Լակեդեմոն. և յետ այնորիկ իբրև իրք նոցա 'ի Սամոս զռամկավարութեան առնոյր զկերպարան, դարձան առաքել այլ պատգամաւորութիւն 'ի Լակեդեմոն. և ոգւովչափ պաշտպան կային սակաւուց իշխանութեան, և զՀետիոնիա որմով պարսպեցին. և այս ամենայն լինէր մանաւանդ 'ի դարձին հրեշտակաց իւրեանց 'ի Սամեայ՝ 'ի տեսանելն զյոլովս յիւրեանց իսկ խմբէն դայթ 'ի դայթի, որք 'ի սկզբան հաստատուն լինել թուէին։ Եւ արձակեցին շտապաւ 'ի Լակեդեմոն զԱնտիփոն, զՓրինիքոս և զայլս տասունս, յետ անցիցն անցելոց ատենին յԱթէնս և 'ի Սամոս. պատուէր տուեալ նոցա՝ որով և է պայմանաւ, շատ է զի տանելի իցէ, խօսել 'ի հաշտութիւն ընդ Լակեդեմոնացիս, միանդամայն և զշինութիւն Հետիոնիայ որմոյն փութացուցանէին։ Խորհուրդ որմոյ պարսպին, որպէս ասէին Թերամենէս և իւրքն, ոչ էր ընդդէմ յարձակման զօրուն Սամեայ 'ի Պիրէոն, այլ 'ի պէտս հարկին՝ ընդունելոյ զթշնամին 'ի ներքս 'ի ծովէ և 'ի ցամաքէ։ Հետիոնիա ամբարտակ է ժայռուտ 'ի Պիրէոն, առ որում մուտք են նաւահանգստին։ Ամբարձին պարիսպ որմոյ՝ կցելով զայն ընդ որում կայրն յառաջմէն 'ի ցամաքակողմն կոյս, որպէս զի փոքու ջոկատիւ պահանորդաց հրամայէին

մուց նաւահանգստին։ Քանզի առաջին պարիսպն 'ի ցամաք կուսէ ձգէր, իսկ նորս այս 'ի ծովակողմանէ երկայնեալ՝ գայր միանայր ընդ հնոյն 'ի միում անդ յաշտարակացն, որ 'ի վերայ անձուկ բերանոյ նաւահանգստին։ Կառուցին դարձեալ և սրահ մի մեծ կամարակապ 'ի ներքս 'ի Պիրէոնի՝ կից 'ի նոր պարիսպ որմոյն. և ինքեանք Չորեքհարիւրք տեարք տեղւոյս՝ բռնադատէին բերել շտեմարանել 'ի նմա զամենայն ցորեան, և զոր 'ի ծովէ բերէին նաւուք և անտի հանէին 'ի վաճառ։

ՂԱ. Ի բազմաց հետէ, մանաւանդ յորմէ ձեռնունայն դարձան դեսպանքն 'ի Լակեդեմոնէ, համբաւ այսպիսի սփռէր Թերամենէս. թէ խիթալի են պարիսպքս՝ զկործանումն քաղաքիս սպառնալով։ Եւ դէպ լինէր արդարև առ սովին գալ 'ի Պեղոպոնէսեայ 'ի խնդրոյ Եւբեացւոց քառասուն երկուց նաւուց, յորս էին 'ի Տարենտեայ և 'ի Լոկրացւոց իտալացի նաւք և սիկիլիացի, որոց զծովեզերբք Լակոնիոյ դեգերելով՝ ունէին նաւել յԵւբեա. և զօրավարէր նոցա Հեգեսանդրիդաս համանուն հօրն սպարտացի, զորոց ասէր Թերամենէս՝ թէ ոչ յԵւբեա, այլ որոց զՀետիոնիա պարսպեն՝ գան նոքա 'ի Թիկունս. զի եթէ ոչ փութան զգուշանալ, ընդ հուպ հասցէ նոցա անակնկալ կորուստ քաղաքին։ Եւ նիւթէր ապաքէն այսպիսի ինչ գաւ յերեսաց ամբաստանելոցն, և չէին լոկ զրպարտութիւն բանքն։ Զի որեարն այն կամէր՝ յոտին ունելով զսակաւուց իշխանութիւն՝ տիրել և 'ի վերայ դաշնաւորաց. և կամ գոնեա ունելով զնաւս և զամուրս՝ բռնակալել ըստ կամի. եթէ և յայնմ ոչ յաջողէր, մի 'ի սուր ռամկին՝ վերստին հաստատելոյ յիշխանութեան ընդ առաջինն սատան[illegible] այլ մուծանել մանաւանդ 'ի ներքս զթշնամին, և առ[illegible]ւլ 'ի ձեռս նոցա զնաւս և զամուրս՝ ունել զիշխանութիւն քաղաքին, միայն եթէ վասն անձանց իւրեանց աներկեւանք լինիցին։

ՂԲ. Վասն որոյ և փութացուցանէին 'ի սոյն զշինութիւն որմոյն, դռնակս 'ի նմա գործելով և մուտս և ելանցս

Թշնամեաց 'ի ներքս: Ի սկզբան անդ ընդ սակաւս ժամանս, և այն գաղտ յաւնկանէ չշնջէին. այլ իբրև Փրինիքոս 'ի դարձի իւրում 'ի Լակեդեմոնէ ուր հրեշտակութեամբ գնացեալ էր, դաւով հարեալ յառնէ ումեմնէ 'ի սահմանապահ գնդէն 'ի հրապարակամիջի անդ 'ի բազմութեան ամբոխի՝ ոչինչ հեռի 'ի խորհրդարանէն անկեալ մեռանէր. 'ի փախչել սպանողին՝ արգիլեցի ոմն դաւակից նորին ձերբակալեալ, հրամանաւ Չորեքհարիւրոց ածաւ 'ի տանջանս, և 'ի չտալ նորա զանուն ուրուք, բայց զի գիտէր ժողովել բազմաց առ Ոստիկան սահմանակալ գնդին և յայլուր 'ի տունս, տեսեալ նոցա թէ ոչ մի ինչ խռովութիւն սատի ծագէր, անդադրյնս այնուհետև Թէրամենէս, Արիստոկրատ և այլք 'ի Չորեքհարիւրոցն և կուսակցաց նոցա արտաքոյ՝ 'ի լրումն խորհրդոց իւրեանց նկրտէին:

Մինչ այս մինչ այն եղեալ նաւախումբն 'ի Լակոնից և ընդ երկայնութիւն ծովափանց դայր մտանէր յԵպիդաւրոս անցանելով ընդ Եգինէ: Եւ Թէրամենէս՝ Չէ 'ի դէպ, ասէր, նաւուց յԵւբիա արձակելոց ընդ նեղուցն Եգինայ դալ յԵպիդաւրոս, բայց եթէ հրաւիրմամբ եկեալ նոցա, ընդ որ ոչ դադարէր 'ի բողոքելոյ. և 'ի յոյզս էին այնուհետև հանապազօր: Ի յուզել բանից խռովութեան և 'ի յաճախել կարծեաց երկիւղի, 'ի վերջէ ապա և 'ի գործ ձեռն արկանէին: Քանզի որք 'ի Պիրէոն և 'ի Հետիոնիա 'ի շինուած պարսպաց որմոյն պարապէին ասպարակիր զօրականն, ընդ որս և Արիստոկրատէս գնդապետ գնդաւն իւրով, ձեռն արկին յԱղեքսիկլէս զօրավար ազնուապետաց և նախանձաւոր կուսակից կողման Թէրամինեայ, և տարեալ եդին զնա 'ի տուն ուրեք 'ի գխպահոջ: Ձեռն եառուն նոցա յայսմ և այլք՝ ընդ որս և Հէրմոն սահմանապահ գնդին հրամանատար՝ կարգեալ 'ի Մունիքիա, և մանաւանդ զօրն սպայագունդ: Իբրև ազդ եղև բանն յականջս Չորեքհարիւրոց յատենի անդ խորհրդոց նոցին, փութացան զէն

տալն և նոքա, բայց յորոց չէին 'ի նոյն կարծիս համանութեան, և սպառնային իսկ Թերամենեայ և համախոհից նորա։ Այլ Թերամենէս՝ 'ի պատասխանատուութիւն անձին իւրոյ պատրաստ լինել՝ ասէր, երթալ ինքնին ընդ նոսա յազատութիւն կալանաւորելոյն. և առեալ ընդ իւր զոմն 'ի զօրագլխաց կամակցաց անտի իւրոց երթայր 'ի Պիրէոն. զհետ նորա չոքան և Արիստարքոս և ոմանք 'ի պատանեաց անտի ասպետաց։ Մեծ էր շփոթն աղմկին և ահագին կասկած երկիւղին. զի որ 'ի քաղաքին էին՝ համարէին զՊիրէոն կալեալ և զկալանաւորն խողխողեալ, իսկ որք 'ի Պիրէոն՝ զողջոյն իսկ զքաղաքն 'ի վերայ նոցա շարժեալ։ Եւ հազիւ ուրեմն յաղաչանաց ծերունեաց յորդորեալ դղրդեալ ամբոխն դադարէր. և Թուկիդիդեայ մանաւանդ փարսալացւոյ՝ բարեկամ ասպնջականի քաղաքիս և 'ի ժամուն անդր առնոսա գոլոյ՝ անսալով, որ ձայն բարձեալ մի 'ի մերձաւոր դարանակալութեան թշնամւոյն՝ կորուսանել զհայրենիս գոչէր, և զմի մի 'ի նոցանէ աղերսիւ արգելոյր։ Եհաս և Թերամենէս որ 'ի թիւս զօրավարաց էր 'ի Պիրէոն, և վէր 'ի վերոյ սաստիւք կշտամբէր զզօրականն, մինչդեռ Արիստարքոս և հակառակորդք ժողովրդեան զչարեալ զայրագնէին։ Սակայն և այնպէս բազումք 'ի զօրուէն ոչ դադարէին 'ի գործոյ շինութեան պարսպին, և կամ զղջանային ինչ ընդ այն. և մատուցեալ հարցանէին Թերամենեայ. բարւո՞ք միտս արդեօք համարէր զշինութիւն պարսպին, և չէ՞ր լաւագոյն քակել զայն, որում նա առնէր պատասխանի. Զի եթէ բարւոք թուի ձեզ քակտումն նորին, 'ի նոյն և ես խորհրդակից ձեզ լինիմ։ Եւ անդէն ելեալ վաղվաղակի զօրուն և բազմաց յարանց անտի Պիրէոնի 'ի վերայ ամրոյն՝ քանդէին զայն. և առ ամբոխն ձայն տուեալ օրինակ զայս յորդոր լինէին. Որ ոք ընդ իշխանութիւն Հինգհազարաց կամեսցի փոխանակ Չորեքհարիւրոց, խառնեսցէ զձեռն իւր 'ի գործս։ Քանզի դեռ ևս ընդ անուամբ Հինգհազարաց պատսպարէին զանձինս,

զի մի՛ յայտնապէս յիշատակեսցեն զանուն ռամկին, երկուցեալ զի գուցէ անծանօթ հակառակորդի ուժք հանդիպեալք և առ անզգուշութեան մատնառ խորհրդոց լինիցին: Ի սոյն պատճառս և Զօրէքհարիւրքն ոչ ընդ եութիւն Հինգհազարաց կամէին և ոչ իսկ զերդյութիւն նոցա յայտնի քարոզել. զի կցորդս ունել տեսչութեան զայն ամբոխ մարդկան, յիրաւի ռամկական լինէր վարչութիւն. դարձեալ և երկբայութիւն ընդ այն՝ կասկած և ահ երկիւղի 'ի քաղաքացիս արկանէր:

ՂԳ. Ի վաղիւ անդր թէպէտ և խռովեալք, յառեան խորհրդոյ գումարեցան Զօրէքհարիւրքն, մինչդեռ 'ի Պիրէոն գունդն ասպարազէն արձակեալ զկալանաւոր իւրեանց զԱլկիբիադէս, և զպարիսպն տապալեալ չոգան 'ի Թատրն Դիոնիսեան մերձ 'ի Մունիքիա, և զկայ առեալ անդանօր 'ի ժողով նստան. և յետ սահմանելոյ զոր միանգամ սահմանեցին, գնացին անդէն 'ի քաղաքն և դադարեցին յԱնակիոն: Եղեալ առ սոսա ոմանք 'ի Զօրէքհարիւրոց նուիրակք, և ընտանեբար այր ընդ ընկերի խօսակից լինէին. և զորս համբոյրս և հեզագոյնս գտանէին՝ յորդորէին հանդարտել և զայլս 'ի նոյն պահել հանդարտութեան, զի ընդ հուպ ծանուսցի յայտնապէս իշխանութիւն Հինգհազարաց, և 'ի նոցուն իսկ 'ի Հինգհազարաց՝ ընտրութեամբ ըստ մասնէ կարգեսցին Զօրէքհարիւրքն. վասն որոյ լռեալ ապա առ այժմ դադարել, և մի 'ի կործանումն քաղաքին վաղվաղել՝ մատնելով զայն յոյս Թշնամւոյն: Զայն զայս լուեալ սակս ամբոխ ասպարազէն զօրականին, ողոքագոյնս այնուհետև քան որ երբեմն գտանէին, և վասն փրկութեան հասարակաց մանաւանդ հոգային. և բան եդին 'ի ժամադիր աւուրն ժողովել 'ի Դիոնիսեան մեհենին 'ի հաստատութիւն միաբանութեան:

ՂԴ. Իբրև եհաս օր ժողովոյն և երթային գումարել 'ի մեհենին Դիոնիսեայ, լու եղև ահա եթէ քառասուն երկու նաւքն և Հեգեսանդրիդաս զափամբ քերելով գան 'ի

Մեգարայ 'ի Սալամինա, և ամենայն ոք յայնժամ 'ի զօրութեն կարծէր 'ի գլուխ ելեալ բանին, զոր 'ի վաղուց հետէ Թերամենէս և իւրքն սովոր էին ասել, զի նաւախումբս 'ի տիրապետել նորոյ ամրոցին գայր, և խնդային ընդ քանդումն նորին: Թերևս համախոհ բանագնացութեամբ ընդ նոսա Հեգեսանդրիդաս զԵպիդաւրեաւ գեգերէր և զծովեզերբ. դարձեալ 'ի դէպ է յոյժ կարծել, եթէ ընդ լուշփոթից խռովութեան Աթենացւոց, յուսով ըմբռնելոյ զնոսա 'ի ժամուն' զտեղի առնոյր նա անդ: Ընդ այս շըռինդն դղրդեալ քաղաքովին Աթենացիք 'ի Պիրէոն խուժեցին, զի պատերազմ քաղաքական մեծ քան զոր յերեսաց թշնամեաց' մօտ առ դուրս 'ի նաւահանգստի անդ տեսանէին: Կէսք 'ի նաւս ամբարձան, զորս մօտ առ իւրեանս գտին, այլք փութացան իջուցանել նաւս, ոմանք 'ի պարիսպն և ոմանք 'ի բերան նաւահանգստին դիմեցին:

ՂԵ. Իսկ տորմիղ նաւացն Պեղոպոնեսացւոց զափամբ գնալով և զՍունինաւ պատելով, ընդ Թորիկոս և ընդ Պրասիա անցեալ գնայր յՕրոպոս: Առ շտապ տագնապին զանհրահանգ նաւաղն վարելով Աթենացիք' զորս մարթ էր յաղմկալից քաղաքին առձեռն գտանել, կամէին անձապարել յօգնութիւն Եւբիոյ, որ 'ի փակել պաշարել Ատտիկեայ' կարևոր էր քան զամենայն. և առաքեցին զԹիմոքարէս զօրավար նաւուք յԵրետրիա: Որոց հասեալ անդր և միացեալ ընդ խմբի նաւացն որ յԵւբիա, եղեն երեսուն և վեց նաւք, և ստիպեցան դալ անդ 'ի նաւամարտ. քանզի Հեգեսանդրիդաս յետ առնլոյ զկերակուր ճաշուն' արձակեալ էր զնաւատորմն յՕրոպեայ, որ վաթսուն և վեց ծովայնով վտաւանաւ հեռի էր յԵրետր[illegible]: Այլ իբրև կրկին երևեցան նաւք թշնամեաց, շարժեցան Աթենացիք լնուլ զնաւս, կարծելով զզօրականն ոչինչ հեռի անտի. բայց 'ի խոհական հնարից անտի Երետրիացւոց' ոչ գտանելով նոցա 'ի հրապարակէ վաճառուց գնել իւրեանց կերակուրս.

գնացեալ էր մինչև 'ի վերջին ծայր քաղաքին հայթայթել զայն 'ի տանց ումանց. և այս առ ժամ տալոյ թշնամւոյն հասանել 'ի վերայ դանդաղելոցն յելս 'ի նաւս, և ստիպել այսպէս զԱթենացիս՝ յորում և է պայմանի՝ խառնիխուռն 'ի կռիւ գալ: Ի դէպ ժամուն տուաւ Պելոպոնեսացւոց նշան յԵրետրիոյ յՈրոպոս ելանելոյ 'ի ծով. ելին և Աթենացիք՝ յորում և էին պատրաստութեան, և խառնեցան նաւամարտն 'ի վերոյ քան զնաւահանգիստն Երետրիոյ. թէպէտ զդէմ կալան նոքա սակաւ մի, այլ թիկնադարձոյց տապա փախեան մինչև 'ի ցամաք երկիր. այլ որք 'ի քաղաքն Երետրիացւոց իբրև առ բարեկամս խոյս ետուն, չարագունս ևս հանդիպեցան բաղդի, անխնայ կոտորեալ 'ի ժողովրդենէն. իսկ որ յամուր անդր անկան՝ զոր ունէին ցայնժամ Աթենացիք՝ ապրեցան, որպէս և որ 'ի Քաղկիս հասին նաւուք: Կալեալ Պելոպոնեսացւոց քսան և երկու նաւս յԱթենացւոց, զմարդիկն 'ի նմա՝ էր զոր կոտորեցին, և էր զոր գերի վարեցին, և կանգնեցին նշան յաղթութեան: Եւ յետ ոչ բազմաց շարժեցին և զԵւբիա ողջոյն թօթափել զլուծ Աթենացւոց, բաց յՈրէայ՝ կալեալ Աթենացւոց, և 'ի կարգի եդին 'ի նմա զամենայն:

ՂՁ. Իբրև եհաս գոյժ պարտութեան և կորստեան Եւբիոյ յԱթէնս, մեծ եղև յոյժ ահ երկիւղին. զի և ոչ արկածք Սիկիլիոյ՝ թէպէտ ահագին յայնժամ, և ոչ այլ ինչ ուստեք աղէտք այնպէս սասանեցուցեալ էր զնոսա: Մինչդեռ բանակ զօրուն 'ի Սամոս սարտուցեալ՝ ոչ նաւ և ոչ նաւազ 'ի միջի, քաղաքն յերկպառակ 'ի յոյզս խռովութեան և յերկբայս անդիտութեան՝ թէ ե՞րբ մնայր և ինքեանց ոգորել ընդ միմեանս կռուով, ահա 'ի լրումն աղետից հասանէր և կորուստ նաւատորմղին ընդ մեծի կորըստեան Եւբիոյ, որ օգտակարագոյն էր նոցա քան զԱտտիկէ. և զիա՞րդ ոչ վհատէին իրաւամբ: Բայց որ մերձաւորագոյն տագնապ խռովեցուցանէր զնոսա, էր կասկած երկիւղին դիմելոյ ընդ հուպ յաղթական թշնամւոյն 'ի վերայ

Պիրէոնի թափուր 'ի նաւաց, և ժամ 'ի ժամէ մնային տեսանել զնոսա: Որ եթէ խիզախեալ էր նոցա 'ի սոյն, չէր ինչ գործ դժուարին. զի երևելով յանդիման քաղաքին, և ևս յաճախէին. 'ի նմա զլուցկիս հրդեհի և հերձուածոյ խռովութեան. և պնդելով զպաշարումն՝ բանագատէին զխումբս նաւաց նոցա, թէպէտ թշնամի սակաւուց իշխանութեան, գալ 'ի Յոնիոյ յօգնութիւն ազգականացն և բովանդակ քաղաքին. և անկանէր յայնժամ Եղեսպոնտոս 'ի ձեռս նոցա և Յոնիա և կղզիք և ամենայն երկիրն մինչև յԵւբիա, և զի այսպէս ասասցուք, ողջոյն իսկ պետութիւն Աթենացւոց: Այլ ոչ յայսմ միայն, այլ և 'ի բազմապատիկ յայլդէպս 'ի պատերազմիս նպաստաւորք գտան Աթենացւոց քան զամենայն ժողովուրդս՝ Լակեդեմոնացիք: Այլազգ և աննմանք ամենևին 'ի գնացս երկոքին ժողովուրդքս այսոքիկ. սոքա երագունք, նոքա դանդաղկոտք. սոքա յամենայնի ձեռներէցք, նոքա վեհերոտք, որով և ծովակալ տէրութեան նոցա մեծապէս սատար եղեն: Որոց հակառակ ընդդէմ Սիրակուսացիք՝ համաբարոյք մանաւանդ հանդիպեալ, ախոյեանք հզօրք 'ի պատերազմունս հանդիսացան:

ՂԷ. Ընդ լուր հարուածոյս հանդերձեցին Աթենացիք նաւս քսան. և աճապարեալ գումարեցան 'ի ժողով 'ի տեղւոջն որ անուանեալ կոչի Փնիքս, ուր սովոր էին ժողովել. յորում և լուծեալ յիշխանութենէ զՉորեքհարիւրսն, սահմանեցին վճռով տալ զվարչութիւն քաղաքին 'ի ձեռս Հինգհազարաց. մտանելով յայս թիւ սոցա, որոց բաւական է ձեռն 'ի պատրաստութիւն զինուց, նզովիւք օրինադրելով չառնուլ վարձս փոխարինի վասն որոյ և է բարձի և աւագութեան: Եղեն յետ այնորիկ և այլ ժողովք, յորում քուէից ընտրութեամբ կարգեցան օրինադիր իշխանք, և որ միանգամ 'ի վարչութիւն հայէին սահմանք և կանոնք: Որպէս երբեմն առ նախնեօք, նոյն և առ մեօք շատ իսկ փայլեցան Աթենացիք 'ի բարւոք քաղաքավարութեան.

զի չափով իմն խառնուրդ գործեցին ընդ սակաւուց և ըզ-
ռամկին իշխանութիւն, որով 'ի ձախող արկածից ասաի
կանգնեալ՝ ետուն ոգի առնուլ քաղաքին: Սահմանեցին
ժողովով և զդարձ Ալկիբիադեայ և զայլոց ոմանց ընդ
նմա. և առաքեցին առ նա և առ բանակ զօրուն 'ի Սամոս,
խրախուսելով զնոսա պնդել զձեռս իւրեանց 'ի գործ:

ՂԸ. Ի յեղափոխել վարչութեան քաղաքին, անձա-
պարեալ որոց ընդ Պիսանդրեայ էին և ընդ Աղեքսիկլեայ և
գլխաւորք սակաւիշխանաց 'ի Դեկեղիա անկան: Արիստար
քոս միայն՝ որ զօրավար էր յայնժամ, առեալ ընդ իւր-
զաղեղնաւորս ոմանս խժդժագոյնս՝ չոգաւ յԵնոյէ յամրոց
Աթենացւոց 'ի սահմանածայրս Բիովտիոյ, պաշարեալ
յայնժամ 'ի Կորնթացւոց ինքնակամ օժընդակ գնդիւ
Բիովտացւոց՝ 'ի վրէժ արեան արանց կոտորելոց յամրա-
կանաց անտի 'ի դարձին նոցա 'ի Դեկեղիոյ: Յետ բանս ընդ
պաշարիչս դնելոյ Արիստարքոս, պատրեալ խաբեաց զամ-
րականս իբրու միաբանեալ ընդ Լակեդեմոնացիս ուխտիւք
դաշանց յԱթէնս, յորում է տալ և զԵնոյէ 'ի ձեռս Բիով-
տացւոց: Հաւատացեալ բերդականացն բանից առն զօրա-
վարի, և ոչինչ գիտելով որ ինչ արտաքոյ գործէր, ելին առ-
նա ուխտիւ խաղաղութեան յամրոցէն: Եւ այսպէս կալան
Բիովտացիք զԵնոյէ. և փոխանակ եղև աւագպետութեան
և չփոյթից խռովութեան յԱթէնս:

ՂԹ. Առ սովին յընթացս այս ամարանոյս տեսեալ
Պեղոպոնեսացւոց որ 'ի Միլետոն, թէ չելանէր նոցա խոս-
տացեալ թոշակ ռոճկին 'ի վերակացուաց կարգելոց 'ի Տի-
սափեռնեայ՝ յետ մեկնելոյ նորա յԱսպենդոս, և չերևին
ուրեք ոչ Տիսափեռն և ոչ ակնկալեալ խումբ նաւաց Փիւ-
նիկեցւոց, և թէ Փիլիպպոս 'ի խնդրոյ նորին իսկ առ Տի-
սափեռն առաքեալ, գրէր առ Մինդարոս նաւապետ, որ-
պէս և Իպոկրատ սպարտացի՝ որ 'ի Փասելիս յայնժամ, թէ
չիք ակնկալութիւն գալստեան նաւաց, և թէ մեծապէս
անիրաւեալ զոկին 'ի Տիսափեռնեայ, և զի կոչէր զնոսա

Փառնաւազ յետ 'ի Թիկունս՝ փութով ածել զնաւատոր-միղն առ 'ի թափել 'ի ձեռաց Աթենացւոց զմնացեալ քաղաքս իշխանութեան իւրոյ, զոր օրինակ և Տիսափեռն արար, ընդ լուր այսոցիկ ամենայնի՝ եղեալ յանկարծ Մինդարոս, խորհելով ծածկել զչուն 'ի զօրուէն Աթենացւոց որք 'ի Սամոս, 'ի տալ նշանին՝ բազում կարգաւ մեկնեցաւ 'ի Միլէտոսյ եօթանասուն և երիւք նաւուք և խաղաց յԵլլեսպոնտոս: Ի նմին յայսմ ամարանի կանուխ իսկ քան զսոսա մտեալ վեշտասան նաւաց՝ յաւարի առնուին զկողմն մի Քեռսոնեսոսի: Հողմակոծեալ Մինդարոս 'ի նաւէն՝ ստիպեցաւ իջանել յԻկարոս, և արգելեալ անդ զաւուրս հինգ կամ վեց յերեսաց հողմոյն ելանել 'ի Ճանապարհ, եկն եհաս ապա 'ի Քիոս:

Ճ. Իբրև զգաց Թրասիլլոս զչու նորին 'ի Միլէտոսէ ել և ինքն յիսուն և երիւք նաւուք 'ի Սամեայ, աճապարել գալ յառաջ քան զՄինդարոս յԵլլեսպոնտ. և լուեալ եթէ 'ի Քիոս է արդ նա, կարծելով դադարել նմա անդանօր, դէտս կացոյց 'ի Լեսբոս և 'ի հանդիպակողմն ցամաք երկրին՝ լրտեսել զամենայն խորամանկս նորա. և ինքն 'ի Մեթիմնէ նաւելով՝ հրամայեաց զալիւր և զամենայն պարէն կարևոր պատրաստել, որպէս զի եթէ լիցի նմա յամել անդ, արշաւանս դիցէ ինքն 'ի Լեսբեայ 'ի Քիոս. և զի վըտարանջեալ էր Երեսոս 'ի Լեսբեայ, կամէր գնալ 'ի վերայ նորա պատերազմաւ: Քանզի 'ի ճոխից Մեթիմնացւոց տարագիրք ոմանք ածելով 'ի Կումա գունդ մի օժընդակ ապարազէն զօրու յիսուն այր, և 'ի ցամաք երկրէ վարձկանելով ընդ ամենայն որպէս երեքհարիւր զօրական, և 'ի գլուխ զօրուս Անաքսարքոս Թեբայեցիս ազգային առհմակցութեան, եկին յարձակեցան 'ի Մեթիմնէ. և վանեալ 'ի պահանորդ զօրուէն Աթենացւոց հասելոց 'ի Միտիլէնեայ, և կրկին վանեալք պատերազմաւ արտաքոյ քաղաքին՝ անցին ընդ լեառն և շարժեցին զԵրեսոս յապստամբութիւն: Խաղաց Թրասիլլոս համօրէն նաւախմբիւն ընդ-

դէմ քաղաքին. գայր անդր և Թրասիբուղ հինգ նաւուք 'ի
Սամեայ՝ 'ի լուր արշաւանին վտարանդեաց. բայց անագան
ժամանեալ մեկնեցաւ յԵրեսոս և զտեղի առեալ անդ դա-
դարեաց: Եւ նաւք երկու 'ի դարձին իւրեանց յԵլլեսպոն-
տեայ եկին յարեցան 'ի նա, նոյնպէս և նաւք Մեթիմնա-
ցւոց. որով գումարեցան 'ի վաթսուն և եօթն նաւս, և
պատրաստէին ամենայն զօրօք և կազմածովք պատերազմի
և բազմօրինակ հնարիւք ջանալ 'ի բուռն առնուլ զԵ-
րեսոս:

ՃԱ. Իսկ Մինդարոս և գումարտակ նաւացն Պելոպո-
նեսացւոց առեալ պաշարս վասն աւուրց երկուց, և հարկս
'ի Քիացւոց հանելով զերիս քառասնեակ դրամս ըստ
գլուխ, և փութացեալ 'ի միւս վաղիւն ուղւոյ եղեն. ոչ
կամէր Մինդարոս ծովել 'ի խորս յընդարձակի՝ առ չգալոյ
'ի տեսիլ նաւացն յԵրեսոս, և 'ի ձախակողմն թողեալ
զԼեսբոս՝ զծովեզերբն նաւէր: Եւ մտեալ 'ի հանգրուանն 'ի
Կրատերիա յերկրին Փոկէացւոց, և առեալ կերակուր՝
ճաշուն՝ զափամբ նաւելով Կումայ եկին յԱրգինուսա, մօտ
'ի մեծացամաքն հանդէպ Միտիլինեայ յընթրել անդ: Եւ
անտի զմեծ մասն գիշերոյն գնալով հասին 'ի ցամաք երկիր
յԱրմատուս՝ յանդիման Մեթիմնեայ. և առեալ զճաշ՝
խաղացին փութանակի միշտ զափամբ քերելով 'ի Լեկ-
տոն, 'ի Լարիսա, յԱմաքսիտոս և յայլ քաղաքս գաւա-
ռին՝ և ժամանեալ եկին նախ քան զհասարակել գիշերոյ
'ի Հռետիոն 'ի մասն Ելլեսպոնտեայ. կէսք 'ի նաւաց 'ի Սի-
կիոն իջին, և կէսք այլուր 'ի ծովեզերեայս:

ՃԲ. Իսկ Աթենացիք որ ութսուն նաւուք 'ի Սես-
տոս էին, 'ի տալ դիտաց հրանշանին և ընդ յանկարծակի
տեսիլ խիտ առ խիտ խարուկի բոցոյ յերկրի Թշնամեաց,
իմացան զչուղուսն Պելոպոնեսացւոց յԵլլեսպոնտ. և ա-
ճապարեալ գիշերաւ գաղտագնաց անկան 'ի Քերսոնեսոն,
զծովեզերբ գնալով մինչև յԵլէուս. և անտի խաղացին 'ի
խորս յերեսաց գումարտակի Թշնամեաց, որով և ճողոպրե-

ցան անտես 'ի վեշտասան նաւաց անտի նոցա յԱբիւդոս. որոց թէպէտ կանուխ անցանելով ընդ այն բարեկամաց ազգ արարեալ էր նոցին, միտ դնել արթնութեամբ խլրտելոյ Աթենացւոց: Բայց ընդ առաւօտն յարեւածայրս հանդիպեալ նոցա Մինդարեայ, հալածական գնացին յերեսաց. որոց թէպէտ ոչ ամենեցուն, սակայն բազմաց եղեւ զերծանել յԻմբրոս և 'ի Լեմնոս. և չորք 'ի նաւաց յետամնացք ըմբռնեցան առ Եղէուսաւ, մին առ հրուանդանաւն Պրոտեսիլեայ բագնոյն խրեալ՝ ողջոյն նաւաստեաւն գերեցաւ, երկու այլ՝ Ճողոպրեալ մարդկան որ 'ի նոսա, և չորրորդն հրկէզ եղև առ Իմբրեաւ:

ՃԴ. Յետ այնորիկ խառնեալ նաւացն Մինդարեայ ընդ նաւախմբին որ յԱբիւդոս, եղեն նաւք ութսուն և վեց, և 'ի նմին իսկ աւուր եկեալ պաշարեցին զԵղէուս. այլ 'ի տակալ տեւել քաղաքին 'ի վերամարտ՝ մեկնեցան յԱբիւդոս: Աթենացիք որ սուտ յուսով պատրեալք 'ի գիտաց՝ կարծէին չթողուլ զանխուլ զչու թշնամւոյն, և պարապով կռուէին առ պարսպաւ Երեսոսայ, ընդ լուր գալստեան նոցա թողեալ վաղվաղակի զպաշարումն քաղաքին՝ փութացան յօգնութիւն Եղեսպոնտեայ. կալան զերկուս նաւս 'ի Պելոպոնեսացւոց՝ որ յանդգնագոյնս հետամուտ լեալ նոցա՝ եկին անկան 'ի ձեռս: Ի վաղիւն եկեալ մօտ 'ի նաւահանգիստն Եղէուսայ, ածին անդր և յԻմբրեայ զամենայն նաւս փախստեամբ ապրեալս, և պատրաստէին զաւուրս հինգ 'ի պատերազմ:

ՃԵ. Եւ եղեւ նաւամարտս օրինակ զայս. կարգեալ Աթենացիք 'ի ռազմ զՍեստեաւ զծովեզերբ գնային, և Պելոպոնեսացիք յԱբիւդեայ նկատելով զայս՝ յառաջեցին և նոքա. և իբրեւ մերձ էին խառնել 'ի կռիւ, ահա ընդարձակեալ ձգեցին Աթենացիք զճակատն առ Քերոնեսաւ, սկսեալ յԻդակայ մինչև յԱրրիանոն 'ի նաւս եօթանասուն և վեց. իսկ Պելոպոնեսացիք յԱբիւդեայ մինչև 'ի Դարդանոս յութսուն և ութ նաւս: Յաջում՝ թեւին Պելոպոնեա-

ցւոց Սիրակուսացիք էին, և յահեկին Մինդարոս ընտիր ընտիր նաւուք։ Իսկ զԱթենացւոց Թրասիլլոս ունէր զահեակն, և զայլն Թրասիբուլ, և այլք 'ի զօրավարաց կային մի ըստ միոջէ ըստ իւրեանց կարգին։ Նախաձեռն եղեն Պելոպոնեսացիք 'ի պատերազմ, քանզի ահեկին իւրեանց յառաջեալ ընդդէմ աջոյն Աթենացւոց, արգելուլ զնոսա ձգնէին չխաղալ 'ի խորս, և զբուն նոցա վարել մղել 'ի ցամաք՝ յորմէ չէին իսկ հեռի. բայց իմացեալ Աթենացւոց զկամս խորհրդոյ թշնամւոյն փակելոյ զնոսա 'ի ներքս, չարժեցան և նոքեանք ընդդէմ նոցա արգելուլ զյառաջխաղացութիւնս։ Ահեակ նոցա պատէր արդէն զՇնաբլուր (Կիւնոս-սեմա) սարիւն, որով տկարանայր բուն նոցին՝ անզօր և ցիր նաւուք և սակաւուք ընդդէմ բազմաց. և զի վայրն շուրջ զսարիւն անկիւնաձև էր և սուր, որով անմարթ էր զյայնկոյս եղեալսն նշմարել։

ձն. Այսպէս ուրեմն անկեալ Պելոպոնեսացւոց 'ի բուն 'ի միջակէտ ճակատուն՝ վարեցին մղեցին զնաւս Աթենացւոց 'ի ծանծաղուտս. և իջեալ յերկիր զկնի նոցա, զօրացան յոյժ 'ի կռուին, մինչև անհնար եղև Թրասիբուլեայ յաջոյ թևէ անտի իւրմէ գալ 'ի բուն անդր յօգնութիւն իւրոցն 'ի խուռն անդ բազմութեան նաւաց թշնամւոյն, նոյնպէս և Թրասիլլեայ գալ 'ի ձախոյն, զի սարաւանդիւն Շնաբլրով ծածկեալ խափանէր տեսիլ եղելոցն ամենայնի. միանգամայն և Սիրակուսացիք և բազումք այլք կարգեալ ընդդէմ Աթենացւոց արգել էին նոցա խափանարար, մինչև կատարեալ յաղթութեամբ Պելոպոնեսացիք յաներկիւղս այնուհետև զկնի պնդեցան թշնամւոյն, այլ ամենեին ցիր՝ զայս կամ զայն նաւ հալածական առնելով. և ըստ մասնէ՝ յանկարգս և անուազմ խառնիխուռն վայրավատեալ գնային։ Որ զԹրասիբուլեաւ էին Աթենացիք տեսեալ եթէ զկայ էառ թշնամին հանդէպ նոցա, դադարեցան և նոքեանք յերկայնելոյ զթևս, և շրջանաւ յարձակեալ 'ի վերայ նոցա, վանեցին զնոսա խոնարհեալս 'ի պար-

տութիւն. և հասեալ 'ի վերայ նաւաց նոցա ցրուելոց 'ի տեղւոջ անդ յաղթութեան՝ հարեալ խորտակեցին զնոսա, և անկանել 'ի փախուստ դարձուցին: Իսկ Սիրակուսացիք՝ որ արդէն իսկ տեղի տային յերեսաց Թրասիլլեայ, տեսեալ զփախուստ այլոց՝ 'ի նոյն աճապարեցին և ինքեանք:

ԾԶ. Յետ պարտութեան Պեղոպոնեսացւոց և փախըստեան նոցա նախ 'ի Պիւթիոն գետ և ապա յԱբիւդոս, թէպէտ նաւս սակաւս կալան Աթենացիք վասն անձկութեան նեղցին Ելլեսպոնտեայ, որ սատարէր 'ի կարճոյ փախըստեան թշնամւոյն, սակայն 'ի դէպ ժամուն յաջողեաց նոցա կորզել զայս յաղթութիւն 'ի նոցանէ: Որ արդարև վասն ուրեք ուրեք պարտութեանցն և արկածից Սիկիլիոյ երկուցեալ յերեսաց պեղոպոնեսական նաւական զօրութեան, դադարէին այնուհետև յերկբայս զանձանց իւրեանց լինելոյ, և զթշնամին մեծ ինչ 'ի ծովու կարծելոյ: Եւ կալան 'ի նոցանէ նաւս ութ 'ի Քիացւոցն, հինգ 'ի Կորնթացւոց, երկու յԱմբրակեանց, երկու 'ի Բիովտացւոց, մի մի 'ի Լեւկադացւոց, 'ի Լակեդեմոնացւոց, 'ի Սիրակուսացւոց և 'ի Պելլենայ. և ինքեանք կորուսին նաւս հնգետասան, կանգնեցին նշան յաղթութեան 'ի սարն Շանաբլուր, ժողովեցին զբեկորս նաւաց, թողին և թշնամւոյն բառնալ զմեռեալս իւրեանց, արձակեցին աւետաբեր յաղթութեան յԱթէնս նաւ մի պատերազմիկ: Ի հասանել աւետաբեր նաւուն, ընդ անակնկալ լուր յաջողութեան 'ի վերայ վերջնոյ ձախողութեան Եւբիոյ և սաստին այլուց խռովութեան, ոգի առեալ Աթենացիք քաջալերեցան ոչ սակաւ. և յաւելան 'ի հաւատս լինելոյ նոցա դեռ ևս յոյս ակնկալութեան 'ի գործ և 'ի յաջողութիւն, միայն եթէ մտադիւր 'ի նոյն ձգնիցին:

ԾԷ. Յաւուրն չորրորդի յետ նաւամարտին նորոգեալ Աթենացիք զնաւս 'ի Սեստոս՝ խաղացին 'ի վտարանջեալն 'ի նոցանէ 'ի Կիւզիկոն. և տեսեալ մօտ յԱրբակիոն և 'ի Պրիապոս նաւս ութ բիւզանդացիս 'ի խարսխի՝ գնացեալ

'ի վերայ հարին զմարդիկն 'ի ցամաքի և կալան զնաւս: Եկեալ ապա 'ի Կիւզիկոն որ անպարիսպն էր, և վերստին նուաճեալ հանին 'ի նոցանէ հարկս:

Առ սովին անցեալ և Պելոպոնեսացւոց յԱբիւդեայ յԵղէուս, և 'ի նաւաց անտի իւրեանց անկելոց 'ի ձեռս թշնամեաց՝ թափեալ կրկին զողջն, զի զայլս հրկէզ արարեալ էր Եղէուսացւոց, առաքեցին զԻպպոկրատէս և զԵպիկլէս յԵւբիա՝ ածել անտի նաւս:

ԾՂ. Ի ժամանակին յայնմիկ անց Աղկիբիադէս երեքտասան նաւուք 'ի Կաւնեայ և 'ի Փասելեայ 'ի Սամոս, ծանուցանել եթէ դարձոյց նա զխումբ նաւաց Փիւնիկեցւոց չերթալ յարել 'ի Պելոպոնեսացիս, և յաւել ածել զբարեկամութիւն Տիսափեռնեայ ընդ Աթենացիս: Եւ հանդերձեալ կազմեալ նաւս ինն, թող զորս յառաջագոյն ունէր, եհան հարկս ծանունս յԱլիկառնացւոց և ամրացոյց պարսպաւ զԿով: Զայս արարեալ և վարիչս կարգեալ քաղաքին, դարձ արար յաշնան կոյս 'ի Սամոս:

Լուեալ և Տիսափեռնեայ եթէ նաւախումբ Պելոպոնեսացւոց 'ի Միտիլինեայ յԵղեսպոնտ էանց, ամբարձեալ և ինքն յԱսպենդեայ եկն 'ի Յոնիա: Մինչդեռ Պելոպոնեսացիք յԵղեսպոնտ էին, բնակիչք Անտանդրեայ որ էն Եւոլացիք, հարստահարեալք յերեսաց Արշակայ պարսկի տեղակալի Տիսափեռնեայ, ետուն ածել ընդ ցամաք ընդ լեառն Իդա զունդ մի ասպարազէն յԱբիւդեայ և մուծին 'ի քաղաքն: Քանզի Արշակէս այս հրաւիրեալ զաւագորեայն Դելոսացւոց զբնակեալս յԱտրամիտիոն, զվտարեալս յԱթենացւոց 'ի Դելոսէ անդր՝ 'ի պատճառս մաքրութեան կղզւոյն ետ հանել 'ի քաղաքէն, իբրու յարշաւանս ընդդէմ թշնամւոյն անծանօթի արդարև առ երեսս կեղծաւորեալ բարեկամութեամբ և դաշնաւորութեան պատճառաւ. և պաշարեալ զնոսա 'ի ժամ ճաշուն զօրօք իւրովք, խժաբար նետաձիգ կորոյս զամենեսին: Վասն որոյ և Անտանդրացւոց երկուցեալ 'ի խժական գործոյն, թէ գուցէ

այպալխի մինչ և մինչեանց անցուսցէ, և յանտանելի հարկաց ծանրութենէ ձնչեալ՝ մերժեցին զպահնակ զօրս նորա 'ի միջնաբերդէն ։

ԺԹ. Գիտաց Տիսափեռն եթէ ձեռն Պելոպոնեացւոց էր 'ի գործ այդ. զի ոչ միայն որ 'ի Միլետոն և 'ի Կնիդոս նոյնն էր արարուած՝ հալածելով 'ի քաղաքացն այնոցիկ զպահանորդ զօրն, այլ և առելի ևս էր յոյժ և դժպհի առ նոսա, խիթայր եթէ գուցէ այլովք ևս տուժեսցէ։ Դժկամակէր դարձեալ զի Թեթևագոյն ծախուք առ նոսա Փառնաւազ 'ի սակաւուն աւելի ինչ յաջողեաց ընդդէմ Աթենացւոց, վասն որոյ խորհէր երթալ առ Պելոպոնեացիս յՀելլեսպոնտ, բողոք ունել վասն անցիցն Անտանդրեայ, և քերել զանձնէն զամբաստանութիւնս, և պատասխանի առնել ըստ կարի վասն նաւախմբին Փիւնիկեցւոց և վասն այլոց ամենեցուն։ Եւ հասեալ նորա նախ յԵփեսոս, զոհս մատոյց Արտեմեայ։

Յետ ամարայնոյս 'ի լրման առաջնկայ ձմերանս լրասցի և քսան և մի ամ պատերազմիս։

ՎԱԽՃԱՆ